# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 ՍԵՊՏԵՄԲԵՐ · 1967
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 46-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угнов»-теоретический и политический журнал ЦК КП Армении




## Բովանդակություն

# Содержание





# ՔԱՂՈՒՍՈՒՑՄԱՆ ՆՈՐ ՏԱՐԻՆ

Հոկտեմբերի 2-ից սկսվում է կուսակցական ուսուցման սիստեմի նոր ուսումնական տարին: Ամառվա ամիսների ընդմիջումից հետո նորից իրենց պարապմունքները կսկսեն տարրական քաղդպրոցներն ու մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցները, սեմինարներն ու կուսակցական-տնտեսական ակտիվի շրջանային դպրոցները: Հանրապետությունում շուրջ 140 հազար մարդ կշարունակի մարքս-լենինյան տեսության ուսուցումը ՍՄԿԿ Կենտկոմի կողմից հաստատված միասնական ծրագրով:

Այս ուսումնական տարին երրորդն է կուլուսցանցի վերակառուցումից հետո: Անցած երկու տարվա փորձը ցույց տվեց, որ կուսակցական ուսուցման նոր սիստեմը ամբողջությամբ համապատասխանում է առաջադրվող պահանջներին: Այն հնարավորություն է ընձեռում քաղաքական ուսուցման գործում հաջողությամբ իրականացնել հետևողականությունն ու պրոպագանդվող գիտելիքների սիստեմատիկ հաջորդականությունը, ապահովել կոմունիստների և անկուսակցական ակտիվիստների քաղաքական կրթության դինամիկ աճը, բարելավել, ավելի արդյունավետ դարձնել այդ կարևոր գործի կուսակցական ղեկավարությունը:

Հենց սկզբից նշենք, որ կուսակցական ուսուցման նոր սիստեմի հաջողության ամենակարևոր նախապայմանը կոմունիստների քաղաքական կրթության նկատմամբ կուսակցական կազմակերպությունների և կոմիտեների պատասխանատվության բարձրացումն է, այդ ուղղությամբ տարվող աշխատանքի բարելավումն ու կատարելագործումը:

Այնտեղ, որտեղ կուսակցական կազմակերպությունները կոմունիստների քաղաքական ուսուցման կազմակերպման գործում հանդես են բերում անհրաժեշտ հետևողականություն և պահանջկոտություն, որպես կանոն, լրիվ դրսևորվում են կուսակցական ուսուցման նոր սիստեմի առավելությունները, ապահովվում է քաղաքական կրթության արդյունավետությունը:

Եվ ընդհակառակը, եթե ներկուսակցական աշխատանքի այս կարևոր բնագավառի նկատմամբ բացակայում է սկզբնական կազմակերպությունների և կոմիտեների սրտացավ վերաբերմունքը, ամենօրյա ուշադրությունը և հոգատարությունը, կուսակցական ուսուցման օղակները, որքան էլ կատարելագործված լինի սիստեմը, կորցնում են կոմունիստների քաղաքական կրթության կենտրոնի իրենց նշանակությունը, մատնվում են անգործության կամ սոսկ ձևական բնույթ են ստանում:

Նոր ուսումնական տարում կուսակցական լուսավորության ցանցի աշխա-

տանքի հաջող կազմակերպման համար անհրաժեշտ է կրկին անգամ անդրադառնալ երկու տարիների փորձին, քննադատորեն վերլուծել կատարված աշխատանքը, սթափ գնահատել դրականը, պարզել թերությունների պատճառները և ձեռնարկել բոլոր միջոցները՝ լավագույն տրադիցիաների ամրապնդման և թերությունների վերացման ուղղությամբ:

Որո՞նք են անցած ուսումնական տարիների հիմնական առանձնահատկությունները, ի՞նչ արդյունքների են հասել կուսակցական կազմակերպությունները նոր սիստեմի արմատավորման գործում, որպիսի՞ք են դեռևս չհաղթահարված դժվարությունները. այս հարցերը նոր ուսումնական տարվա նախօրեին պետք է հուզեն կուսակցական-պրոպագանդիստական աշխատողներին, բոլոր սկզբնական կազմակերպություններին, քաղկոմներին ու շրջկոմներին:

Վերլուծորեն ամփոփելով անցյալ երկու ուսումնական տարվա արդյունքները, մենք կարող ենք գոհունակությամբ նշել, որ կուսակցական ուսուցման նոր սիստեմին անցնելուց հետո կգալիորեն բարելավվել է կոմունիստների քաղաքական ուսուցման գործը, որոշակիորեն ուժեղացել է նրանց հետաքրքրությունը հասարակական գիտությունների նկատմամբ:

Անցյալ ուսումնական տարում մեր հանրապետությունում կուսակցական ուսուցման սիստեմում ընդգրկված էր շուրջ 137 հազար աշխատող, որոնցից 95.200-ը կոմունիստներ: Գործում էին 2099 քաղդպրոց, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների 1217 և կուսակցական-տնտեսական ակտիվի 22 դպրոց, բազմաթիվ սեմինարներ: Հազարավոր կոմունիստներ մարքս-լենինյան տեսությունն ուսումնասիրում էին անհատական պլաններով:

Քաղուսուցման ցանցի դպրոցների ու սեմինարների բացարձակ մեծամասնությունը հաջողությամբ փակեց ուսումնական տարին: Ամփոփիչ պարապմունքներն ակնբախորեն ցույց տվեցին, որ կուսակցական ուսուցման սիստեմում ներգրավված ընկերները տարվա ընթացքում կգալիորեն հարստացրել են իրենց քաղաքական գիտելիքները, յուրացրել են պրոպագանդվող առարկաները:

Էջմիածնի շրջանի Արշալույս գյուղի կոլտնտեսության կուսկազմակերպությունում գործող մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի ունկնդիրները հանձնարարվող թեմաները ուսումնասիրելիս հաճախակի դիմում էին մարքսիզմի կլասիկների աշխատություններին, կարդում օժանդակ գրականություն, օգտագործում էին պարբերական մամուլում եղած նյութերը: Պրոպագանդիստ Խաչիկ Հովհաննիսյանը մեթոդական և մանկավարժական հետաքրքիր հնարանքներով կարողանում էր ուսումնասիրվող պրոբլեմների շուրջ ստեղծել մտքերի աշխույժ փոխանակություն, որի ընթացքում քննարկվող տեսական հարցերը հիմնավորվում էին կյանքից վերցրած օրինակներով: Այս տեսակետից բնորոշ է դպրոցի ամփոփիչ պարապմունքը, որը տեղի ունեցավ մայիսի 11-ին: Այդ պարապմունքին մասնակցում էին բոլոր ունկնդիրները:

Ամփոփիչ պարապմունքի թեման էր՝ *ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը, սոցիալիզմի հաղթանակը, սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու պրոբլեմները:*

Բոլոր ունկնդիրները բարձր ակտիվությամբ մասնակցեցին առաջադրված հարցերի քննարկմանը: Բորիս Հակոբյանը, Ժորա Իսրայելյանը, Վարդ Ավագյանը և մյուսներ, որոնք տարվա ընթացքում բարեխղճորեն ուսումնասիրել էին հանձնարարված գրականությունը, մեջբերումներ էին կատարում Վ. Ի. Լենինի «Պետություն և հեղափոխություն», «Պետության մասին» աշխատություններից,



հետաքրքիր օրինակներ բերում միջազգային կոմունիստական և բանվորական շարժման պրակտիկայից:

Սոցիալիստական հասարակարգի ձեռք բերած պատմական նվաճումների մասին խոսելիս ունկնդիրները հաճախակի էին դիմում տեղական փաստերի և օրինակների:

Բոլորովին պատահական չէ, որ աշխույժ բանավեճի ընթացքում հաճախակի էր հիշատակվում հենց Արշալույս գյուղը: Նախկին Քյոռփալուն հայտնի էր իր կավաշեն, ցածրիկ տնակներով, աղքատությամբ, հոգսերի տակ կքված, համաճարակներից տանջվող, անգրագետ բնակիչներով, որոնք մի կտոր հացի համար գիշեր ու ցերեկ կռիվ էին տալիս հողի հետ:

Այժմ Արշալույսը արևին ու աշխարհին է նայում երկհարկանի բազմագույն տուֆակերտ շենքերով, կուլտուրայի հիանալի պալատով, ժամանակակից բազմաճյուղ տնտեսությամբ, նոր մարդկանցով, որոնցից շատերը բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեն: Արշալույսի կոլտնտեսությունը 1966 թվականին արտադրել է 47575 ցենտներ բանջարեղեն, 11523 ցենտներ խաղող, 3591 ցենտներ կաթ, 976 ցենտներ միս և շատ այլ մթերքներ:

Հայրենի գյուղի, հարազատ կոլտնտեսության նվաճումների վառ ցուցադրումը որոշակի կոնկրետություն էր տալիս տեսական հարցերի քննարկմանը, ավելի առարկայական և հիմնավոր դարձնում մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի վերաբերյալ տեսական դրույթները:

Անցյալ ուսումնական տարվա կարևոր առանձնահատկություններից մեկն էլ այն էր, որ կուսակցական կազմակերպությունների մեծ մասում լուրջ միջոցներ ձեռնարկվեցին ուսուցման բոլոր օղակների կազմակերպական ամրապնդման, կարգապահության ուժեղացման ու պատասխանատվության բարձրացման ուղղությամբ, որն անշուշտ դրական ազդեցություն ունեցավ կուսակցական լուսավորության ցանցի ընդհանուր գործունեության արդյունավետության վրա:

Կուսակցական կազմակերպությունները հատուկ ուշադրություն էին նվիրում քաղդպրոցներում, քաղխմբակներում, շրջանային դպրոցներում, սեմինարներում անհրաժեշտ կարգ ու կանոն ստեղծելու, կարգապահությունը ամրապնդելու, անհարգելի բացակայությունները և ուշացումները վերացնելու հարցերին: Նրանք խորապես գիտակցում էին, որ միայն ամուր կազմակերպական հիմքերի առկայության դեպքում է հնարավոր ավելի նպատակասլաց ու հետաքրքիր դարձնել ուսումնական պրոցեսը, ապահովել պարապմունքների գաղափարական բարձր մակարդակը:

Կուսակցական ուսուցման ցանցի տարբեր օղակների կազմակերպական ամրապնդումը, հասկանալի է, ինքնանպատակ չէ: Այդ ուղղությամբ կատարվող աշխատանքը պետք է դիտել որպես ուսուցման սիստեմի հիմնական խնդրի, կոմունիստների քաղաքական գիտելիքների հետևողական հարստացման անընդմեջ պրոցեսի արդյունավետ կազմակերպման կարևոր նախապայմաններից մեկը: Կարելի է բերել օրինակներ բազմաթիվ քաղդպրոցներից, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներից, որոնցում համարյա լրիվ վերացվել են անհարգելի բացակայությունները: Որպես կանոն քաղդպրոցներում ու դպրոցներում բարձրացել է նաև դասավանդվող առարկաների յուրացման աստիճանը:

Ալավերդու շրջանի Ճոճկանի սովխոզի կուսակցական կազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցում (պրոպագանդիստ Սմբատ Մելիքսեթյան) անցած ուսումնական տարում չի եղել պարապմունքներից ունկնդիր-

ների անհարգելի բացակայության ոչ մի դեպք: Սկզբնական կուսակցական կազմակերպության և պրոպագանդիստի համատեղ ջանքերի շնորհիվ հնարավոր է դարձել հաղթահարել կազմակերպական բնույթի բոլոր դժվարությունները և ամբողջ ուշադրությունը կենտրոնացնել ուսումնական պրոցեսի կազմակերպման վրա: Արդյունքները իրենց երկար սպասեցնել չեն տվել: Դպրոցում պարապմունքներն անցնում են հետաքրքիր, բոլոր ունկնդիրների ակտիվության պայմաններում: Կոմունիստները անհրաժեշտ գիտելիքներ են ստանում ուսումնական ծրագրով նախատեսված թեմաների վերաբերյալ: ՀԿԿ Ալավերդու շրջկոմի բյուրոն ուսումնասիրել և քննարկել է Ճոճկանի սովխոզի կուսկազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի փորձը և բարձր գնահատել պրոպագանդիստների աշխատանքը:

Սակայն ամենուրեք չէ, որ այդպես հետևողականորեն են զբաղվում կոմունիստների քաղուսուցման բարելավմամբ: Առանձին կուսակցական կազմակերպություններում ուսումնական ցանցի կազմակերպական ամրապնդումը երբեմն դիտվում է որպես ինքնանպատակ գործ. դրան չեն հետևում պարապմունքները հետաքրքիր և արդյունավետ դարձնելու, նրանց գաղափարական մակարդակը բարձրացնելու ձեռնարկումները: Հետևանքը լինում է այն, որ ունկնդիրները ձևականորեն մասնակցում են պարապմունքներին, բայց համարյա ոչինչ չեն ստանում դրանցից:

Այս տարվա գարնանը ուշադրության արժանի ուսումնասիրություններ կատարվեցին Արտաշատում, Կիրովականում, Լենինականում, Երևանի Լենինյան շրջանում, որոնց նպատակն էր պարզել, թե կուսակցական ուսուցման սիստեմում ներգրավվածները ինչ են մտածում ուսուցման ձևերի և դրանցում իրենց մասնակցության մասին:

Պարզվեց, որ ուսուցման առանձին օղակներում ներգրավված մի շարք ընկերներ գոհ չեն պարապմունքներից, դրանց հաճախում են սոսկ կուսակցական կարգապահության նկատառումներով: Ավելի ուշադիր ուսումնասիրությունը ցույց տվեց, որ ուսուցման այն օղակները, որոնցում ներգրավված են այդ ընկերները, իսկապես խարսխված են միայն պարտադրվող կարգապահության սկզբունքի վրա, որ դրանցում ուսումնական պրոցեսը պարզապես անհետաքրքիր է կազմակերպված ինչպես մեթոդական, այնպես էլ տեսական առումով:

Կոմունիստների քաղաքական ուսուցման նկատմամբ առանձին կուսակցական կազմակերպություններում նկատվող ձևական մոտեցումը, որն իր արտահայտությունն է գտնում «միայն թե պարապմունքները տեղի ունենան» դատապարտելի սկզբունքով, ոչ միայն հարցի լուծումը չէ, այլև լրջորեն խանգարում է կուսակցական ուսուցման խնդիրների իրականացմանը:

Կուսակցական ուսուցման հիմքում ընկած է կամավորության սկզբունքը: Միայն այն դեպքում ուսուցումը արդյունավետ կլինի, եթե պրոպագանդվող առարկան հետաքրքիր է մատուցվում, եթե պրոպագանդիստը լրջորեն նախապատրաստվելով պարապմունքին, կարողանում է մարքսիզմ-լենինիզմի տեսական գինանոցի դռները լայնորեն բացել ունկնդիրների առջև, համարձակորեն միրճվել նրանց հետաքրքրության շրջանակները, ոգևորել նրանց մեր կուսակցության ամենահաղթ գաղափարներով: Այդ է ցույց տալիս հանրապետության կուսկազմակերպությունների մեծամասնության փորձը, դրա մասին են վկայում այս տարվա գարնանը տեղի ունեցած ամփոփիչ պարապմունքները:

Մենք լայն հնարավորություններ ունենք կուսակցական լուսավորության ցանցի բոլոր օղակներում ուսուցման բարձր մակարդակ ապահովելու համար:



Հայտնի է, որ ուսուցման հաջողության հիմնական գրավականը պրոպագանդիստի հմտությունն է, նրա տեսական պատրաստության աստիճանը և սերը հանձնարարված գործի նկատմամբ: Հանրապետության կուսակցական կազմակերպություններում աճել են հազարավոր հիանալի պրոպագանդիստներ, որոնք բոլշևիկյան կրքոտությամբ պրոպագանդում են մարքս-լենինյան տեսությունը, կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության քաղաքականությունը: Անցյալ ուսումնական տարում հանրապետության կուսակցական ուսուցման սիստեմում ներգրավված էր 6700 պրոպագանդիստ: Դրանց 98 տոկոսը ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն, պրոպագանդիստական աշխատանքի անհրաժեշտ փորձ ու կարողություններ: Կուսակցական կազմակերպությունների մեծ մասում պրոպագանդիստական աշխատանքի են ներգրավված կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողներ, ժողովրդական տնտեսության մասնագետներ:

Կիրովական քաղաքի կուսակցական կազմակերպությունում պրոպագանդիստական աշխատանքի ներգրավված 212 ընկերից բարձրագույն կրթություն ունի 194-ը, թերի բարձրագույն՝ 9-ը, միջնակարգ՝ 6-ը: Քաղաքի սկզբնական կուսակցական կազմակերպությունների 14 քարտուղարներ, ձեռնարկությունների ու հիմնարկությունների 49 դիրեկտորներ աշխատում էին որպես քաղդպրոցների, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների պրոպագանդիստներ, թեորեական սեմինարների ղեկավարներ, կոնսուլտանտներ: Քաղաքի խոշորագույն ձեռնարկությունների՝ քիմկոմբինատի դիրեկտոր ընկ. Ս. Օհանյանը, քիմմանրաթելի գործարանի դիրեկտոր ընկ. Մ. Բեկնազարյանը, ճշգրիտ հաստոցաշինության գործարանի դիրեկտոր ընկ. Գ. Գաբրիելյանը, քաղկոմի համարյա բոլոր աշխատողները հաճախակի հանդես էին գալիս պրոպագանդիստների, կուսակցական ուսուցման ցանցում ներգրավվածների առջև հետաքրքիր զեկուցումներով ու դասախոսություններով՝ արտադրության էկոնոմիկայի, աշխատանքի արտադրողականության բարձրացման, տնտեսական ռեֆորմի իրականացման, կուսակցության ու կառավարության քաղաքականության, մարքս-լենինյան տեսության հանգուցային հարցերի վերաբերյալ:

Քաղաքի լավագույն տեսական սեմինարներից է քիմկոմբինատի գլխավոր ինժեներ ընկ. Մ. Թումանյանի ղեկավարած սեմինարը, որում ընդգրկված են կոմբինատի գլխավոր մասնագետները և բաժինների վարիչները: Մ. Թումանյանի համար պրոպագանդիստական աշխատանքը կենսական պահանջ է դարձել: Նա ոչ միայն հիանալի տիրապետում է առարկային, այլև անընդհատ կատարելագործում է մանկավարժական ներգործության իր հմտությունը: Նա սեմինարը ունկնդիրներին տալով փիլիսոփայական անհրաժեշտ գիտելիքներ, նրանց օգնում է հասարակական կյանքի պրոցեսները ստեղծագործորեն ընկալելու, դրանք մարքսիստորեն ըմբռնելու հարցերում:

Ըստ արժանվույն գնահատելով պրոպագանդիստի գործունեությունը, կուսակցության քաղկոմ-շրջկոմները անցյալ ուսումնական տարում զգալիորեն բարելավեցին նրանց հետ տարվող աշխատանքը: Բոլոր քաղաքներում ու շրջաններում նախօրոք հաստատված պլանի համաձայն պարբերաբար պրոպագանդիստների համար անց էին կացվում սեմինարներ, մեթոդական ու հրահանգչական խորհրդակցություններ:

Մեծ թվով պրոպագանդիստներ մասնակցեցին հանրապետական սեմինարներին: Բավական է նշել, որ մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցնե-

րի շուրջ 400 պրոպագանդիստներ այս ամռանը մասնակցեցին Սևանում կազմակերպված հանրապետական սեմինարներին:

Ճիշտ են վարվում կուսակցության առանձին շրջկոմներ ու քաղկոմներ՝ պրոպագանդիստների համար կազմակերպելով հետաքրքիր հանդիպումներ, էքսկուրսիաներ և այլն: ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմը անցյալ ուսումնական տարում կազմակերպեց մի խումբ պրոպագանդիստների այցելությունը ջրհան կայանները, Զեյթունի, Լալվարի և Հաղթանակի սովխոզները, որտեղ նրանք ծանոթացան շրջանի էկոնոմիկայի համար կենսական նշանակություն ունեցող պրոբլեմներին:

Սևանի շրջանի 30 պրոպագանդիստներ մեկնեցին Թբիլիսի. եղան եղբայրական հանրապետության կառույցներում, ուսումնասիրեցին մեր բարեկամների պրոպագանդիստական աշխատանքի փորձը:

Իսկապես լուրջ աշխատանք է կատարված պրոպագանդիստների հետ: Սակայն այն դեռևս բավարար համարել չի կարելի: Միշտ չէ, որ կուսակցական կազմակերպությունները հաշվի են առնում պրոպագանդիստական աշխատանքի դժվարությունները, անհրաժեշտ օգնություն են ցույց տալիս նրանց:

Կուսակցական ուսուցման հաջողության կարևոր նախապայմաններից է նաև ունկնդիրների կազմի ճիշտ կոմպլեկտավորումը: Փորձը ցույց է տվել, որ այնտեղ, որտեղ ունկնդիրների կազմը կրթական և ընդհանուր պատրաստության առումով միատարր է, այնտեղ պարապմունքները անցնում են հետաքրքիր, բարձր է ուսուցման արդյունավետությունը: Այս հարցը առանձին կարևորություն է ստանում, մասնավորապես, այս տարի, որովհետև տարրական քաղդպրոցներում ներգրավված շատ կոմունիստներ ու ակտիվիստներ, ավարտելով երկամյա ուսուցումը քաղաքական լուսավորության տարրական օղակում, պետք է ներգրավվեն ուսուցման նոր ձևերում:

Ահա այն հիմնական հարցերը, որոնք վերաբերվում են կուսակցական ուսուցման ցանցի անցյալ տարիների աշխատանքին ու փորձին և պետք է նոր ուսումնական տարվա շեմին մտահոգեն սկզբնական կազմակերպությունների քարտուղարներին, պրոպագանդիստներին, քաղկոմ-շրջկոմներին:

Յուրաքանչյուր կազմակերպությունում, շրջանում կամ քաղաքում, նկատի ունենալով տեղական առանձնահատկությունները, պետք է ձեռնարկվեն անհրաժեշտ միջոցներ կուսակցական նոր ուսումնական տարին բարձր կազմակերպվածությամբ սկսելու, ուսուցման պրոցեսը արդյունավետ կազմակերպելու, պարապմունքների մակարդակը բարձրացնելու, պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը բարելավելու ուղղությամբ:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի բյուրոն քննության առնելով կուսակցական ուսուցման ցանցի անցած ուսումնական տարվա արդյունքները, պահանջեց քաղկոմ-շրջկոմներից ու սկզբնական կազմակերպություններից ավելի մոտիկից ղեկավարել կոմունիստների և անկուսակցական ակտիվիստների քաղաքական ինքնակրթության գործը, վերացնել այդ կարևոր բնագավառում տեղ գտած թերությունները, ձեռնարկել բոլոր միջոցները տարվող աշխատանքը պատշաճ բարձրության վրա դնելու համար:

Կուսակցական կազմակերպությունների անմիջական և կարևոր խնդիրներից է կոմերիտական ուսուցման սիստեմի աշխատանքի բարելավումը, երիտասարդության քաղաքական կրթության հաջող կազմակերպումը: Անցյալ տարիների փորձը ցույց տվեց, որ շատ կուսակցական կազմակերպություններ երիտասարդության քաղաքական ուսուցումը ամբողջությամբ թողնելով կոմերիտա-



կան կազմակերպությունների տնօրինությանը, փաստորեն դադարել են այդ կարևոր գործը ղեկավարելուց:

Անհրաժեշտ է վերանայել վերաբերմունքը երիտասարդության քաղաքական ուսուցման նկատմամբ, արմատապես բարելավել կոմերիտական ուսուցման կուսակցական ղեկավարությունը:

Կուսակցական ուսուցման նոր ուսումնական տարին սկսվում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության պանծալի հիսնամյակի հոբելյանական օրերին:

Սովետական ժողովուրդը, ամբողջ աշխարհի աշխատավորները մեծ Հոկտեմբերի հիսնամյակը նշում են որպես մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարների հաղթանակի փառատոն:

Մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարներով պինված մեր երկրի աշխատավորները 50 տարի առաջ սկիզբ դրին նոր, ամենաարդարացի հասարակարգին, որտեղ մարդը ազատ է սոցիալական և ազգային կեղեքումից, որտեղ իշխում են հավասարության, եղբայրության և ազատության սոցիալիստական օրենքները:

Մարքսիզմ-լենինիզմի դրոշով պատմական հաղթանակներ ձեռք բերեցին Եվրոպայի, Ասիայի սոցիալիստական երկրները, Կուբան՝ Լատինական Ամերիկայում:

Այդ դրոշի ներքո են պայքարում կապիտալիստական աշխարհի աշխատավորները:

Մարքս-լենինյան տեսության խոր ու բազմակողմանի ուսումնասիրությունը կոմունիստներին, անկուսակցական ակտիվիստներին հնարավորություն է տալիս ճիշտ կողմնորոշվել քաղաքական իրադրության մեջ, խուսափել սխալներից, համարձակորեն քայլել կոմունիզմ կառուցող առաջամարտիկների շարքերում:

Կուսակցությունը միշտ էլ կարևոր նշանակություն է տվել կոմունիստների քաղաքական ուսուցման հարցերին: ՍՄԿԿ Կենտկոմի «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50 տարին» թեզիսներում ասվում է. «Կուսակցությունը առաջնակարգ նշանակություն է տալիս կոմունիստների, հատկապես ղեկավար կադրերի մարքս-լենինյան կրթությանը, աշխատավորության շրջանում տարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքին: Նա անընդհատ կատարելագործում է կուսակցական ուսուցման սիստեմը...»:

Հայաստանի կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ լավագույն ձևով նախապատրաստվել և բարձր կազմակերպվածությամբ սկսել կուսակցական ուսուցման նոր ուսումնական տարին, ձեռնարկել բոլոր անհրաժեշտ միջոցները կոմունիստների և անկուսակցական ակտիվիստների քաղաքական ուսուցման գործը առաջադրվող պահանջների մակարդակին բարձրացնելու համար:



# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԵՎ ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒՄԸ

Երկրում աճել են մարդկանց այնպիսի սերունդներ, որոնք դաստիարակված են կոմունիստական իդեալներին անսահման նվիրվածության ոգով, համոզված են, որ մեր մեծ գործն արդար է:

*«Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50 տարին»: ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներից*

Ա. ՔՈՉԻՆՅԱՆ

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար

## ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՀԱՄՈԶՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂԻ ԲՆՈՐՈՇ ՀԱՏԿԱՆԻՇՆ Է

Կոմունիզմի կառուցումն աներևակայելի է առանց ամենալայն մասսաների նոր կյանքի շինարարության մեջ ներգրավելու: Գիտակցականությունը, գաղափարականությունը, ապագայի նկատմամբ ունեցած անսասան հավատը, սոցիալական օպտիմիզմը, որով համակված են սովետական մարդիկ, կոմունիստական շինարարության մեծ ու բարդ խնդիրների հաջող լուծման գլխավոր գործոններից են:

Նոր, կոմունիստական հասարակարգի հաղթանակի համար մղած պայքարի բոլոր էտապներում էլ կոմունիստները եղել են գաղափարական կրքոտ համոզվածության, մեր գործի արդարացիության հավատի իսկական օրինակ: Նրանք օրինակ են ծառայել աշխատավորության հոծ զանգվածների համար, դաստիարակել են նրանց: Կոմունիստական կուսակցությունն իրավունք ունի հպարտանալու իր գործունեության արդյունքներով և առաջին հերթին՝ նոր մարդու դաստիարակությամբ:

Գաղափարական համոզվածությունը, գիտակցականությունը մարդու մեջ մշակվում ու հաստատվում են նրա ամբողջ կյանքի ընթացքում: Եվ յուրաքանչյուր նոր սերունդ իր գաղափարական համոզմունքները չի կարող պատրաստի ձևով ստանալ նախորդներից: Նա կարծես թե նորից է անցնում իր աշխարհայացքի ձևավորման, իրականության իմաստավորման պրոցեսը, հենվելով ընդսմին նախորդ սերունդների գաղափարական ժառանգության վրա և հարստացնելով այն: Ահա թե ինչու երբեք չի կարելի թուլացնել ուշադրությունը գաղափարական համոզվածության ձևավորման վրա որպես կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց հասարակական գիտակցականության հիմքի:

### 1

Մարդկանց հայացքները, համոզմունքները ձևավորվում են, ամենից առաջ, շրջապատող իրականության, մեր կյանքի ամբողջ իրավիճակի հիման վրա, կրթության սիստեմի, գաղափարական ու քաղաքական դաստիարակության ներգործությամբ:



Պատահական չէ, որ մենք այստեղ խոսում ենք այն մասին, որ ապրում ենք սոցիալիստական հասուն հասարակարգի ժամանակաշրջանում, երբ ավելի լրիվ ու համակողմանի կերպով են բացահայտվում սոցիալիզմի բոլոր ներքին հնարավորությունները: Զարգացման նախորդ շրջանում ստեղծված տնտեսական հիմքի վրա տեղի են ունենում սոցիալական առաջադիմական փոփոխություններ, բարելավվում են ժողովրդի նյութական ու կուլտուրական կենսապայմանները, նկատելիորեն ծավալվում է նրա հասարակական ակտիվությունը: Այդ բանն ակնառու ցույց է տալիս Հայկական ՍՍՀ օրինակը:

Այսօրվա Հայաստանը զարգացած էկոնոմիկայի ու կուլտուրայի հանրապետություն է: Գունավոր մետալուրգիայի, քիմիայի, սննդի, թեթև արդյունաբերության անընդմեջ զարգացման հետ մեկտեղ այստեղ ստեղծված են այնպիսի նորագույն ճյուղեր, ինչպիսիք են՝ ճշգրիտ մեքենաշինությունն ու սարքաշինությունը, ռադիոէլեկտրոնիկան, ավտոմատացման միջոցների արտադրությունը: Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքն այժմ ավելի քան 120 անգամ գերազանցում է 1913 թվականի մակարդակը:

Հանրապետությունում ստեղծվել են արդյունաբերական նոր կենտրոններ՝ Քաջարանը, Հրազդանը, Ագարակը, Արովյանը, Լուսավանը և այլն: Դա օգնում է լուծելու հանրապետության բոլոր շրջանների էկոնոմիկայի համաչափ զարգացման և տեղական հումքի ու աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման խնդիրը:

Սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն վերափոխվեց նաև Հայաստանի գյուղը: Մեզ մոտ արագ տեմպերով են զարգանում գյուղատնտեսության հիմնական ճյուղերը՝ խաղողագործությունը, պտղաբուծությունն ու անասնաբուծությունը. մրգի ու խաղողի այգիների տարածությունները ավելացան 11 անգամ, իսկ ոռոգվող հողերինը՝ գրեթե 4 անգամ: Տեխնիկայի լայն կիրառումը, քիմիացումն ապահովեցին գյուղացիության աշխատանքի արտադրողականության աննախընթաց աճը և գյուղատնտեսական արտադրության նշանակալի բարձրացումը:

Գյուղերից անհետացել են կավաշեն հյուղակները: Դրանց փոխարեն կառուցվում են բարեկարգ բնակելի քարաշեն տներ: Կառուցվում են նոր դպրոցներ, հիվանդանոցներ, խանութներ, կենցաղային սպասարկման կոմբինատներ: Էլեկտրիֆիկացված են հանրապետության բոլոր բնակավայրերը: Էլեկտրականությունն ու գազը, ռադիոն ու հեռուստատեսությունն ամուր կերպով մտել են գյուղացու կենցաղի մեջ: Վառելիք չունեցող մեր շատ շրջաններում գեղջկուհիները բավական աշխատանք ու ժամանակ էին ծախսում աթար պատրաստելու վրա: Ընթացիկ հնգամյակում հանրապետության գյուղերը լրիվ գազիֆիկացման կենթարկվեն: Գյուղում տեղի ունեցած սոցիալական խոր վերափոխությունները արմատապես փոխեցին հայ գյուղացու հոգևոր կերպարը: Բարձրացավ նրա կուլտուրական մակարդակը, աճեցին հոգեկան պահանջները:

Հայաստանում հիրավի կուլտուրական հեղափոխություն է իրականացված: Հանրապետությունն ունի 1600-ից ավելի դպրոց, 53 տեխնիկում և ուսումնարան, 12 բուհ, հազարավոր գրադարաններ, հարյուրավոր ակումբներ, կուլտուրայի տներ, կինոթատրոններ: Հանրապետության յուրաքանչյուր չորրորդ բնակիչը սովորում է: Այսօրվա Հայաստանը ստեղծագործ աշխատանքի ու համարձակ խոյանքների երկիր է, հիանալի գիտնականների, գրողների, նկարիչների և երաժիշտների երկիր:

Սրանք լոկ մի քանի ընդհանրացված արդյունքներ են, բնութագրեր, թվեր: Սակայն է՛լ ավելի հրապուրիչ են մերձակա տարիների զարգացման հեռանկարները, երբ հանրապետությունը սովետական բոլոր ժողովուրդների համերաշխ ընտանիքում կհասնի նոր բարձունքների:

Ահա ինչպիսին է մեր իրականությունը, ահա այն գլխավորը, որ ձևավորում է սովետական մարդկանց հայացքները և կոմունիստական բարձր գիտակցականությունը, ամրապնդում է կոմունիզմի գաղափարների անպարտելիության, դրանց կենսահաստատ ուժի հավատը:

Սակայն չի կարելի անտեսել մեր կյանքում եղած առանձին թերությունները, դժվարությունները, որոնք նույնպես կարող են ազդել գաղափարական համոզմունքների ձևավորման վրա: Բացասական երևույթները, ցավոք սրտի, հաճախ ուժեղ ներգործություն են ունենում երիտասարդության անփորձ, քաղաքական տեսակետից ոչ բավականաչափ հասուն մասի վրա, իսկ մեր հասարակության կյանքի դրական գործոնները ընկալվում են որպես ինքնին տրամաբանական բաներ: Մինչդեռ այս կամ այն բացասական փաստի ոչ ճիշտ մեկնաբանումը կհանգեցնի մարդկանց հայացքների, աշխարհազգացության խեղաթյուրման: Այս առնչությամբ անդրադառնանք այն հարցերին, որոնց վրա, ի դեպ, սևեռված է նաև մեր գաղափարական հակառակորդների ուշադրությունը:

Աշխատավորները և, առաջին հերթին, կոմունիստները մեծապես շահագրգռված են այն բանում, որ ճիշտ կենսագործվի կուսակցության քաղաքականությունը, շահագրգռված են, որ քննարկման դրվի իրենց կոլեկտիվների գործունեությունը, որ ժամանակին վերացվեն թերությունները: Նշանակալի է այն հանգամանքը, որ աշխատավորները հիմա անհամեմատ ավելի են իրազեկ, տեղյակ ամեն ինչի: Այդ է վկայում, մասնավորապես, պարբերական տպագիր հրատարակությունների բաժանորդագրության աճը: Եթե 1965 թվականին թերթերի ու ժուռնալների բաժանորդագրությունն աճեց 12,4 տոկոսով, ապա 1966 և 1967 թվականներին տարեկան աճեց ավելի քան 20 տոկոսով: Հետևապես, մշտապես ընդլայնվում է ներկայումս լայն քննարկման առարկա ծառայող պրոբլեմների ու գաղափարների շրջանակը:

Արդի պայմաններում պահանջվում է ստեղծագործաբար մոտենալ անգամ հայտնի ճշմարտությունների պարզաբանմանը, նոր երևույթների, երկրի ներքին ու արտաքին քաղաքականության բացատրմանը:

Կուսակցության քաղաքականության, այս կամ այն կարևոր հարցի բացեիբաց, համարձակ քննարկումը, թերությունների կամ սխալների սուր քննադատությունը մեր գաղափարական հակառակորդները գնահատում են որպես մեր իրավակարգի թուլության ընդունում: Նրանք չարաչար սխալվում են: Ընդհակառակն, դա վկայում է սովետական հասարակարգի ուժն ու ամրությունը, հավատ մեր ուղու ճշտության նկատմամբ: Քննադատությունն ու ինքնաքննադատությունը, թերությունների բացահայտումն ու վերացումը մեր հասարակարգում կատարվող աշխատանքի փորձված մեթոդն է:

Մեր կյանքի դեմոկրատական հիմունքների զարգացումը որոշ մարդկանց մոտ այն սխալ պատկերացումն է առաջ բերում, թե այժմ իբր կարելի է ավելի քիչ ուշադրություն դարձնել աշխատանքային, հասարակական, պետական, բարոյական կարգապահության վրա: «Սոցիալիստական դեմոկրատիան,— ինչպես ճիշտ կերպով նշվում է Հոկտեմբերի 50-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում,— անհամատեղելի է անհատապաշտական ինքնակամության և քաղաքացիական պարտքի անարխիստական արհամարհանքի հետ, հասարակական շահերին վնաս պատճառող ամեն մի գործողության հետ»:

Արտասահմանի մեր գաղափարական հակառակորդները հույս են դնում այն բանի վրա, թե սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի զարգացումը կխախտի սովետական մարդկանց գաղափարական համոզվածությունը, որպես թե հասարակական զարգացման կարևորագույն հարցերը քննարկման դնելու դեպքում կքուլանա աշխատավորության հավատը կոմունիստական իդեալների նկատմամբ: Նրանք այստեղ ևս սխալվում են: Ընդհակառակը, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը կոմունիստական շինարարության բաղադրիչ մի մասն է, ամրապնդում է մասսաների հավատը կոմունիզմի հաղթանակի հանդեպ, դա գնալով ավելի գիտակցված է դառնում:

Բուրժուական գաղափարախոսները փորձում են ամեն հնարավորություն օգտագործել, որպեսզի անվստահություն սերմանեն Սովետական Միության ժողովուրդների միջև, սոցիալիստական երկրների միջև, խախտեն կոմունիստական աշխարհայացքի անկյունաքարերից մեկը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը: Նրանք ճգնում են ներշնչել, թե անխուսափելի են ազգային



էգոիզմն ու մեկուսացումը: Մեզ համար պարզ է, թե ինչպիսի նողկալի նպատակներ են հետապնդում նման տեսությունները քարոզողները, որոնց պետք է վճռական հակահարված տալ:

Սովետական երկրում տեղի է ունեցել սոցիալիստական սովերեն ազգերի վերածնման ու ծաղկման պրոցեսը: Միևնույն ժամանակ տնտեսական և սոցիալական ընդհանրության հիման վրա այդ ազգերի մոտ զարգանում են ինտերնացիոնալ գծերը, ամրապնդվում են կոմունիզմ կառուցողների համասովետական տրադիցիաները: Տարեցտարի ամրապնդվում են ժողովուրդների եղբայրական համագործակցությունն ու փոխօգնությունը, նրանց բարոյաքաղաքական միասնությունը: Ազգերի ծաղկումն ու մերձեցումը մի միասնական, անքակտելի պրոցես է, որը հենց ցանկանում են խախտել մեր գաղափարական հակառակորդները:

Հայ ժողովուրդն իսկական նյութական ու հոգևոր վերածննդի ժամանակաշրջան է ապրում, նա ամուր հող է զգում իր ոտների տակ, աննախընթաց բարձր է նրա ինքնագիտակցությունը: Հանրապետության աշխատավորները հպարտությամբ են մտածում այն մասին, որ սովետների երկիրը իսկական փարոս է դարձել բոլոր նրանց համար, ովքեր պայքարում են շահագործման ու ճնշման դեմ, հանուն ազգային անկախության, հանուն աշխատանքի մարդկանց երջանկության: Ժողովրդի աշխարհըմբռնումն ավելի լրիվ զգալու համար բավական է բերել այսպիսի մի փաստ: Սովետական իշխանության տարիներին աշխարհի բազմաթիվ երկրներից հանրապետություն են վերադարձել ավելի քան 200 հազար սփյուռքահայեր: Սովետական Հայաստանում նրանք նորից են գտել իրենց հայրենիքը:

Հայաստանի յուրաքանչյուր աշխատավոր գիտե, որ հանրապետության զարգացման ու ծաղկման հիմքերը դրել են Հոկտեմբերյան հեղափոխությունը, ժողովուրդների բարեկամությունը, նրանց միասնությունը Սովետական Միության մեջ, որի ոգեշնչողն ու կազմակերպիչը մեծ Լենինն է եղել: Ազգային սահմանափակվածությունը, ինքնամփոփությունը, շովինիզմը ոչ այլ ինչ են, քան եթե այն անցյալի մնացուկներ, որոնք ընդմիշտ չքացել են և երբեք չեն վերադառնա: Մենք ուրախությամբ տեսնում ենք, որ ժողովուրդների եղբայրական բարեկամության զգացմունքներն անցնում են սերնդե-սերունդ, ամրանում են ու ծաղկում հայ ժողովրդի մեջ: Հետևաբար և մարդկանց գաղափարական համոզմունքները, գիտակցականությունը հիրավի ավելի ու ավելի են բարձրանում: Եվ պատահական չէ, որ հանրապետությունում կատարվող քաղաքական աշխատանքի ամենատարածված ձևերից մեկը ժողովուրդների բարեկամության համալսարաններն են, որոնք ստեղծված են քաղաքներում, ավաններում, շրջաններում ու գյուղերում:

Չի կարելի աչքաթող անել այն փաստը, որ բուրժուական գաղափարախոսները ճգնում են իրենց ազդեցությունը թողնել սովետական մարդկանց, առանձնապես երիտասարդության վրա, որ «կամուրջներ գցելու» տեսությունը դատարկ ֆրազ չէ, այլ որոշակի պրակտիկա: Այդ նպատակի համար օգտագործվում են ռադիոն, մամուլը, կինոֆիլմերը, օտարերկրյա տուրիստների ուղևորությունները մեր երկրում: Ես կասեի, որ Հայկական ՍՍՀ-ն նույնիսկ բուրժուական պրոպագանդայի առանձնահատուկ ուշադրության առարկան է: Չէ՛ որ այն ամենն, ինչ տեղի է ունենում հանրապետությունում, նրա հաջողություններն ու դժվարությունները հայտնի են դառնում շատ երկրներում այն կապերի շնորհիվ, որ ունի բնակչությունն արտասահմանում գտնվող հայրենակիցների հետ: Այստեղից էլ հասկանալի է, թե բուրժուական գաղափարախոսների համար որքան կարևոր կլիներ իրենց սեփական հերյուրանքները ամրապնդել եթե ոչ արժանահավատ փաստերով, գոնե դրանց նման մի բանով: Եվ, իր հերթին, հանրապետության կուսակցական կազմակերպությունների համար որքան կարևոր է ուժեղացնել բուրժուական գաղափարախոսության տրվող հակահարվածը, բարձրացնել կոմունիստների և բոլոր աշխատավորների գաղափարական համոզվածությունը:

# 2

Բուրժուական պրոպագանդայի սիրված թեզիսներից մեկն էլ այն պնդումն է, թե սովետական մարդկանց բարեկեցության անմանը զուգընթաց իբր թե կանհետանա նրանց կոմունիստական համոզվածությունը, թե անխուսափելի է սովետական հասարակարգի ընդհանուր գաղափարական հիմունքների էրոզիան։ Նրանք ելնում են այն բանից, որ աշխատավորության նյութական ու հոգևոր պահանջմունքների լրիվ բավարարումը որպես թե ավելի ուժեղ կերպով նրանց մեջ անհատական, անհատապաշտական հակումներ կզարգացնի, նրանք ցանկություն չեն ունենա որևէ բան զոհել ընդհանուր շահերին, կտանի դեպի համարյա թե բուրժուական մտածելակերպը։ Ինչպես հայտնի է, արտասահմանում անհաշիվ է մոլագարների թիվը, որոնք ճգնում են մեր տնտեսական ռեֆորմը հրամցնել որպես այդպիսի զարգացման ուղղությամբ կատարված գործնական մի քայլ։ Սովետական ժողովրդի «բուրժուականացման» թեզիսն այժմ տարածում է նաև չինական պրոպագանդան, որը ճիգ ու ջանք է թափում ապացուցելու, թե իբր սովետական մարդը և Սովետական Միությունը քայլ առ քայլ կորցնում են իրենց հեղափոխականությունը։ Ինչպի՞սի ստոր զրպարտություն։

Մեր կուսակցությունը, ինչպես և ամեն մի այլ մարքս-լենինյան կուսակցություն, երբեք էլ չի թաքցրել, որ իր գլխավոր, վերջնական նպատակը աշխատավորության բարօրությունն է, որ կոմունիզմը այնպիսի հասարակարգ է, որտեղ ապահովված է բոլոր մարդկանց բարեկեցությունը և ամենանպաստավոր պայմաններն են ստեղծված յուրաքանչյուր մարդու համակողմանի զարգացման համար։ «Միայն սոցիալիզմն է,— ասում էր Վ. Ի. Լենինը,— որ հնարավորություն կտա արդյունքների հասարակական արտադրությունն ու բաշխումը լայնորեն տարածել և գիտական նկատառումներով իսկապես ենթարկել այն նպատակին, թե ինչպես բոլոր աշխատավորների կյանքը դարձնել առավել հեշտ, և այնպես, որ նա բարեկեցության հնարավորություն ընձեռնի աշխատավորներին։ Միայն սոցիալիզմը կարող է իրականացնել այս, և այսպիսի ճշմարտության ըմբռնումը կազմում է մարքսիզմի ամբողջ դըժվարությունը և նրա ամբողջ ուժը» (Երկեր. հ. 27, էջ 511)։

Կուսակցության հոգատարության կենտրոնում սովետական մարդն է։ Ճիշտ է, սովետական պետությունը հարկադրված եղավ երկար տարիներ ծանր պայմաններում զարգանալ, երբ անհրաժեշտ էր ամենակարճ ժամկետներում ստեղծել սոցիալիզմի տնտեսական հիմքը, ապահովել երկրի պաշտպանությունը նրա թշնամիների ոտնձգություններից, երբ աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման հարցերը ակամայից չէին կարող լուծվել լրիվ չափով։ Երկրի արտադրողական ուժերի զարգացման բարձր մակարդակը, արտադրության արդյունավետության բարձրացումն այժմ մեր պետությանը հնարավորություն է տալիս երկրի պաշտպանության վրա կատարած զգալի ծախսումների հետ մեկտեղ, մեծ միջոցներ հատկացնել ժողովրդի նյութական բարեկեցության բարելավմանը։ Այդ իսկ պատճառով սովետական մարդկանց կենսամակարդակը սկսել է շատ ավելի արագ բարձրանալ։ Դա անհերքելի փաստ է, որն ապացուցելու համար բերենք ՀՍՍՀ օրինակը։

Հանրապետության աշխատավորների բարեկեցության բարձրացումը, նրանց կենսապայմանների բարելավումը տեղի են ունենում զանազան եղանակներով։ Անդրադառնանք դրանցից մի քանիսին։ Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ ամսական միջին աշխատավարձը վերջին տասը տարվա ընթացքում ավելացել է 40,1 տոկոսով, իսկ կոլտնտեսականների եկամուտները՝ 81,1 տոկոսով։ Միայն վերջին չորս տարվա ընթացքում սպառման հասարակական ֆոնդերը աճել են 60 տոկոսով։ Ապրանքաշրջանառությունը տասը տարվա ընթացքում աճել է ավելի քան 2,5 անգամ, հասարակական սննդի ձեռնարկությունների թիվը 826-ից հասել է 2131-ի։ Հետաքրքրություն է ներկայացնում հետևյալ աղյուսակը, որը ցույց է տալիս երկարատև օգտագործման մի քանի ապրանքների վաճառքի աճը.



| *Ապրանքներ* | *1956 թվական* | *1966 թվական* |
|---|---|---|
| *Հեռուստացույցներ (հազ. հատ)* | 5,0 | 30,6 |
| *Սառնարաններ (հազ. հատ)* | 3,5 | 30,8 |
| *Էլեկտրական փոշեծծիչներ (հազ. հատ)* | 1,3 | 6,2 |
| *Լվացքի մեքենաներ (հազ. հատ)* | 6,5 | 21,0 |
| *Կահույք (մլն. ռուբ.)* | 6,6 | 15,2 |
| *Դաշնամուրներ (հատ)* | 200* | 2703 |

Վերջապես, բնակելի տարածության ընդհանուր ֆոնդը վերջին յոթ տարվա ընթացքում հանրապետությունում ավելացել է 56 տոկոսով, այսինքն՝ կեսից ավելի։

Այն հանգամանքը, որ գնալով ավելի ու ավելի լրիվ չափով են իրականանում աշխատավորության ձգտումները, այդ թվում նաև նյութական բարեկեցության ձգտումը, ոչ միայն չեն խախտում, այլ, ընդհակառակն, միայն ամրապնդում են նրանց հավատը մեր գաղափարների նկատմամբ, բարձրացնում են գիտակցականությունը, համախմբում նյութական և հոգևոր կուլտուրայի ավելի մեծ վերելքի համար մղվող պայքարում։ Չէ՞ որ դեռ Վ. Ի. Լենինն էր ընդգծում. «Մասսան մտնում է շարժման մեջ, եռանդագին մասնակցում է դրան, բարձր է գնահատում այն ու զարգացնում հերոսություն, անձնվիրություն, հաստատակամություն ու նվիրվածություն մեծ գործին ոչ այլ կերպ, քան աշխատողի տնտեսական դրության բարելավման դեպքում» (Երկեր, հ. 18, էջ 93)։

Կցանկանայի վկայակոչել իմ մի քանի անձնական տպավորությունները։ Բազմիցս ինձ վիճակվել է լինել Նոյեմբերյանի լեռնային շրջանի գյուղերից մեկում։ Հիշում եմ 1931 թվականը, երբ այստեղ կոլեկտիվացում էր տեղի ունենում, երբ չորս կողմը շրջում էին կուլակային բանդաներ, որոնք որոշակի աջակցություն էին ստանում գյուղացիների հետամնաց մասի, ինչպես նաև նրանց կողմից, ովքեր սպառողական դիրք էին գրավել։ Հիշում եմ պատերազմին նախորդող ժամանակաշրջանը։ Այն ժամանակ գյուղում արդեն կոլտնտեսություն կար և գյուղացիները սովորել էին նոր կյանքին, նոր հարաբերություններին՝ աշխատանքում, հասարակության մեջ, ինչպես և կենցաղում։ Եվ ահա հենց ամենավերջին ժամանակներս ես նորից եղա այդ գյուղում։ Այն անճանաչելի էր դարձել։ Հին, խարխուլ խրճիթների փոխարեն նոր, լուսավոր տներ, արտադրական կառույցներ, կուլտուր-կենցաղային հիմնարկներ։ Այդ ամենը տառացիորեն կերպարանափոխել էր գյուղը։ Անցյալի գիրկն են անցել կարիքն ու ընտանիքը կերակրելու հոգսը։ Կոլտնտեսականները լավ են վաստակում, նրանց երեխաները սովորում են դպրոցներում ու բուհերում։ Եվ ինչպի՞սի խոհերով ու տրամադրությամբ են համակված այժմ գյուղացիները։ Մեր գործի արդարության նկատմամբ անսասան հավատ, լիակատար, անվերապահ աջակցություն սովետական իշխանությանը, կուսակցության քաղաքականությանը, հասարակական բարձր գիտակցականություն։

Սա, իհարկե, լոկ միայն մի օրինակ է, թեպետև, մեր կարծիքով, բնորոշ օրինակ։ Բայց բանն անգամ այդ չէ։ Առկա են այն բանի օբյեկտիվ ցուցանիշներ, որ սովետական մարդկանց գաղափարական համոզվածությունը, գիտակցականությունն աճում է։

Գաղափարական համոզվածության խորությունն ստուգելու ոչ մի այլ եղանակ չկա, քան գործով ստուգելը։ Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս նկատի ունենալ ո՛չ թե մտադրությունները, այլ փաստերը, ո՛չ թե բարի ցանկությունները, այլ գործերը, ո՛չ թե կարծեցյալը, այլ իրականը։ Իսկ եթե մարդու խոսքն ու գործը չեն բռնում իրար, եթե նա քարոզում է մի բան, իսկ գործում է բոլորովին այլ կերպ, նշանակում է՝ նրա համոզմունքները, ինչպես դիպուկ նկատել է Լենինը, ոչ թե խորն են, այլ գտնվում են լեզվի ծայրին։

* *1958 թ.*

Կուսակցությունը միշտ էլ մասսայական աշխատանքային հերոսությունը դիտել է որպես սովետական մարդկանց բարձր գիտակցականության, գաղափարական ոգեշնչվածության վառ ցուցանիշ: Սակայն այդ հերոսությունը տարբեր ձևով է դրսևորվում տարբեր ժամանակաշրջաններում: Սովետական իշխանության առաջին տասնամյակներում, երբ հարկադրված էինք շատ բան, ինչպես ասում են, «զերոյից» սկսել, երբ չորս կողմը պակասություն էր, աշխատավորների անձնվիրությունը հաճախ արտահայտվում էր թե՛ արտաժամյա աշխատանքով, թե՛ իրենց պահանջմունքները սահմանափակելով մինչև նվազագույն չափը և թե՛ ամեն եղանակով, ծախսումներից անկախ, նպատակին հասնելու ձգտումով: Ոչ ոք չի կարող տարակուսել, որ դա իսկական հերոիկա էր: Այժմ այլ ժամանակներ են: Մեր հասարակարգի հասունությունն այն բանի մեջ է, որ մենք կարող ենք մեր ամբողջ արտադրությունն ու կենցաղը կազմակերպել պլանաչափ կերպով, իսկական գիտական հիմքի վրա, առանց գրոհների, առանց աշխատավորների ուժերի անարդարացի գերլարվածության:

Այժմ միլիոնավոր աշխատավորներ ակտիվորեն պայքարում են աշխատանքի բարձր արտադրողականության համար, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, աշխատանքի պրոցեսն առավել կատարյալ ձևով կազմակերպելու համար: Դրանք այնպիսի բաներ են, որոնք միանգամից չեն լուծվի, այստեղ անհրաժեշտ է ուժերի ու ուշադրության ամենօրյա լարում: Այդ ամենօրյա ստեղծագործ աշխատանքի մեջ է ամենից ավելի լավ դրսևորվում իսկական սովետական հայրենասիրությունը: Եվ կարելի է բերել մեր բանվորների, կոլտնտեսականների, գիտնականների, մասնագետների աշխատանքային, հիրավի հայրենասիրական սխրանքների հազարավոր օրինակներ, այն մարդկանց, որոնց հերոսության արժեքը հենց այն բանի մեջ է, որ նրանց գերազանց աշխատանքը տևում է տարիներ, ոգեշնչված է հասարակական վսեմ իդեալներով: Ահա մի քանի այդպիսի օրինակ:

Քառորդ դար է, ինչ Ղափանի պղնձահանքերում աշխատում է անվանի հանքագործ Մ. Համբարձումյանը: Տասնյոթ տարեկան պատանի էր նա, երբ առաջին անգամ հանքագործի արտահագուստ հագավ և հանքախորշ իջավ: Ստորգետնյա արտադրության մեջ այն ժամանակ գերակշռում էր ձեռքի աշխատանքը, պայմանները ծանր էին, բայց պատանի կոմերիտականը համառորեն վարպետություն էր սովորում իր ավագ ընկերներից և վատ արդյունքներ ցույց չէր տալիս: Ղափանի հանքերն այժմ առաջվանը չեն: Գետնի տակ բանում են բարդ, բարձրարտադրողական մեխանիզմներ: Սակայն հանքագործի պրոֆեսիան առաջվա պես թե՛ դժվարին և թե՛ չափազանց կարևոր է մնում: Հանքահորում աշխատած տարիների ընթացքում ընկ. Համբարձումյանը գետնի տակ ութ կիլոմետր ճանապարհ է կտրել, հանձնել է 114 հազար տոննա հանքաքար ու ապար—բավական պատկառելի մի ավանդ այն ամենի մեջ, ինչ արվել է Ղափանի հանքագործների մեծ կոլեկտիվի կողմից: Կոմունիստի գաղափարական համոզվածությունը, կուսակցության առաջադրած խնդիրների իրականացման համար ակտիվորեն պայքարելու պատրաստակամությունը նրան օգնել են երկար տարիներ գտնվելու հանքաքարի հանույթն ավելացնելու պայքարի առաջավոր գծում, հաստատակամորեն հաղթահարել դժվարությունները, իր ամբողջ գիտելիքներն ու փորձը նվիրաբերել ընդհանուր գործին: Այդ ազնիվ ձգտումները բնորոշ են Մ. Համբարձումյանի հասարակական գործունեության համար ևս: Հայրենիքը բարձր է գնահատել հանքագործի հերոսական աշխատանքը: Նա պարգևատրված է աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով, իսկ իր յոթնամյա առաջադրանքը չորս տարում կատարելու համար՝ Լենինի շքանշանով:

Տաթևի հիդրոէլեկտրակայանի շինարարության մեջ լայն համբավ ու ընդհանուր հարգանք է վայելում թունելագործ հորատողների բրիգադիր Գալուստ Համբարձումի Ղարիբյանը: 1949 թվականին նա քսան տարեկան երիտասարդ էր, երբ «Հայհիդրոէներգոշին» եկավ և այդ ժամանակվանից ի վեր անընդմեջ աշխատում է շինարարության մեջ: Նա մասնակցել է Գյումուշի, Արզնու, Աթարբեկյանի և Երևանի հիդրոկայանների կառուցմանը ու դարձել բարձր



որակավորում ունեցող թունելագործ բանվոր: Տաթևի հիդրոէլեկտրակայանի շինարարության մեջ նա հանդես է եկել որպես թունելի արագ հորատանցման համար ծավալված մրցության նախաձեռնող: Նրա ղեկավարած հորատողների բրիգադն արտադրական առաջադրանքները սիստեմատիկաբար գերակատարում է 30—40 տոկոսով, պայքարելով կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար: Գալուստ Ղարիբյանն իր հարուստ փորձն ու գիտելիքները սիրահոժար հաղորդում է երիտասարդ բանվորներին: Նրա բազմաթիվ աշակերտները հաջողությամբ են աշխատում հանրապետության հիդրոտեխնիկական կառույցներում: Համեստ, կարգապահ, իր և իր ընկերների նկատմամբ պահանջկոտ Գ. Հ. Ղարիբյանը թունելագործի դժվարին աշխատանքը հաջողությամբ զուգակցում է հասարակական ակտիվ գործունեության հետ: Այդ անկուսակցական բանվորն ինչպես աշխատանքում, այնպես էլ կյանքում նոր, սովետական մարդու օրինակ է հանդիսանում: Էներգետիկայի զարգացման գործին մատուցած մեծ ծառայությունների համար ընկ. Ղարիբյանը բարձրագույն պարգևի՝ Լենինի շքանշանի է արժանացել:

Պատահական չէ, որ այստեղ ասվեց հատկապես շքանշանակիրների մասին: Նրանք հանրապետության լավագույն մարդիկ են՝ բանվորներ, կոլտնտեսականներ, ծառայողներ, մասնագետներ, որոնց հիանալի աշխատանքը, հասարակական բարձր գիտակցությունը արտահայտվում է գործնականում: Բայց չէ՛ որ հանրապետությունում ավելի քան 30 հազար հոգի պարգևատրվել են աշխատանքում ցուցաբերած արիության համար: Մի՞թե դա ցույց չի տալիս, թե որքա՜ն լայն է այն մարդկանց շրջանը, որոնց աշխատանքային ու հասարակական ակտիվությունը համաժողովրդական ճանաչում է գտել: Դրա հետ մեկտեղ ամեն մեկին հայտնի է, որ մեր շքանշանակիրներին այնպիսի մարդիկ են շրջապատում, որոնք ձգտում են աշխատել նրանց պես, հասնել նույնպիսի բարձր արդյունքների: Եվ նրանք հաջողությամբ են անում այդ:

Երբ ասում են, թե բարձր կազմակերպված արտադրության պայմաններում աշխատանքային հերոսությունը պակաս մասսայական չէ, քան սովետական իշխանության առաջին տասնամյակներում, բայց նա մի փոքր այլ կերպ է դրսևորվում, քան այն ժամանակ, ապա դա չի նշանակում, թե այժմ քիչ են ընդհանուր գործի օգտին իրենց ուժերը անձնուրաց կերպով նվիրաբերելու վառ օրինակները: Հողերի յուրացումը և ոռոգման սիստեմների ստեղծումը լեռնային ու անապատային շրջաններում, ճանապարհների ու թունելների կառուցումը, հիդրոէլեկտրակայանների ու հանքահորերի շինարարությունը,— այս ամենը հիմա էլ անձնվիրություն ու հերոսություն, մեծ տոկունություն ու կամք է պահանջում՝ զրկանքներն ու դժվարություններն արժանավայել կերպով տանելու համար: Եվ այդպիսի գործերին կամավոր գնացողների թիվը մեզանում միշտ էլ շատ է: Կցանկանայի մի փաստի մասին պատմել:

Նոյեմբերյանի շրջանում, Այրում կայարանի մերձակայքում կար մի հողատարածություն, որը հարյուրամյակներ շարունակ անպետք էր համարվել գյուղատնտեսական արտադրության համար՝ մի անջուր, արևից խանձված անապատ, թունավոր օձերի ու կարիճների բույն: Միայն տատասկափուշ էր բուսնում տխրաբույր այդ վայրում: Բայց մասնագետներն ապացուցեցին, որ այդ հողերը ոռոգելու դեպքում մեծ օգուտ կարող են տալ: Սովետական իշխանության տարիներին Հայաստանի աշխատավորները կյանքի էին կոչել տասնյակ հազարավոր հեկտար ամայի հողեր Թալինի, Աշտարակի, Հոկտեմբերյանի և այլ շրջաններում, այգիների ու պլանտացիաների կանաչ զգեստ էին հագցրել դրանց: 1949 թ. հասավ նաև այդ հողամասի հերթը, որոշվեց այդտեղ ձիթապտուղ աճեցնող մի մասնագիտացված տնտեսություն ստեղծել:

Այդ ժամանակվա համար անծանոթ, դժվարին գործը եռանդուն ղեկավար էր պահանջում: Այդպիսի մարդ գտնվեց: Ի դեպ, նա հենց ինքն էր եղել այդ չորային տարածության յուրացման նախաձեռնողը: Դա փորձված կազմակերպիչ, հմուտ տնտեսավար, կուսակցության անդամ Բ. Ա. Վարդանյանն էր: 1949 թվականին նա ղեկավար պաշտոն էր գրավում՝ գլխավորում էր Հայկոնսերվտրեստը: Նա արդեն անցել էր կյանքի մեծ ու դժվարին ուղի: Հայաստանում սովետական իշխանության հաստատումից հետո ընկ. Վարդանյանը ղեկա-

վարել էր Աշտարակի մանկական կոմունան, եղել էր հեղկոմի նախագահ էջմիածնի գավառում, աշխատավորների դեպուտատների Հոկտեմբերյանի շրջանային սովետի գործկոմի նախագահ, Հայկոնսերվտրեստի սովխոզների վարչության պետ, սննդի արդյունաբերության ժողկոմի տեղակալ: Կարճ ասած, ընկ. Վարդանյանը, որն այն ժամանակ արդեն հասակն առել էր ու շատ գործ կատարել իր կյանքում, կարող էր հանգիստ խղճով մնալ Երևանում: Բայց կոմունիստի սիրտը կոչում էր նրան այնտեղ, որտեղ պայքար էր ծավալվելու:

Ծանր էր անապատային վայրում տնտեսություն ստեղծելը: Սկզբնական շրջանում հարկ եղավ ապրել վրաններում. նոր սովխոզի տեխնիկական բազան հարուստ չէր, կար ընդամենը մի տրակտոր, մի ավտոմեքենա և չորս զույգ եզ: Մարդիկ քիչ էին: Շատերը չէին հավատում հաջողությանը: Բայց ընկ. Վարդանյանը չնահանջեց: Նա կազմակերպեց համերաշխ մի կոլեկտիվ, և մարդիկ քայլ առ քայլ նվաճեցին անապատը, վերածելով այն ծաղկող այգեստանի:

18 տարի է անցել այն ժամանակվանից: Ընկ. Վարդանյանի ղեկավարությամբ ստեղծված «Զեյթուն» սովխոզն այժմ հանրապետության ամենահարուստ տնտեսություններից մեկն է: Այստեղ շուրջ 20 տեսակի միրգ է աճեցվում: 1966 թվականին սովխոզը 1.866 հազար ռուբլի եկամուտ ստացավ, որից զուտ շահույթը 952 հազար ռուբլի էր:

Ահա թե ինչպիսի՜ սքանչելի գործերով է նշված 73-ամյա կոմունիստ Բ. Ս. Վարդանյանի ուղին: Հանրապետության սովխոզների դիրեկտորների մեջ նա առաջինն արժանացավ սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման:

Մարդկանց ընդհանուր աշխատանքային հերոսությունից, անձնուրաց գործունեությունից բացի, գոյություն ունեն աշխատավորության հասարակական ակտիվության այլ ցուցանիշներ ևս, նրանց բարձր գիտակցության դրսևորումներ, որպիսիք մենք իրավունք ունենք մասսայական համարելու: Օրինակ վերցնենք ռացիոնալիզատորների և գյուտարարների շարժումը: Հայտնի է, որ հաճախ պահանջվում է բավական ջանք թափել, համառություն, համբերություն ցուցաբերել, չվախենալ դժվարություններից՝ առաջարկությունները արմատավորելու համար: Բայց և այնպես այդ շարժումը ծավալվում է օրեցօր: Այդ մասին են համոզիչ կերպով խոսում հետևյալ տվյալները.

| | 1959 թվական | 1966 թվական |
|---|---|---|
| Գյուտարարների և ռացիոնալիզատորների թիվը (հազ.) | 7,5 | 13,1 |
| Արված առաջարկությունների քանակը (հազ.) | 13,6 | 18,6 |
| Արմատավորված առաջարկությունների տված տարեկան խնայողության գումարը (մլն. ռ.) | 6,3 | 16,4 |

Ընդամենը մի տասը տարի առաջ, երբ կոլտնտեսականների ժողովներում քննարկման էր դրվում եկամուտների բաշխման հարցը, կուսակցական կազմակերպությունները հաճախ հարկադրված էին լինում ապացուցել այն բանի կարևորությունը, որ անհրաժեշտ է զգալի միջոցներ հատկացնել հանրային ֆոնդերին՝ արտադրությունը զարգացնելու և կուլտուր-կենցաղային շենքեր կառուցելու համար: Շատ կոլտնտեսականներ այն ժամանակ ձգտում էին այնպես բաշխել եկամուտները, որ դրանց առյուծի բաժինն ընկնի անձնական սպառմանը: Բայց այն ժամանակվանից ի վեր զարմանալի կերպով փոխվել են կոլտնտեսականների տրամադրությունները, հայացքները: Այժմ արդեն դժվար չէ համոզել մարդկանց, որ անհրաժեշտ է, եթե դա արդարացված է, ավելի շատ միջոցներ ծախսել այս կամ այն արտադրական կամ կուլտուրական ընդհանուր նպատակի համար: Դեռ ավելին, իրենք՝ կոլտնտեսականները ևս նախաձեռնություն են ցուցաբերում ավելի արագորեն կառուցելու արտադրական շինություններ, կուլտուրայի պալատներ, դպրոցներ, ճանա-



պարհներ: Երբ կոլտնտեսականների մասսան հոգ է տանում հանրային ֆոնդեր ստեղծելու մասին, դրանք դիտում է որպես ընդհանուրի սեփականություն, որի մեջ յուրաքանչյուրն իր աշխատանքը, միջոցներն է ներդրել, ապա դա կոլեկտիվիզմի զգացումի, խոր գիտակցականության փայլուն վկայություն է: Այդ ամենի մեջ զգացվում է, իհարկե, որ գյուղացիները հիմա վստահ են իրենց կոոպերատիվների հաջող զարգացման հարցում. զգացվում է նաև այն, որ կոլտնտեսությունների եկամուտներն անընդհատ աճում են: Բարեհաջող ընթացք ունեցող այդ օբյեկտիվ պայմաններն էլ հենց գտնվում են մեր զարգացման գլխավոր գծի վրա: Եվ միանգամայն օրինաչափ է, որ դրանք օգնում են հասարակական գիտակցության աճմանը, ամրապնդում են կոլտնտեսականների հավատը ընդհանուր գործի արդարացիության նկատմամբ:

Աշխատավորների մասսայական ակտիվության վառ ցուցանիշներից մեկը նրանց մասնակցությունն է հասարակական գործունեությանը: Օրեցօր ավելի մեծ թվով մարդիկ են զանազան հանձնարարություններ կատարում հասարակական հիմունքներով, պարապում են քաղաքական խմբակներում, հանրակրթական դպրոցներում, ժողովրդական թատրոններում: Ընդհանուրի շահերի նկատմամբ անտարբեր կամ ապոլիտիկ մարդը հազիվ թե ներգրավվի այդ գործունեության մեջ:

Այսպես ուրեմն, միանգամայն ակնհայտ է հետևյալը. եթե գաղափարական համոզվածությունը, գիտակցականությունը, հավատարմությունը կուսակցության քաղաքականությանն ամենից առաջ գործերի, հասարակական ակտիվության մեջ է դրսևորվում,— իսկ դա հենց այդպես է,— ապա դրա օբյեկտիվ ապացույցներն առկա են մեզանում: Սակայն դեռևս չի կարելի վերջակետ դնել այստեղ:

Կյանքում ակամա այնպիսի երևույթների ենք հանդիպում, որոնք վկայում են, որ առանձին մարդիկ սխալ պատկերացում ունեն մեր իրականության մասին: Հանդիպում ենք նաև այս կամ այն անձնավորության հակահասարակական գործելակերպին: Առաջին հերթին այդ նրանք են, որոնց մեջ ավելի լավ ապրելու բնական ցանկությունը վերածվում է արտառոց ընչաքաղցության, երբեմն նաև անազնիվ ճանապարհով շահառության ձգտման: Պատահում են մարդիկ, որոնց համար անձնական ու ազգակցական կապերը, ծանոթությունը ավելի մեծ նշանակություն ունեն, քան սկզբունքները: Որոշ աշխատողներ ընկնում են նաև նացիոնալիստական տրամադրությունների ազդեցության տակ, որոնց վտանգի որևէ ձևով թերագնահատումը կլիներ վնասակար: Կան կնոջ նկատմամբ ոչ ընկերական վերաբերմունքի փաստեր:

Չի կարելի հանգիստ անցնել այդպիսի, անգամ նույնիսկ եզակի երևույթների կողքից, հույսը դնելով այն բանի վրա, թե դրանք իրենք իրենց կվերանան: Հարկավոր է ակտիվ պայքար մղել հանուն անաղարտության մեր կյանքում և մեր աշխարհայացքում: Ահա թե ինչու այդքան մեծ է կուսակցական կազմակերպությունների դերը մարքս-լենինյան տեսության, կուսակցության քաղաքականության պրոպագանդման ու պարզաբանման, բոլոր աշխատավորների մեջ կոմունիստական համոզվածություն դաստիարակելու գործում:

## 3

Մասսայական-քաղաքական աշխատանքի կարևորագույն մի ուղղությունը սովետական ժողովրդի, կուսակցության հերոսական տրադիցիաների պրոպագանդումն է: Այն ժամանակ, երբ ամբողջ կոմունիստական շարժումը, աշխարհի ողջ աշխատավորությունը պատրաստվում է նշանավորելու մեծ Հոկտեմբերի 50-ամյակը, մեր գործունեության այդ ուղղությունը, որը միշտ էլ ակտիվորեն է ներգործում սովետական մարդկանց գաղափարական համոզվածության ու գիտակցականության ձևավորման վրա, առանձնահատուկ նշանակություն ու յուրահատուկ իմաստ է ձեռք բերում: Հերոսական տրադիցիաների պրոպագանդման պայմաններն այժմ ամենից ավելի են նպաստավոր:

Բնական է, որ, պատմելով սովետների պետության անցած հերոսական

ուղու մասին, մենք նկատի ունենք ՍՍՀՄ բոլոր ժողովուրդներին, այդ թվում նաև հայ ժողովրդին ու նրա ավանդը նոր հասարակարգի կառուցման գործում: Հայաստանը, ինչպես և մյուս բոլոր սովետական հանրապետությունները, շատ բան ունի հպարտանալու:

Միշտ էլ՝ կոմունիստական գաղափարայնության, հեղափոխության գործի նկատմամբ հավատարմության վառ օրինակ են ծառայում մեծ Լենինի, մեր կուսակցության լենինյան հզոր գվարդիայի ներկայացուցիչների, այն հազարավոր բոցաշունչ հեղափոխականների կյանքը, որոնց մեջ էին նաև հայ ժողովրդի պանծալի զավակները՝ Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Բ. Կնունյանցը, Ա. Մյասնիկյանը, Ս. Տեր-Պետրոսյանը (Կամո) և շատ ուրիշներ: Լեգենդար Կամոյի անօրինակ հերոսական սխրագործությունների հորդ աղբյուրն է եղել կոմունիստի անսասան համոզվածությունն այն գործի արդարության մեջ, որի համար ինքը պայքարում էր: Ոչ մի բան՝ ո՛չ աքսորը, ո՛չ ծանր զրկանքները, ո՛չ էլ խոշտանգումները չէին կարող ստիպել նրան շեղվելու հեղափոխության ուղուց:

Աննկուն կամքը, գաղափարական համոզվածությունը, հավատարմությունը սոցիալիստական հայրենիքին՝ երաշխիք էին այն հերոսական սխրանքների, որ կատարեցին հայ ժողովրդի զավակները Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներում: Հանուն սովետական հայրենիքի մղած մարտերում աչքի ընկան դիվիզիայի հրամանատարներ Ն. Սաֆարյանը, Ա. Սարգսյանը, գեներալ-մայոր Ք. Ալավերդյանը, օդաչուներ Պ. Գազազյանը և Սովետական Միության կրկնակի հերոս Ն. Ստեփանյանը, Բրեստի ամրոցի պաշտպանության մասնակից քաղդեկ Ս. Մաթևոսյանը, Սովետական Միության հերոս Հ. Ավետիսյանը, որը լեգենդար Ալեքսանդր Մատրոսովի օրինակով իր կրծքով ծածկեց թշնամու կրակային կետի հրակնատը:

Ցուցաբերած հերոսության ու արիության համար 70 հազար հայ մարտիկներ պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով, իսկ 103 հոգի արժանացան Սովետական Միության հերոսի բարձր կոչման (նրանցից 86-ը՝ կոմունիստ և կոմերիտական): Սովետական բանակի շարքերում աճեցին շուրջ 60 հայ զորահրամանատարներ և նրանց թվում այնպիսի ականավոր զորավարներ, ինչպես Սովետական Միության մարշալ Հ. Բաղրամյանը, Սովետական Միության ծովակալ Հ. Իսակովը, ավիացիայի մարշալ Ս. Խուդյակովը (Խանֆերյանցը): Հայրենական մեծ պատերազմի ժամանակ հայ ժողովուրդը ռուս մեծ ժողովրդի և մեր երկրի մյուս եղբայրական ժողովուրդների հետ կողք-կողքի՝ պատվով կատարեց իր պարտքը հայրենիքի հանդեպ:

Հայաստանի կուսակցական կազմակերպությունն ամենօրյա ուշադրություն է նվիրում գաղափարական աշխատանքի ուժեղացմանը, աշխատավորների քաղաքական դաստիարակությանը նպաստող գրականության հրատարակմանը: Սովետական իշխանության տարիներին հայոց լեզվով հրատարակվել են Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի երկերը: Հրապարակվել են կոմունիստական կուսակցության ականավոր գործիչների, այդ թվում Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Բ. Կնունյանցի, Ա. Մյասնիկյանի և մյուսների գործերը: Լույս են տեսել նաև մենագրություններ նրանց կյանքի և հեղափոխական գործունեության վերաբերյալ, «Հայաստանի կոմկուսակցության պատմության ուրվագծերը», որոնք հոբելյանական տարում լույս կտեսնեն նաև ռուսերեն լեզվով: Հրատարակվել են մի շարք փաստաթղթերի ժողովածուներ, մենագրություններ Հայաստանի հեղափոխական իրադարձությունների, քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմների հերոսների մասին, պատրաստվում է հայ ժողովրդի պատմության բազմահատորյակը, տպագրության են պատրաստվել Հայաստանի կոմերիտմիության պատմությունը, «Հեղափոխական շարժման գործիչներ» ժողովածուն և այլ գրքեր: Հայ ընթերցողն արդեն մայրենի լեզվով ստացել է գրքեր ու բրոշյուրներ կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչների՝ Ս. Մ. Կիրովի, Գ. Կ. Օրջոնիկիձեի, Վ. Վ. Կույբիշևի, Յա. Մ. Սվերդլովի, Ա. Գ. Ծուլուկիձեի, սովետական բանակի զորավարների մասին:

Լավ տրադիցիա են դարձել հուշերի այն երեկոները, որ նվիրված են լի-



նում ականավոր հեղափոխականների հիշատակին՝ նրանց հոբելյանական տարեթվերի առնչությամբ: Այդպիսի երեկոներ են նվիրվել Կամոյին, Ալ. Մյասնիկյանին, Գ. Կ. Օրջոնիկիձեին, Ս. Լուկաշինին, քաղաքացիական կռիվների լեգենդար հերոս Գային (Հ. Բժշկյանցին) և ուրիշներին: Կազմակերպվել են նաև գիտական սեսիաներ հեղափոխական շարժման ականավոր ներկայացուցիչների կյանքի ու գործունեության վերաբերյալ:

Սովետական երիտասարդությանը կուսակցության ու ժողովրդի հերոսական հեղափոխական տրադիցիաներով դաստիարակելը գտնվում է Հայաստանի կոմերիտական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Ստեղծվել են «կարմիր հետախույզների» հարյուրավոր ջոկատներ, որոնք անցել են XI կարմիր բանակի, հայկական հրաձգային 89-րդ շքանշանակիր Թամանյան դիվիզիայի մարտական ուղիներով, հայերի հեղափոխական փառքի վայրերով:

## 4

Կոմունիստները միշտ էլ տվել են բարձր համոզվածության, հասարակական պարտքի կատարման օրինակ, հանդիսացել կուսակցության գլխավոր գծի կիրառողներ: Կուսակցական կազմակերպությունների մարտունակությունն աճեց ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թվականի) և հետագա պլենումներից, կուսակցության XXIII համագումարից հետո: Այնուամենայնիվ կոմունիստների գաղափարական կոփվածության բարձրացումը հրատապ խնդիր է: Այդ են թելադրում մեր հասարակարգի զարգացման ամբողջ ընթացքը, տնտեսական, քաղաքական և կուլտուրական պրոցեսների բոլոր բարդությունները ճշտորեն ու իր ժամանակին վերլուծելու, կուսակցության անդամների ավանգարդային դերն անդուլ կերպով բարձրացնելու անհրաժեշտությունը: Եվ Հայաստանի կուսակցական կազմակերպությունը հոգ է տանում կոմունիստների գաղափարական դաստիարակությունը մշտապես բարելավելու, կուսակցության բոլոր օղակներում բոլշևիկյան սկզբունքայնության, պահանջկոտության մթնոլորտ ստեղծելու մասին: Այս առնչությամբ անդրադառնանք հանրապետության կուսկազմակերպության կյանքի որոշ կողմերին:

Ամենից առաջ չի կարելի չասել, որ նշանակալի չափով բարելավվել է կուսակցական ուսուցման՝ կոմունիստների գաղափարական ձևավորման ամենակարևոր միջոցներից մեկի դրվածքը: Տեսությանը տիրապետելու նպատակային սիստեմ մտցնելը բարձրացրել է հետաքրքրությունը տեսության նկատմամբ, նոր աստիճանի է բարձրացրել գործի կազմակերպումը: Այժմ 115 հազար կոմունիստներից գրեթե 100 հազարը պարապում են կուսակցական ուսուցման ցանցում: Կուսակցության անդամների ու թեկնածուների մի մեծ ջոկատ՝ ավելի քան 10 հազար հոգի, տիրապետում են տեսությանը ինքնուրույն կերպով: Եթե նկատի ունենանք, որ մեթոդիկայի կատարելագործման, փորձի կուտակման, պրոպագանդիստների որակավորման բարձրացման շնորհիվ տարեցտարի բարելավվում է պարապմունքների որակը, ապա անվիճելի է, որ գնալով ավելի է բարձրանում կուսակցական ուսուցման արդյունավետությունը:

Ինքնուրույն մտածելու, իր համոզմունքները պաշտպանելու, կյանքի բարդ և երբեմն հակասական հարցերի ճիշտ պատասխաններ գտնելու ունակությանն անշուշտ նպաստում են կուսակցական լուսավորության ու քաղաքական աշխատանքի այնպիսի ձևերը, ինչպիսիք են՝ տեսական կոնֆերանսները, սեմինարները, դիսպուտները, հարց ու պատասխանի երեկոները, «կլոր սեղանի» շուրջը կազմակերպվող զրույցները, պարապմունքները ժողովրդական համալսարաններում, ակտիվի մշտապես գործող դպրոցները: Ընդսմին, այդպիսի ձևերի թիվն աճում է, դրանք գնալով ավելի ժողովրդականություն են վայելում կոմունիստների շրջանում: Այսպես, եթե անցած ուսումնական տարում ընդամենը 104 տեսական կոնֆերանս էր անցկացվել, ապա այս տարի կազմակերպվեց արդեն 222-ը:

Հանրահայտ է, որ կուսակցական ժողովները կոմունիստների դաստիարակման դպրոց են: Այն պայմանով, իհարկե, եթե դրանք լավ են նախապատրաստված, եթե քննարկվում են սկզբունքային հարցեր, եթե լուրջ քննադատություն և ինքնաքննադատություն է ծավալված: Գաղտնիք չէ, որ այդ պայմանը երբեմն խախտվում է: Դեռ ոչ վաղ ժամանակներում կուսակցական ժողովների օրակարգերում գերակշռում էին տնտեսական գործունեության հարցերը: Որքան էլ որ դրանք կարևոր են ինքնըստինքյան, բայց միայն դրանց քննարկումը միակողմանի կերպով է դաստիարակում կոմունիստներին: Այժմ դրությունը փոխվում է: Շատ սկզբնական կազմակերպություններում բազմակողմանիորեն քննարկվում են կոմունիստների ավանգարդային դերի, նրանց կողմից տեսության ուսումնասիրման, հանձնարարությունների կատարման, քաղաքական ու կազմակերպչական աշխատանքում ունեցած մասնակցության և այլ հարցեր: Դրանք կուսակցության անդամներին դաստիարակում, դարձնում են իսկական քաղաքական մարտիկներ:

Կարծում եմ, որ առաջիկայում ևս անհրաժեշտ է ընդլայնել կուսակցական ժողովների թեմատիկան: Կուսակցության անդամի գաղափարական կայուն հայացքների ձևավորումն անհնարին է առանց քաղաքական պրոբլեմների, տեսական սուր հարցերի, կոմունիստների համատեղ, կոլեկտիվ քննարկման: Կոմունիստի գաղափարական համոզվածությունն ամրանում է այն ժամանակ, երբ նրա բոլոր արարքների, նրա ամբողջ վարքագծի նկատմամբ բարձր պահանջկոտության ու սկզբունքայնության իրադրություն է ստեղծված: Հանրապետության բազմաթիվ կուսակցական կազմակերպությունների պրակտիկան հաստատում է, որ կուսակցության որոշ անդամների ոչ-բավականաչափ գաղափարական կոփվածությունն այն հետևանքն է ունենում, որ նրանք թույլ են տալիս միանգամայն հակահասարակական, ամորալ արարքներ, չարաշահում են պաշտոնական դիրքը, անփույթ են կատարում իրենց պարտականությունները, դրսևորում են հասարակական անտարբերություն ու պասսիվություն:

Կոմունիստների ուժը նրանց գաղափարական համոզվածության մեջ է: Եվ նրանց գլխավոր զենքը Մարքսի, Էնգելսի, Լենինի հեղափոխական վսեմ ուսմունքն է, որը ծառայում է աշխարհի վերափոխման գործին, պատասխան է տալիս մարդկության զարգացման կարևորագույն հարցերին, մոբիլիզացնում է բոլոր աշխատավորներին կառուցելու կոմունիստական լուսաշող հասարակարգը:

Սովետական մարդկանց ստեղծարար գործունեության վսեմ իմաստը բացահայտված է Հոկտեմբերի 50-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում. «Կառուցելով գործարաններ ու ֆաբրիկաներ, ամրապնդելով կոլտնտեսություններն ու սովխոզները, կատարելագործելով հասարակական հարաբերությունները, բազմապատկելով հոգևոր հարստությունները, մենք ստեղծում ենք կոմունիստական իդեալներին նվիրված գիտակից և ազատ աշխատավորների բարձր կազմակերպված հասարակություն»:

Սովետական ժողովուրդն ավելի քան երբեք վստահ է իր ուժերին, իր գործին: Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նա կհաղթահարի բոլոր խոչընդոտները, կդիմանա բոլոր փորձություններին և կկառուցի կոմունիզմ:

«КОММУНИСТ»
ՍՄԿԿ Կենտկոմի տեսական-քաղաքական ամսագիր, № 11, 1967 թ.:



# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

Մ. ԱԴՈՆՑ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

*Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը մարդկային հասարակության պատմության նոր դարագլխի սկիզբը հանդիսացավ: Այն աշխատավոր զանգվածներին շնորհելով քաղաքական ազատություն, նրանց դարձրեց արտադրության միջոցների և երկրի տերը, պայմաններ ստեղծեց բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակի անկաշկանդ բարձրացման համար:*

*Սոցիալիզմը կապիտալիզմի նկատմամբ իր մեծագույն առավելությունները դրսևորում է ո՛չ միայն արտադրաուժերի զարգացման բարձր տեմպերով, այլև բնակչության բարեկեցության անընդհատ բարձրացմամբ:*

*Միայն չինական դոգմատիկներն են, որ չեն ուզում հասկանալ, թե կապիտալիզմի դեմ մղվող խաղաղ տնտեսական մրցակցությունում սոցիալիզմը վերջնական հաղթանակի կհասնի աշխատանքի արտադրողականության և բնակչության բարեկեցության ավելի բարձր մակարդակի ապահովմամբ:*

*Բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակի սիստեմատիկ բարձրացումը բխում է սոցիալիզմի բուն էությունից, նրա հիմնական տնտեսական օրենքից: Այն հասարակարգում, որում արտադրության միջոցները պատկանում են իրենց՝ աշխատավորներին, արտադրությունը ծառայում է բնակչության բարեկեցության բարձրացման նպատակին, որը ընթացիկ, սեզոնային գործ չէ: Որպեսզի մարդկանց նյութական ու կուլտուրական մակարդակը բարձրանա ո՛չ միայն ընթացիկ, այլև հետագա տարիներին, դրա համար ամբողջ ազգային եկամուտը չպետք է օգտագործել անձնական սպառման համար, անհրաժեշտ է նրա մի մասը կուտակել, այսինքն՝ օգտագործել հասարակական արտադրության ընդլայնման համար:*

*Տվյալ ժամանակամիջոցում կուտակման ֆոնդի աճը կատարվում է սպառման ֆոնդի նվազեցման հաշվին և հակառակը: Դրանից հետևում է, որ ազգային եկամտի օգտագործման ժամանակ սպառման և կուտակման ֆոնդերի միջև կարող են առաջանալ որոշ անհամամասնություններ: Մեր պլանավորող մարմինները կուտակման և սպառման ֆոնդերի միջև այնպիսի օպտիմալ հարաբերակցություններ պետք է սահմանեն, որոնք միաժամանակ ապահովեն բնակչության բարեկեցության սիստեմատիկ բարձրացումը և սոցիալիստական արտադրության անընդհատ աճն ու կատարելագործումը:*

Կապիտալիզմի պայմաններում տեխնիկայի զարգացման ու աշխատանքի արտադրողականության բարձրացման և աշխատավարձի մակարդակի միջև անմիջական կապ չկա։ Այնտեղ արտադրամիջոցները պատկանում են կապիտալիստներին և աշխատանքի արտադրողականության բարձրացման պտուղներն ամբողջովին վայելում են շահագործողները։ Գնալով ուժեղանում է պրոլետարիատի հարաբերական աղքատացումը, իսկ երբեմն էլ տեղի է ունենում բացարձակ աղքատացում։

Այսպիսով, եթե կապիտալիստական հասարակարգում աշխատավարձի բարձր սահմանն ապրուստի նվազագույն արժեքն է, ապա սոցիալիստական հասարակարգում վերջինս աշխատավարձի մակարդակի ստորին սահմանն է։ Եթե կապիտալիզմի պայմաններում աշխատանքի արտադրողականության բարձրացումից օգտվում են միայն շահագործողները, ապա սոցիալիստական հասարակարգում այն օգուտ է բերում թե՛ ամբողջ հասարակությանը և թե յուրաքանչյուր առանձին աշխատողի. որքան աշխատանքի արտադրողականությունը աճի, այնքան բնակչության եկամուտները «ապրուստի նվազագույն արժեքից» բարձր կլինեն և ժողովրդի պահանջմունքներն ավելի լրիվ կբավարարվեն։



Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո անցած կեսդարյա փորձն ապացուցեց, որ միայն սոցիալիստական կարգերում է արտադրությունն ի սպաս դրվում ժողովրդի բարեկեցության բարձրացմանը։

Երբ խոսքը վերաբերում է մեր երկրի տնտեսական զարգացման և բնակչության բարեկեցության արդի մակարդակին, անհրաժեշտ է հաշվի առնել, թե այդ բնագավառներում ինչպիսի վիճակ գոյություն ուներ մինչև սոցիալիստական հեղափոխության հաղթանակը և ինչպիսի ժառանգություն ստացանք հին կարգերից։

«Ռուսաստանը,— գրել է Լենինը,— մնում է անհավատալիորեն, չտեսնըված կերպով հետամնաց երկիր, աղքատ ու կիսավայրենի, որը սարքավորված է ժամանակակից արտադրության միջոցներով չորս անգամ ավելի վատ, քան Անգլիան, հինգ անգամ ավելի վատ, քան Գերմանիան, տասն անգամ ավելի վատ, քան Ամերիկան» (Երկեր, հ. 19, էջ 353—354)։

1913 թվականին Ռուսաստանի բնակչության մեկ շնչին ընկնում էր 94 ռուբլու ազգային եկամուտ, որը 7,2 անգամ պակաս էր ԱՄՆ-ից, Անգլիայից՝ 5, Գերմանիայից՝ 3 անգամ։ Նույն թվականին Ռուսաստանի արդյունաբերության մեկ բանվորի միջին ամսական աշխատավարձը կազմել է 22 ռուբլի։

Չափազանց վատ էին բանվորների բնակարանային պայմանները։ 1913 թվականին Ռուսաստանի քաղաքային բնակչության մեկ շնչին 4,5 քառակուսի մետր բնակելի տարածություն էր ընկնում։ Բնակարանային ֆոնդը խիստ անհավասար էր բաշխված բնակչության տարբեր խավերի միջև։ Այսպես, Պետերբուրգում բնակչության վերին խավերի մեկ շնչին 10—12 անգամ ավելի շատ բնակելի տարածություն էր հասնում, քան բանվորների ընտանիքի մեկ շնչին (ընդամենը 2—2,5 քառակուսի մետր)։ Բանվորների զգալի մասը բնակվում էր գործարանային հանրակացարաններում, որոնք զուրկ էին տարրական հարմարություններից։



Ավելի վատ էր աշխատավոր գյուղացիության վիճակը։ Գյուղացիական տնտեսությունների 30 տոկոսը չունեին բանող անասուններ։ Պատերազմի նախօրյակին չքավորները կազմում էին գյուղացիական տնտեսությունների մոտ 65 տոկոսը։ Հաճախակի կրկնվող անբերրիության տարիներին հարյուր հազարավոր գյուղացիներ սովից ու համաճարակներից մահանում էին։

Ցարական Ռուսաստանի բնակչության կուլտուրական մակարդակը ցածր էր։ 1897 թվականի մարդահամարի տվյալներով, երկրի 9—49 տարեկան բնակչության 74 տոկոսն անգրագետ էր։ Բնակչության բժշկական սպասարկման գործը ևս խղճուկ վիճակում էր։

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո սովետական իշխանությունը աշխատավորության կյանքի բարելավման նպատակով մի ամբողջ շարք միջոցառումներ կիրառեց։

Օրենք ընդունվեց 8-ժամյա աշխատանքային օր սահմանելու մասին։ 1913 թվականին Ռուսաստանի արդյունաբերության մեջ աշխատօրվա միջին տևողությունը կազմում էր 10 ժամ։ Հայաստանի որոշ ձեռնարկություններում բանվորներն աշխատում էին օրական 11—12 ժամ։

Աշխատօրվա կրճատման հետ մեկտեղ օրենք ընդունվեց աշխատանքի անվտանգության, ձեռնարկություններում բանվորներից գանձվող տուգանքների վերացման, սոցիալական ապահովագրման մասին և այլն։

Արմատական փոփոխություններ կատարվեցին նաև աշխատավոր գյուղացու կյանքում։ Կալվածատիրական հողատիրության վերացման և հողի ազգայնացման մասին դեկրետ ընդունվեց։ Հողը հանձնվեց գյուղացիությանը և վերջ գտավ չքավոր տնտեսությունների սակավահողությունը։ Գյուղացին ազատվեց խոշոր հողատերերին տրվող վճարումներից. Նշանակալի չափով կրճատվեց պետական հարկը։

Ժողովրդական տնտեսության վերականգնման տարիներին, երբ ամեն տարի գործարկվում էին մեծ թվով ձեռնարկություններ, գործազուրկների թիվը գնալով նվազում էր։ 1928 թվականի վերջերից ՍՍՀՄ-ում ամբողջովին և վերջնականապես վերացվեց գործազրկությունը։

Երկրի ինդուստրացումը և գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը կայուն ու հուսալի հիմք ստեղծեցին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արագ զարգացման ու բնակչության բարեկեցության բարձրացման համար։

Տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունների և ՍՄԿԿ վարած ճիշտ քաղաքականության շնորհիվ պատմական շատ կարճ ժամանակամիջոցում վերացվեց մեր երկրի տնտեսական-տեխնիկական հետամնացությունը և Սովետական Միությունը դարձավ հզոր ինդուստրիալ տերություն։

1913 թվականի համեմատությամբ, մեր երկրի արդյունաբերության համախառն արտադրանքը 1966 թվականին ավելացավ 66 անգամ. քիմիական արդյունաբերությանը՝ 294, պողպատի արտադրությունը՝ 22,5, էլեկտրաէներգիայինը՝ 267, ցեմենտինը՝ 45, թեթև արդյունաբերության համախառն արտադրանքը՝ 16,2, սննդինը՝ 12,8, տրանսպորտի բեռնաշրջանառությունը՝ 23,1 անգամ։ Նույն ժամանակամիջոցում Հայաստանի արդյունաբերության արտադրանքն աճել է 119 անգամ։

1929—1966 թվականների ընթացքում ՍՍՀՄ արդյունաբերության ար-

տադրանքի միջին տարեկան աճի տեմպերը կազմել են 11,1, ԱՄՆ-ինը՝ 4,0, Անգլիայինն ու Ֆրանսիայինը՝ 2,5 տոկոս։

Արագ տեմպերով է զարգացել նաև ՍՍՀՄ ազգային եկամուտը։ 1913 թվականի համեմատությամբ, 1966 թվականին Սովետական Միության ազգային եկամուտն աճել է 34,3 անգամ։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից անցած 50 տարիներից 20-ը սովետական ժողովուրդը կորցրել է օտարերկրյա ինտերվենտների և հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող պատերազմներում՝ նրանց հասցրած ավերածությունները վերացնելու ու տնտեսությունը վերականգնելու նպատակով։ Եթե չլինեին այդ պատերազմները, ապա ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում Սովետական Միության նվաճումներն ավելի հոյակապ կլինեին, իսկ բնակչության բարեկեցության գծով մենք գերազանցած կլինեինք զարգացած կապիտալիստական երկրներին։

Սոցիալիստական հասարակարգի ազգային եկամուտը ծառայում է բնակչության բարեկեցության բարելավման ու արտադրության ընդլայնման նպատակին։

Աշխատավորների կյանքի բարելավման գլխավոր ուղիներն են՝ բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացումը, կոլտնտեսականների եկամուտների ավելացումը, մանրածախ գների իջեցումը, հասարակական սպառման ֆոնդերի աճը, աշխատօրվա տևողության կրճատումը, աշխատանքի պայմանների լավացումը և այլն։

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում բնակչության եկամուտների ավելացման հիմնական միջոցը ըստ աշխատանքի վարձատրության սկզբունքի հետևողական կիրառումն է։

ՍՄԿԿ Կենտկոմը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIII համագումարին տված Կենտկոմի հաշվետվության մեջ,— գտնում է, որ աշխատավորների եկամուտների ավելացման գլխավոր ուղղությունը պետք է լինի բանվորների և ծառայողների դրամական աշխատավարձի աճը, աշխատանքի վարձատրության ավելացումը կոլտնտեսությունների հասարակական տնտեսության մեջ։

Մինչև կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ավարտը ըստ աշխատանքի վարձատրությունը խոշոր դեր է ունենալու աշխատանքի արտադրողականության, մարդկանց կուլտուրական-տեխնիկական մակարդակի բարձրացման գործում, նպաստելու է մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացմանը։

Բանվորների և ծառայողների եկամուտների գլխավոր աղբյուրն աշխատավարձն է։ 1966 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ՍՍՀՄ արդյունաբերության ու շինարարության մեկ աշխատողի աշխատավարձն (առանց հարկերի, ավելացրած հասարակական ֆոնդերից ստացվող եկամուտները) աճել է 4,6 անգամ։ Իսկ եթե հաշվի առնենք նաև գործազրկության վերացումն ու աշխատօրվա տևողության կրճատումը, այն դեպքում (նույն ժամանակամիջոցում) արդյունաբերության ու շինարարության մեկ աշխատողի եկամուտների աճը կկազմի 6,6 անգամ։

Նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել են կոլտնտեսականների եկամուտները։ 1966 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, գյուղատնտեսության մեկ աշխատողի տարեկան դրամական և բնեղեն եկամուտները (հանած հարկերն ու այլ վճարումները) ավելացել են



6,4 անգամ, իսկ եթե հաշվի առնենք կենսաթոշակները, զեղչերը և հասարակական սպառման ֆոնդերից ստացվող եկամուտները, այդ կաճի 8,5 անգամ։

Բանվորների և ծառայողների միջին ամսական դրամական աշխատավարձը 1966 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, աճել է 3 անգամ, իսկ 1960 թ. համեմատությամբ՝ 23,7 տոկոսով։ 1966 թվականին բանվորների և ծառայողների միջին ամսական դրամական աշխատավարձը կազմեց 99 ռուբլի, 1959 թ. 79 ռուբլու դիմաց։

Բանվորների և ծառայողների դրամական աշխատավարձի բարձրացումը ճշտությամբ չի արտացոլում նրանց ռեալ եկամուտների աճը։ Բացի դրամական աշխատավարձից, աշխատավորների ռեալ եկամուտների վրա ազդում են նաև գների մակարդակը, հարկերի չափը, զեղչերը, հասարակական սպառման ֆոնդի չափը, բնակչության զբաղվածության աստիճանը, իսկ կոլտնտեսականների համար նաև կոլտնտեսությունների հասարակական տնտեսությունից ու անամերձից ստացված դրամական ու բնեղեն եկամուտները։

Դրամական աշխատավարձի բարձրացման դեպքում շահում են բանվորների ու ծառայողների միայն այն խմբերը, որոնց անվանական աշխատավարձն ավելացել է, իսկ գների իջեցումից շահում է ողջ բնակչությունը։ 1947—1954 թվականներին բնակչության դրամական եկամուտների ավելացման գլխավոր մեթոդը գների իջեցումն էր։ Այդ ժամանակամիջոցում ժողովրդական սպառման առարկաների գները իջան 2,4 անգամ։ 1955 թվականից սկսած բնակչության եկամուտների ավելացման գլխավոր եղանակը դրամական աշխատավարձի բարձրացումն է։

Տնտեսական շինարարության տարբեր ժամանակաշրջաններում, երկրի առջև կանգնած խնդիրներին համապատասխան, հիմնականում կիրառվում են բնակչության եկամուտների ավելացման նշված եղանակներից որևէ մեկը։ 50-ական թվականների կեսերից սկսած աշխատավարձի մակարդակի չհիմնավորված մեծ տարբերությունների վերացման և նվազ ապահովություն ունեցող բանվորների և ծառայողների եկամուտների ավելացման նպատակով գլխավորապես կիրառվում է դրամական աշխատավարձի բարձրացման մեթոդը։

1956—1961 թվականներին մեծ ձեռնարկումներ անցկացվեցին աշխատավարձի կարգավորման գծով։ Վերացվեց տարիֆային ցանցերի ու դրույքների եղած մեծ խայտաբղետությունը, նվազեցվեց բարձր և ցածր տարիֆային կարգերի դրույքների տարբերությունը։ Միաժամանակ ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում բարձրացվեց աշխատավարձը, առաջին հերթին ցածր ստացողներինը։ Աշխատավարձի բարձրացման շնորհիվ 1957—1961 թվականներին մինչև 60 ռուբլի աշխատավարձ ստացողների թիվը կրճատվեց 2,4 անգամ։

1964 թվականին բարձրացվեց բնակչությանը սպասարկող մի շարք ճյուղերի աշխատողների աշխատավարձը հետևյալ չափերով. լուսավորության բնագավառի աշխատավորներինը, միջին հաշվով, բարձրացավ 26 տոկոսով, առողջապահությանը՝ 24, բնակարանային ու կոմունալ տնտեսությանը՝ 15, առևտրի և հասարակական սննդինը՝ 19 տոկոսով։ 1965 թվականին նորից բարձրացվեց ժողովրդական տնտեսության մի շարք այլ ճյուղերի, իսկ 1964 և 1965 թվականներին՝ 20 միլիոն մարդու աշխատավարձը։

Բնակչության ռեալ եկամուտների ավելացման միջոցներից մեկն էլ հարկերի կրճատումն է։ 1953 թվականին գյուղատնտեսական հարկի չափերը

կրճատվեցին ավելի քան 2 անգամ: 1958 թվականից անզավակության հարկից ազատվեցին երեխա ունեցողները, ինչպես նաև երեխա չունեցող միայնակ կանայք:

Սոցիալիստական հասարակարգում բնակչությունն իր եկամուտների մի մասն էլ ստանում է հասարակական սպառման ֆոնդերից: Դրանց բաշխումը կատարվում է յուրահատուկ ձևով, որը համապատասխանում է սոցիալիստական տնտեսակարգի բնույթին: Ըստ աշխատանքի սոցիալիստական բաշխումը որոշ անհավասարություն է հարուցում սպառման բնագավառում: Որակյալ և ոչ որակյալ աշխատողների ընտանիքների ըստ աշխատանքի ստացվող եկամուտները տարբեր են: Այլ հավասար պայմաններում, տարբեր են նաև բազմանդամ և ոչ բազմանդամ ընտանիքների մեկ շնչին ընկնող աշխատանքային եկամուտները: Հասարակական սպառման ֆոնդերի բաշխման յուրահատուկ ձևը մեղմացնում է անհավասար տնտեսական պայմաններ ունեցող ընտանիքների եկամուտների տարբերությունները:

1966 թվականին հասարակական սպառման ֆոնդերը կազմել են 45,2 մլն. ռուբլի: Այդ ֆոնդերի հաշվին իրականացվում է բնակչության անվճար բուժսպասարկումը, կրթությունը և կադրերի որակավորման բարձրացումը, կենսաթոշակների, թոշակների և նպաստների վճարումը, աշխատավարձի պահպանումը հերթական արձակուրդների ժամանակ, սանատորիաների և հանգստյան տների ուղեգրերի և այլ սպասարկումների գների զեղչը:

Եթե գների զեղչ չկատարվեր, այն դեպքում բնակարանավարձի տարիֆները պետք է 3 անգամ բարձրացվեին, նախադպրոցական հիմնարկներում երեխաների խնամքի համար արվող վճարումները կավելանային 5—6, սանատորիաների և հանգստյան տների ուղեգրերի գները 2 անգամ և այլն:

Հասարակական սպառման գների $1/3$ մասն օգտագործվում է ժողովրդական կրթության համար: 1966 թվականին հանրակրթական դպրոցներում, բուհերում և այլ ուսումնական հաստատություններում սովորողների թիվը կազմել է 72,6 միլիոն մարդ: Եթե ցարական Ռուսաստանը ժողովրդական կրթության վրա բնակչության մեկ շնչի հաշվով ծախսում էր 1 ռուբլի 70 կոպեկ, ապա այժմ ծախսվում է 57 ռուբլի, այսինքն՝ 33 անգամ ավելի: 1966 թվականի վերջին մեր երկիրն ուներ 210 հազար հանրակրթական դպրոց, 2,5 միլիոն ուսուցիչներով: Բարձրագույն ուսումնական հաստատությունների թիվը հասնում է 767-ի, իսկ ուսանողներինը՝ 4,1 միլիոնի:

Ուսուցչական կազմի մեծությամբ Սովետական Միությունն առաջ է անցել զարգացած կապիտալիստական երկրներից: Այսպես, յուրաքանչյուր 1000 բնակչին ՍՍՀՄ-ում ընկնում է 10 ուսուցիչ, իսկ Անգլիայում՝ 6, Իտալիայում՝ 5: Կապիտալիստական շատ երկրներում դպրոցական հասակի երեխաների նշանակալի մասը չի սովորում: Թուրքիայում բնակչության 65 տոկոսն անգրագետ է, Պորտուգալիայում՝ 40, Իսպանիայում՝ 17, Հունաստանում՝ 25 տոկոսը:

Հասարակական սպառման ֆոնդերի մի կարևորագույն մասը ծախսվում է ծերերին և անաշխատունակներին թոշակավորելու նպատակով: Ցարական Ռուսաստանում սոցիալական ապահովագրությունը կիրառվել է միայն 1912 թվականից, որն ընդգրկում էր բանվորների 16 տոկոսը: Այն ժամանակ կենսաթոշակներ տրվում էր միայն աշխատանքի հաշմանդամներին:

Հոկտեմբերյան հեղափոխությունն արմատապես փոխեց նաև սոցիալական ապահովագրության գործը: Նախ՝ սոցիալական ապահովագրության



ֆոնդը կազմակերպվեց պետական միջոցներից, ընդգրկելով բոլոր բանվորներին ու ծառայողներին: Եթե ՍՍՀՄ-ում կենսաթոշակի իրավունք են ստանում կանայք 55-ից, տղամարդիկ 60 տարեկանից, ապա կապիտալիստական երկրներում այդ իրավունքը տրվում է 65—70 տարեկանին: Այնտեղ սոցիալական ապահովագրության ֆոնդեր ստեղծվում են բանվորների աշխատավարձից կատարվող պահումների հաշվին:

Սկսած 1965 թվականից ՍՍՀՄ-ում սոցիալական ապահովագրության մեջ ընդգրկվել են նաև կոլտնտեսականները: Տարեցտարի աճում են սոցիալական ապահովագրության ֆոնդերը, որոնք 1955 թվականին կազմում էին 3 մլրդ., 1960-ին՝ 7,2 մլրդ., իսկ 1965-ին՝ 11 մլրդ. ռուբլի: Այժմ մեր երկրում 34 միլիոն մարդ պետությունից կենսաթոշակ են ստանում:

ՍՍՀՄ-ում բնակչությունը ստանում է ձրի բժշկական օգնություն: Երկրում տարածված է հիվանդանոցների, ամբուլատորիաների, առողջարանների, հանգստյան տների լայն ցանց: Աշխատավորների զգալի մասը ստանում է անվճար կամ զեղչով առողջարանների ու հանգստյան տների ուղեգրեր: Այժմ Միությունում գործում են 578 հազար բժիշկ, իսկ առողջապահության ցանցի բոլոր աշխատողներն ավելի քան 4 միլիոն են: Եթե մեզ մոտ յուրաքանչյուր 10000 բնակչին ընկնում է 25 բժիշկ, ապա ԱՄՆ-ում՝ 19 բժիշկ, Անգլիայում՝ 15, Ֆրանսիայում՝ 16, Իրանում՝ 3,7, Թուրքիայում՝ 3,3 բժիշկ:

Սովետական պետությունը հսկայական գումարներ է ծախսել բնակարանային խնդրի լուծման համար: 1918—1967 թվականներին ՍՍՀՄ-ում կառուցվել է 1366,9 մլն. քառակուսի մետր բնակելի տարածություն: Դրանից բացի կոլտնտեսություններն ու կոլտնտեսականները կառուցել են 21 մլն. բնակելի տուն: Վերջին տասը տարում երկրի բնակչության գրեթե կեսը նոր բնակարաններ են ստացել կամ բարելավել իրենց բնակարանային պայմանները:

Բնակչության սպառման աճի կարևորագույն ցուցանիշներից մեկն էլ ապրանքաշրջանառության և վճարովի սպասարկումների ծավալի մեծացումն ու դրանց կառուցվածքի բարելավումն է: 1966 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ապրանքաշրջանառության ծավալը (ներառյալ հասարակական սնունդը), համեմատելի գներով, աճել է 4,7 անգամ: 1940 թվականի համեմատությամբ, 1960 թվականին հացի ու բուլկեղենի վաճառքն ավելացել է 2,1, ոգելից խմիչքներինը՝ 3,1, մսինը՝ 7,4, թարմ կաթնամթերքներինը՝ 9,2, ձվինը՝ 6,9, կենդանական յուղինը՝ 5,1 անգամ: Այսպիսով, բարձրարժեք սննդամթերքների վաճառքն ավելի արագ տեմպերով է աճել: Նույնպիսի պատկեր գոյություն ունի արդյունաբերական ապրանքների վաճառքի բնագավառում: Նշված ժամանակամիջոցում բրդի գործվածքեղենի վաճառքը ավելացել է 4,4, մետաքսի գործվածքեղենինը՝ 12, տրիկոտաժեղենինը՝ 10, ժամացույցներինը՝ 9,5, ռադիոընդունիչներինը՝ 32, հեծանիվներինը՝ 20 անգամ:

Կենսամթերքների և արդյունաբերական ապրանքների վաճառքի այդպիսի մեծ աճը վկայում է բնակչության նյութական մակարդակի նշանակալի բարձրացումը: Բարելավվել է նաև բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը:

Ավելի քան հոյակապ են սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման հեռանկարները: Ընթացիկ հնգամյակի կարևորագույն խնդիրը բնակչության կյանքի հետագա բարելավումն է, որը նշանակալի չափով որոշում է ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերը և նրա ճյուղային կառուցվածքում նախատեսվող փոփոխությունները:

Նախորդ ժամանակաշրջանի համեմատությամբ, ընթացիկ հնգամյակը նախատեսում է գյուղատնտեսության զարգացման ավելի բարձր տեմպեր, որը կենսական նշանակություն ունի ժողովրդի համար։ Հնգամյակը նաև նախատեսում է արդյունաբերության «Բ» խմբի զարգացման տեմպերը մոտեցնել «Ա» խմբին։ Եթե 1960—1965 թվականներին ժողովրդական սպառման առարկաների արտադրության աճի միջին տարեկան տեմպերը կազմել են 6,3 տոկոս, ապա ընթացիկ հնգամյակը նախատեսում է արդյունաբերության «Բ» խմբի արտադրանքի միջին տարեկան աճ՝ 7,4—7,9 տոկոսով։

Այս տվյալները ցույց են տալիս, որ ընթացիկ հնգամյակի կարևորագույն խնդիրը ժողովրդի կյանքի հետագա բարելավումն է։ Սրանք չեն ժխտում նույնիսկ բուրժուական շատ մտածողներ։ Ամերիկյան «Վաշինգտոն իվնինգ ստար» թերթը Ռուսաստանում հրանոթի փոխարեն յուղ խորագիրը կրող հոդվածում նշում է. «Ըստ երևույթին, Կրեմլը լցված է վճռականությամբ իրականացնելու տնտեսական ծրագիրը, որն առաջնահերթ է համարում յուղը, քան հրանոթը...»։

Հնգամյակի ընթացքում ՍՍՀՄ հասարակական ամբողջական արտադրանքը կաճի 40,3, իսկ ազգային եկամուտը՝ 38—41 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը հանդիսանալու է հասարակական արդյունքի և ազգային եկամտի աճման վճռական գործոնը։ 1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ կբարձրանա 33—35, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 40—45 տոկոսով։

Ժողովրդական տնտեսության զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա նշանակալի չափերով կավելանան բնակչության իրական եկամուտները։ Հնգամյա պլանով նախատեսված է բանվորների ու ծառայողների աշխատավարձը բարձրացնել 20 տոկոսով. 1970 թվականին մեկ աշխատողի միջին ամսական աշխատավարձը կհասնի 115 ռուբլու, իսկ եթե հաշվի առնենք նաև հասարակական սպառման ֆոնդերից կատարվող վճարումներն ու զեղչերը, ապա այն կկազմի 155 ռուբլի։

Տնտեսական նոր ռեֆորմը, անհամեմատ, բարձրացնում է նյութական շահագրգռվածության դերը արտադրության զարգացման գործում։ Արդյունաբերության բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացումը հիմնականում որոշվում է տվյալ ձեռնարկության աշխատանքի արդյունքներով՝ աշխատանքի արտադրողականության մակարդակով, արտադրանքի որակի բարելավմամբ, շահութաբերությամբ և այլն։ Պլանավորման և նյութական խթանման նոր կարգն աշխատանքի վարձատրության բնագավառում առավելություններ է տալիս յուրաքանչյուր ձեռնարկության այն բանվորներին ու ինժեներներին, որոնք ավելի մեծ ավանդ են մուծում արտադրության զարգացման գործում։

Ընթացիկ հնգամյակում բանվորների ու ծառայողների աշխատավարձի նվազագույն դրույքը բարձրացվելու է մինչև 60 ռուբլի, միաժամանակ բարձրացվելու են աշխատավարձի միջին դրույքները։ Կոլտնտեսությունների հասարակական տնտեսությունից ստացվող եկամուտներն ավելանալու են 35—40 տոկոսով։ Բոլոր կոլտնտեսություններն անցնելու են աշխատանքի երաշխավորված վարձատրության կարգին, ըստ որում, կոլտնտեսություններում կիրառվող աշխատանքի նորմաները և վարձագները հավասարեցվելու են համապատասխան շրջանների սովխոզներում գոյություն ունեցող աշխատանքի



նորմաներին և վարձագներին։ Նշանակալի չափերով ավելանալու են նաև այն եկամուտները, որոնք բնակչությունը ստանում է հասարակական սպառման ֆոնդերից։ 1970 թվականին, 1960-ի համեմատությամբ, հասարակական սպառման ֆոնդերն աճելու են 40 տոկոսով։

Հնգամյակի տարիներին կիրականանա հարկերի վերացման և իջեցման նախատեսված ծրագիրը և արտադրանքի ավելացման ու աշխատանքի արտադրողականության բարձրացման զուգընթաց կիջեցվեն ապրանքների գները։ Այդ ամենի շնորհիվ բնակչության մեկ շնչին ընկնող իրական եկամուտները հնգամյակի ընթացքում կաճեն 30 տոկոսով։

Հնգամյակի կարևոր սոցիալ-տնտեսական ձեռնարկումներից մեկը հնգօրյա աշխատանքային շաբաթի (երկու հանգստյան օրով) անցումն է։ 41 ժամյա աշխատանքային շաբաթը կավելացնի ոչ աշխատաժամանակը, որը, Մարքսի խոսքերով ասած, հասարակական հարստության գլխավոր ցուցանիշն է։ Նոր պայմաններում հնարավոր կլինի ավելի լավ կազմակերպել աշխատավորների հանգիստը և ավելի շատ ժամանակ օգտագործել նրանց բազմակողմանի զարգացման համար։ Հնգօրյա աշխատանքային շաբաթը միաժամանակ կնպաստի աշխատանքի արտադրողականության բարձրացմանն ու արտադրանքի ավելացմանը, քանի որ կկրճատվի աշխատանքային տեղի նախապատրաստման համար պահանջվող ժամանակը և սարքավորումների ընթացիկ նորոգումները գերազանցապես կկատարվեն ոչ աշխատանքային օրերին։

Հնգամյա պլանի մասին կուսակցության XXIII համագումարի ընդունած դիրեկտիվները նախատեսում են՝ բարելավել առևտուրը, բնակչության կենցաղային սպասարկումը, ընդլայնել ժողովրդական կրթության և առողջապահության ցանցը, մեծ չափով ծավալել բնակարանային շինարարությունը։ Բնակչության բարեկեցության բարձրացման գծով նախատեսումները կուսակցությունն ընդունում է որպես մինիմում։

Հնգամյակի առաջին տարվա արդյունքները ցույց տվին, որ մեծ հնարավորություններ կան կուսակցության XXIII համագումարի ընդունած առաջադրանքների գերակատարման համար։ Պլանավորման և նյութական խթանման նոր կարգը հնարավորություն կընձեռի վճռականորեն բարելավելու արդյունաբերության ցուցանիշները։

Ընթացիկ հնգամյակի առաջադրանքների կատարումն ու գերակատարումն ավելի կբարձրացնի մեր հայրենիքի տնտեսական հզորությունը, կբարելավի բնակչության կյանքի պայմանները և մի նոր խոշոր քայլ կհանդիսանա կոմունիստական հասարակարգի կառուցման ծրագրի իրականացման գործում։



# ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ԵՎ ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ

Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆ

Մեծ Հոկտեմբերը դրեց ճնշված ժողովուրդների ազատագրության դարաշրջանի սկիզբը։ Նա լիովին հաստատեց մարքսիստական այն անկյունաքարային դրույթը, որ պրոլետարիատը չի կարող ազատագրել իրեն, առանց ազատագրելու ճնշված ժողովուրդներին։ Ավելի քան հարյուր տարի առաջ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի առաջ քաշած «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մարտական կոչը մեծ Հոկտեմբերը լրացրեց «Բոլոր երկրների պրոլետարներ ու ճնշված ժողովուրդներ, միացե՛ք» նշանաբանով։ Փաստորեն Հոկտեմբերը այն բնագիծն էր, որտեղից սկսվեց ազգային-ազատագրական հեղափոխությունների ժամանակաշրջանը։

Պատմության մեջ երկար ժամանակ իմպերիալիստական պետություններն անողոքաբար կեղեքել են գաղութների ժողովուրդներին, նրանց պահել ստրկության վիճակում։ Կոնգոյում Բելգիայի կեսդարյա տիրապետության ժամանակաշրջանում բնակչությունը պակասեց մոտ երկու, իսկ Մադագասկարինը Ֆրանսիայի տիրապետության 60 տարվա ընթացքում՝ ավելի քան երկու անգամ։ Գաղութային երկրներում մարդիկ մեռնում էին սովից ու հիվանդություններից, չկային ապրելու ամենատարրական պայմաններ։ Գաղութային ամոթալի տիրապետությունը Հնդիկ ժողովրդին հասցրել էր սովի ու աղքատության։ Իր Հնդկաստանի հայտնագործումը գրքում Ջավահարլալ Ներուն գրում է. «Հնդկաստանում անգլիական տիրապետության հարյուր ութսուն տարիները եղել են միայն նրա երկարատև պատմության տխուր էջերը»։ Անգլիական տիրապետության միայն վերջին 50 տարիների ընթացքում Հնդկաստանում եղել են սովի 23 տարիներ։

Սովետական տնտեսագետների հաշվումներով գաղութային-վարչական օրգանների միջոցով իմպերիալիստները տարեկան յուրացրել են 15—20 միլիարդ դոլար։

Առաջին համաշխարհային պատերազմով և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով սկսվեց կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի առաջին էտապը։ Դրա բաղկացուցիչ մասը գաղութային սիստեմի ճգնաժամն էր։ Հատկանշական է, որ մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը գաղութային լուծը չէր թոթափել ոչ մի երկիր։ Հոկտեմբերով է սկսվում գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդների ազատագրական պայքարի նոր դարաշրջանը։



Ազգային-ազատագրական շարժման հաջողություններն անխզելիորեն կապված են Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հետ։ Հասկանալի է, որ առանց սովետական երկրի, առանց միջազգային բանվորական շարժման անհնարին կլինեին ազգային-ազատագրական շարժման հաջողությունները։ Չին ժողովրդի մեծ զավակ Սուն Յաթ-սենը գրել է. «Հոկտեմբերյան հեղափոխության հաջողությունը և իմպերիալիստական քաղաքականությունից հրաժարվելը մի իրադարձություն է, որը նմանը չունի մարդկության պատմության մեջ։ Ուստի, ռուսական հեղափոխության հաղթանակով Չինաստանի համար սկսվում է նոր կյանք»։ 1924 թվականին, Չինաստանում ՍՍՀՄ լիազոր ներկայացուցիչ Լ. Մ. Կարախանին նա գրում էր. «Արդեն հասել է Չինաստանում համաշխարհային իմպերիալիզմի դեմ բացահայտ պայքարի ժամանակը։ Այդ պայքարում ես դիմում եմ ձեր մեծ երկրին՝ խնդրելով բարեկամություն և օգնություն, որոնք կնպաստեն Չինաստանն ազատագրելու իմպերիալիզմի հզոր ճանկերից և վերականգնելու մեր քաղաքական ու տնտեսական անկախությունը»։

Հոկտեմբերյան հեղափոխության ազդեցության տակ ազգային-ազատագրական շարժումներ ծավալվեցին Ասիայի և Աֆրիկայի մի շարք երկրներում։ 1919 թվականին Եգիպտոսում տեղի ունեցավ ապստամբություն։ Երկրի մի շարք բնակավայրերում կազմակերպվեցին հեղափոխական իշխանության օրգաններ, որոնք կոչվում էին «սովետներ»։ 1921 թվականին Եգիպտոսի աշխատավոր մասսաները նորից ապստամբեցին անգլիական գաղութատերերի դեմ։ 1918—1922 թվականներին հեղափոխական, ազգային-ազատագրական շարժումները լայնորեն ծավալվեցին Հնդկաստանում։ Ֆրանս-իսպանական գաղութարարների դեմ 1921—1926 թվականներին հերոսական մարտեր մղեց Մարոկկոյի ժողովուրդը։ Ազատագրական շարժման ալիքները տարածվեցին Ինդոնեզիայում, Թունիսում, Ֆիլիպիններում և շատ ու շատ երկրներում։ 1919 թվականին անկախություն է ձեռք բերում Աֆղանստանը, իսկ 1921-ին՝ ժողովրդական հեղափոխությունը հաղթանակում է Մոնղոլիայում։ Հետագայում Մոնղոլիան ընթացավ զարգացման ոչ կապիտալիստական ուղիով և դարձավ սոցիալիստական երկիր։

Սովետական պետությունն այն պատվարն էր, որի վրա հենվեցին իմպերիալիզմի ու գաղութակալության դեմ պայքարող բոլոր ժողովուրդները։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երկրորդ էտապում ազգային-ազատագրական շարժումը նոր վերելք ապրեց։ Սկսվեցին գաղութային սիստեմի քայքայումն ու կործանումը։ Ճիշտ է, գաղութային սիստեմի քայքայումն ու փլուզումը սկսվեցին երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում, բայց այն լիակատար ծավալվեց հետպատերազմյան ժամանակաշրջանում։

Գաղութային սիստեմի քայքայումն ու կործանումը երկու հիմնական գործոնների հետևանք են։ Մեկը գաղութներում հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական շարժումն է, իսկ մյուսը՝ երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիզմի ու միլիտարիզմի ուժերի պարտությունն ու սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության աճի և ազդեցության հետևանքով ազգային-ազատագրական շարժումը հասավ իր զարգացման բարձրագույն աստիճանին։ ՍՄԿԿ ծրագրում նշված է. «Աշխարհն ապրում է ազգային-ազատագրական բուռն հեղափոխությունների դարաշրջան... Ազգային-ազատագրական հեղափո-

խությունների հզոր ալիքը սրբում-տանում է գաղութային սիստեմը, քայքայում իմպերիալիզմի հիմքերը»։

Պետք է նկատել, որ ժամանակակից ազգային-ազատագրական հեղափոխությունները մեծ չափով տարբերվում են XVIII—XIX և նույնիսկ XX դարերի բուրժուա-դեմոկրատական հեղափոխություններից։ Եթե բուրժուա-դեմոկրատական հեղափոխություններում ազգային հարցը ինքնակալության դեմ պայքարի բաղկացուցիչ մասն է, ապա ժամանակակից ազգային-ազատագրական հեղափոխություններում ազգային ազատագրման համար պայքարն իր սուր ծայրով ուղղված է ոչ միայն ներքին ռեակցիայի, այլև իմպերիալիզմի դեմ։ Այսպիսով, մեր ժամանակների ազգային-ազատագրական հեղափոխությունները դուրս են գալիս մեկ երկրի սահմաններից և ուղղվում միջազգային իմպերիալիզմի դեմ։ Այս հեղափոխությունները ո՛չ միայն լուծում են բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունների խնդիրները, այլև դուրս են գալիս դրանց շրջանակներից։ Արդի պայմաններում բնորոշն այն է, որ տեղի են ունենում ազգային-ազատագրական և սոցիալիստական հեղափոխությունների խնդիրների մերձեցում, իսկ որոշ դեպքերում նրանց միահյուսում։ Ստեղծվում են կոնկրետ նախադրյալներ ազգային-ազատագրական շարժումները սոցիալիստական հեղափոխության վերածելու համար։ Մեր ժամանակում այդ շարժումների բովանդակությունը շատ ավելի լայն է, քան մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը։

Արդի պայմաններում ազգային-ազատագրական շարժումը դարձել է համաշխարհային հեղափոխական պրոցեսի անբաժանելի մասը, նրա շարժիչ ուժերից մեկը։ Այդ շարժման առջև դրված են ոչ միայն համազգային, այլև կոնկրետ սոցիալական խնդիրներ։ Այս կապակցությամբ բացառիկ արդիականություն ունեն Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ... համաշխարհային հեղափոխության ապագա վճռական ճակատամարտերում երկրագնդի բնակչության մեծամասնության շարժումը, որ սկզբում ուղղված էր ազատագրության նպատակին, կշրջվի կապիտալիզմի ու իմպերիալիզմի դեմ և, գուցե, շատ ավելի մեծ հեղափոխական դեր խաղա, քան մենք սպասում էինք» (Երկեր, հ. 32, էջ 622)։

Ազգային-ազատագրական շարժումն իր շարժիչ ուժով խորապես դեմոկրատական է։ Նրան մասնակցում են ժողովրդի գրեթե բոլոր խավերը։ Դա հնարավորություն է ընձեռում բանվոր դասակարգին, գյուղացիությանը և հեղափոխական ինտելիգենցիային առաջ քաշելու և լուծելու ինչպես ազգային, այնպես էլ սոցիալական ազատագրության շատ պրոբլեմներ։ Այստեղից էլ ակնառու են դառնում ազգային-ազատագրական շարժման առանձնահատկությունները։

Պետք է նկատի ունենալ, որ ժողովուրդների ազատագրական շարժումը մի շարք երկրներում ընթանում է նացիոնալիզմի դրոշի ներքո։ Այստեղ կարևոր է կոմունիստական կուսակցությունների վերաբերմունքը նացիոնալիզմի նկատմամբ։ Մարքսիզմ-լենինիզմը տարբերություն է դնում ճնշված և ճնշող ազգերի նացիոնալիզմի միջև։ Նա ելնում է այն բանից, որ ճնշված ազգի նացիոնալիզմի մեջ կա համադեմոկրատական բովանդակություն, որը պատմական որոշ շրջանում արդարացվում է այնքանով, որքանով այն ուղղված է ճնշման դեմ։ Կոմունիստական և բանվորական կուսակցությունները պաշտպանում են նացիոնալիզմի նման բովանդակությունը, որովհետև նրա նպատակը ճնշված ժողովուրդներին իմպերիալիզմի տիրապետությունից ազա-



տագրելն ու ազգային անկախություն հաստատելն է։ Ճնշված ազգի նացիոնալիզմն ունի նաև մի այլ կողմ, որն արտահայտում է տվյալ երկրի շահագործող վերնախավի գաղափարախոսությունն ու շահերը։ Այս կողմը չեն պաշտպանում կոմունիստական կուսակցությունները։

Ազգային-ազատագրական հեղափոխությունների հաղթանակով տեղի է ունեցել գաղութային սիստեմի փլուզում։ Հիշենք, որ մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը գաղութային տիրապետության տակ էր աշխարհի տերիտորիայի 31,2 և բնակչության 30,6 տոկոսը։ Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին Ասիայի և Աֆրիկայի անկախ պետությունների թիվը ընդամենը 12 էր։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո կիսագաղութների բնակչության հետ միասին իմպերիալիզմի գաղութային լծից ազատագրվել է մեկ միլիարդ 500 միլիոն մարդ, որը կազմում է երկրագնդի բնակչության երկու երրորդը։ Գաղութային կապանքների մեջ է մնացել երկրագնդի տերիտորիայի միայն 5 տոկոսը, որտեղ բնակվում է մոտ 30 միլիոն մարդ, այսինքն՝ աշխարհի բնակչության մոտ մեկ տոկոսը։ 1960 թվականից հետո ազգային անկախություն նվաճեցին 20-ից ավելի երկրների ժողովուրդներ։ Այժմ ազատագրված են ավելի քան 70 երկրներ։ Կարևորն այն է, որ ազատագրված մի շարք տերիտորիաներ մտել են ազգային անկախություն ձեռք բերած պետությունների կազմի մեջ (օրինակ՝ Արևմտյան Իրիանը միացել է Ինդոնեզիային, Գոան՝ Հնդկաստանին և այլն)։ Փաստորեն ազգային-ազատագրական շարժումը թևակոխել է գաղութային ռեժիմի մնացորդների վերացման վերջին փուլը։

Ազգային-ազատագրական հեղափոխությունների շնորհիվ իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումն ու կործանումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումից հետո իր պատմական նշանակությամբ երկրորդ երևույթն է։

Իմպերիալիզմի ջատագովները չեն հաշտվում գաղութային սիստեմի կործանման հետ։ Նրանք դիմում են բազմաթիվ մեքենայությունների, որպեսզի պահպանեն գաղութակալության մնացուկները և տնտեսական, քաղաքական ու ռազմական դիրքեր ունենան ազատագրված երկրներում։ Իմպերիալիզմի այդպիսի քաղաքականությունը բնութագրվում է որպես նեոգաղութակալություն, որը գաղութային սիստեմի քայքայման ու փլուզման ժամանակաշրջանի գաղութակալությունն է։ Նրան բնորոշ են տիրապետման տնտեսական, քաղաքական և գաղափարական մեթոդները։ Տնտեսական բնագավառում իմպերիալիզմի նեոգաղութային քաղաքականության մեջ կարևոր տեղ է գրավում զարգացող երկրներ արտահանվող կապիտալը։ Միայն 1956—1962 թվականներին իմպերիալիստական մոնոպոլիաները 56 զարգացող երկրներ են արտահանել ավելի քան 30 միլիարդ դոլար։ Այդ ժամանակամիջոցում նույն երկրներից կապիտալ արտահանող մոնոպոլիաները ստացել են 15 միլիարդ դոլար շահույթ։

Տնտեսապես թույլ զարգացած երկրներում ամերիկյան ֆիրմաների շահույթներն երկուսից—երկուսուկես անգամ ավելի բարձր են, քան ԱՄՆ-ում։ Պատահական չէ, որ հետպատերազմյան ժամանակաշրջանում արտասահմանյան տարբեր երկրներում ամերիկյան մոնոպոլիաների ստացած 38,9

միլիարդ դոլար շահույթից 22,7 միլիարդը կորզված է թույլ զարգացած
երկրներից: Դա կազմում է ԱՄՆ-ի ստացած շահույթի 55 տոկոսից ավելին:
Այսպես կոչված, տնտեսական «օգնության» պլաններով իմպերիալիստներն
իրենց առջև երկու հիմնական խնդիր են դրել: Առաջին, կազմակերպել մոնո-
պոլիաների ներխուժումը թույլ զարգացած երկրների էկոնոմիկայի մեջ և
երկրորդ՝ խանգարել այդ երկրներում պետական սեկտորի ստեղծմանը, ագ-
րարային վերափոխումներին և ինդուստրացմանը:

Նեոգաղութարարների իմպերիալիստական մեթոդներից մեկն էլ ար-
տաքուստ անկախ, բայց արհեստական ֆեդերացիաների ստեղծումն է, որոնք
փաստորեն մնում են իմպերիալիստական տերությունների լիակատար հսկո-
ղության տակ: Այսպես, 1953 թվականին ստեղծվեց Ռոդեզիայի ու Նյասալեն-
դի ֆեդերացիան: Ներկայումս անգլիական գաղութարարները նույն նպատակ-
ներով աշխատում են ստեղծել Հարավային Արաբիայի իշխանություններից
կազմված, այսպես կոչված, «անկախ» ֆեդերացիա, որի նպատակն է խեղդել
ազգային-ազատագրական շարժումները Ադենում և Արաբիայի հարավում:
1963 թվականին Ինդոնեզիայի սահմանների մոտ ստեղծվեց նեոգաղութա-
կալական մի տիրապետություն: Դա անգլիական գաղութարարների ստեղծած
Մալայզիան է, որով խնդիր է դրվում շարունակել պայքարը Հարավ-Արևել-
յան Ասիայի ազգային-ազատագրական շարժումների դեմ:

Նեոգաղութակալական ձևերից են նաև բազմազան ռազմա-քաղաքական
բլոկների ստեղծումը, երկկողմանի ռազմական համաձայնությունների կնքու-
մը և ազատագրված երկրների տերիտորիաներում ռազմական բազաների տե-
ղադրումը: Գաղութակալական նպատակներով 1954 թվականին ԱՄՆ-ի նա-
խաձեռնությամբ Հարավ-Արևելյան Ասիայում ստեղծվեց ՍԵԱՏՕ բլոկը: Այդ
բլոկի մեջ մտնում են ութ պետություններ՝ ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան,
Ավստրալիան, Նոր Զելանդիան, Պակիստանը, Տաիլանդը և Ֆիլիպինները:
Մեկ տարի անց, 1955 թվականին ստեղծվեց մի նոր բլոկ, որի մեջ միավոր-
վեցին Անգլիան, Թուրքիան, Իրանը, Իրաքը և Պակիստանը: Դա Բաղդադի
պակտն էր, որը Իրաքում հեղափոխական իրադարձություններից և նրանից
Իրաքի դուրս գալուց հետո վերանվանվեց ՍԵՆՏՕ: Վերջին ժամանակներս փոր-
ձեր են արվում ստեղծելու մի նոր ռազմական բլոկ , որի մեջ նախատեսվում
է մտցնել Ճապոնիային, Ֆիլիպիններին, Տաիլանդին, Ավստրալիային, Նոր
Զելանդիային, Մալայզիային, Հարավային Վիետնամին, Հարավային Կո-
րեային և Տայվանին: Արևելյան Ասիայի և Հեռավոր Արևելքի շրջանում կազ-
մավորվող այդ ռազմական, նեոգաղութակալական դաշինքը հայտնի է ԱԶՊԱԿ
անունով: ԱՄՆ-ի իմպերիալիստները տենդորեն նախապատրաստում են
գաղութակալական մի նոր միավորման՝ «Իսլամական պակտի» ստեղծումը,
որի նպատակն է ուժեղացնել պայքարը Մերձավոր արևելքի երկրների առա-
ջադիմական, ազգային-ազատագրական ուժերի դեմ:

Գաղութակալությունն անխզելիորեն կապված է կապիտալիստական
պետությունների ռազմական բազաների հետ: Կառուցելով ռազմական բա-
զաներ օտարերկրյա պետություններում, իմպերիալիստները հենվել են դրանց
վրա, դրանք օգտագործել գաղութային քաղաքականության իրականացման
համար: Այդ նույն նպատակներին են ծառայում անգլիական ռազմական բա-
զաները Կիպրոսում, Ադենում, Սինգապուրում և այլ մասերում: Գաղութա-
կալական նպատակներով Ամերիկայի Միացյալ Նահանգները ստեղծել են
ռազմական բազաների մի ամբողջ սիստեմ: Ներկայումս օտարերկրյա տերի-



տորիաներում Ամերիկայի Միացյալ Նահանգներն ունեն 2.200 ռազմական
բազա, ուր կենտրոնացված են ամերիկյան ռազմա-ծովային, ռազմա-օդային
և ցամաքային զինված ուժերը:

Փաստերը ցույց են տալիս, որ ժամանակակից պայմաններում նեո-
գաղութատիրության գլխավոր պատվարը մնում է իմպերիալիզմը և, առաջին
հերթին, ԱՄՆ-ի իմպերիալիզմը: 1965 թվականին ԱՄՆ-ում հռչակվեց մի
նոր դոկտրինա, որով օրինական է համարվում հակակոմունիզմի դրոշի ներ-
քո իրականացվող յուրաքանչյուր ինտերվենցիա: ԱՄՆ-ի կոնգրեսի ներկայա-
ցուցիչների պալատը հատուկ բանաձև է ընդունել Լատինական Ամերիկայի
երկրների գործերին զինված միջամտություն ցույց տալու մասին: Դրանով իմ-
պերիալիստներն աշխատում են օրինականացնել այնպիսի ագրեսիվ, գա-
ղութատիրական գործողություններ, ինչպիսին ԱՄՆ-ի զինված ինտերվենցիան
էր Դոմինիկյան հանրապետությունում:

Հակակոմունիստական ու գաղութակալական ծրագրերի իրագործման
նպատակով իմպերիալիստական պետությունները հսկայական պրոպագան-
դիստական ապարատ են ստեղծել: ԱՄՆ-ը մեծ հույսեր են կապում «խաղա-
ղության կորպուսի» հետ, որի կազմի մեջ հաշվվում է 20 000-ից ավելի մարդ:

Այսպիսով, ժամանակակից գաղութարարները կարևոր տեղ են հատկաց-
նում գաղափարական զենքին: Նեոգաղութարարության գաղափարախոսությու-
նը առաջին հերթին հակակոմունիզմի գաղափարախոսություն է, որի միջո-
ցով խարխլվում է դեմոկրատիան, քայքայվում հակաիմպերիալիստական
ուժերի միասնությունը ինչպես ազգային, այնպես էլ միջազգային մասշտա-
բով: Այդ գաղափարախոսությունն ուղղված է ազատագրված երկրների զար-
գացման սոցիալիստական հեռանկարների դեմ և նպատակ ունի միավորել
իմպերիալիստների ու տեղական ռեակցիայի ուժերն ընդդեմ ժողովրդական
մասսաների և սոցիալական պրոգրեսի:

Արդի ժամանակաշրջանում ազգային-ազատագրական հեղափոխություն-
ների խնդիրները չեն սահմանափակվում միայն քաղաքական անկախություն
հաստատելով և ազգային պետականություն ստեղծելով: Այդ հեղափոխու-
թյունների կարևոր նպատակներից մեկը սոցիալ-տնտեսական վերափոխում-
ների միջոցով տվյալ երկրների տնտեսական անկախության ամրապնդումն ու
զարգացումն է: ՍՄԿԿ ծրագրում նշված է, որ «ազգային-ազատագրական
հեղափոխությունը չի ավարտվում քաղաքական անկախության նվաճումով:
Այդ անկախությունը խախուտ կլինի և ֆիկցիայի կվերածվի, եթե հեղափո-
խությունը խոր փոփոխությունների չհանգեցնի սոցիալական և տնտեսական
կյանքում, չլուծի ազգային վերածննդի կենսական խնդիրները (էջ 55):

Ելնելով այդ ճշմարտությունից, ազգային-ազատագրական հեղափո-
խությունները ներկայումս թևակոխել են իրենց զարգացման նոր՝ տնտեսա-
կան ազատագրման և պետական անկախության հիմքերի ամրապնդման պայ-
քարի էտապը:

Գաղութային սիստեմից ազատագրված երկրները տնտեսական տեսակե-
տից թույլ զարգացած են: Բնորոշ է, որ թույլ զարգացած երկրների վերամը-
շակող արդյունաբերության արտադրանքը կազմում է կապիտալիստական
աշխարհի նույն արտադրանքի 8,5 տոկոսը, իսկ մեքենաշինության մեջ՝
միայն 3,2 տոկոսը: Հենց այդ պատճառով էլ բնակչության մեկ շնչին ընկնող
արտադրության մակարդակով ազատագրված երկրները տնտեսական տեսա-

կետից զարգացած կապիտալիստական երկրներից ետ են մնում 20—40 անգամ:
Գաղութային սիստեմից ազատագրված երկրների համար կապիտալիստա-
կան ուղին չի կարող ապահովել տնտեսական զարգացման բարձր տեմպեր:
Միակ ելքը զարգացման ոչ կապիտալիստական ուղին է: Ելնելով այս ճշմար-
տությունից, ազատագրված մի շարք երկրներ ընտրել են զարգացման այդ
ուղին: Դրանք են՝ Բիրման, Միացյալ Արաբական Հանրապետությունը, Ալժիրի
ժողովրդա-դեմոկրատական Հանրապետությունը, Մալիի Հանրապետությունը,
Գվինեան, Կոնգոն (Բրազավիլ), Սիրիական Արաբական Հանրապետությունը:

Զարգացման ոչ կապիտալիստական ուղին թևակոխած երկրների փորձը
լիովին հաստատում է Վ. Ի. Լենինի այն միտքը, որ հաղթանակած սոցիալիզ-
մի պետության առկայության պայմաններում տնտեսական ու քաղաքական
զարգացման գործում ետ մնացած երկրների համար կապիտալիստական փուլն
անցնելը պարտադիր չէ: Այդ դեպքում կարելի է սոցիալիզմին անցնել՝ շրջան-
ցելով կապիտալիզմի ստադիան (տե՛ս Երկեր, հ. 31, էջ 395): Ո՛չ կապիտա-
լիստական ուղին թևակոխած երկրների համար կարևոր է հասարակության
քաղաքական կազմակերպության ձևը: Ներկայումս այդպիսի ձև է ազգային
դեմոկրատիայի պետությունը: Այդ նոր տիպի պետության միջոցով իրագործ-
վում է սոցիալ-տնտեսական ու քաղաքական հետևյալ ծրագիրը. քաղաքական
ինքնուրույնության ամրապնդում, գյուղացիության օգտին ագրարային վերա-
փոխումների իրականացում, ֆեոդալիզմի մնացուկների վերացում, իմպե-
րիալիզմի տիրապետության տնտեսական արմատների ոչնչացում, օտարերկ-
րյա մոնոպոլիաների սահմանափակում և էկոնոմիկայից դրանց վտարում,
ազգային արդյունաբերության ստեղծում ու զարգացում, բնակչության կենսա-
մակարդակի բարձրացում, հասարակական կյանքի դեմոկրատացում, անկախ
խաղաղասիրական արտաքին քաղաքականության իրականացում, սոցիալիս-
տական երկրների հետ տնտեսական ու կուլտուրական համագործակցության
զարգացում (տե՛ս կոմունիստական և բանվորական կուսակցությունների
ներկայացուցիչների խորհրդակցության հայտարարությունը: Հայպետհրատ,
1960 թ., էջ 43—44):
Զարգացման ոչ կապիտալիստական ուղիով ընթացող երկրներում դասա-
կարգային պայքարը չի դադարում, իսկ առանձին դեպքերում նույնիսկ ավելի
է սրվում: Այդպիսի պայմաններում ազգային դեմոկրատիայի պետություն-
ներում կարևոր դեր է կատարում ազգային ճակատը, որի կորիզը բանվոր
դասակարգի և գյուղացիության դաշինքն է: Բացի բանվոր դասակարգից և
գյուղացիությունից, ազգային ճակատի մեջ մտնում է նաև տվյալ երկրի ազ-
գային բուրժուազիան: Անհրաժեշտ է նկատի ունենալ այն յուրահատկությունը,
որ զարգացման ոչ կապիտալիստական ուղիով կարող են ընթանալ նաև այն-
պիսի երկրներ, որտեղ պրոլետարիատը թույլ է կամ առհասարակ գոյություն
չունի: Զարգացման այդ ուղին ընտրած երկրների տնտեսական ու քաղաքա-
կան ղեկավարությունն իրագործում են հեղափոխական-դեմոկրատական
կուսակցությունները: Երբ դեմոկրատական հեղափոխությունն աստիճանաբար
վերածվում է սոցիալիստականի, այդ ժամանակամիջոցում հեղափոխական-
դեմոկրատական կուսակցությունները ղեկավարվում են բանվոր դասակար-
գի մարքս-լենինյան գաղափարախոսությամբ, կանգնում կոմունիստական
սկզբունքների վրա: Գաղափարախոսության մեջ այդպիսի էվոլյուցիա տեղի



ունեցավ Կուբայում: Այնտեղ հեղափոխական դեմոկրատները պայքարի պրոցեսում կանգնեցին գիտական կոմունիզմի ուղու վրա:

Զարգացման ոչ կապիտալիստական ուղին թևակոխած երկրներում կապիտալիստական հարաբերությունները խոր չեն արմատավորված կամ թույլ են արտահայտվում: Այդ պատճառով էլ զարգացման ոչ կապիտալիստական ուղին չի վերաբերում զարգացած կապիտալիստական երկրներին, այն հատուկ է միայն տնտեսական տեսակետից թույլ զարգացած երկրներին, որոնցում կապիտալիզմը, որպես ֆորմացիա, դեռևս չի հաստատվել: Այս ուղին կարող է հանգեցնել միայն սոցիալիզմին: Դա ինչ-որ «երրորդ ուղի» չէ:

Զարգացման ոչ կապիտալիստական ուղու յուրահատկություններից մեկն այն է, որ այդ ուղիով ընթանալու դեպքում ղեկավարությունը կարող է իրականացվել ո՛չ միայն բանվոր դասակարգի, այլև հեղափոխական դեմոկրատների ղեկավարությամբ: Փաստորեն զարգացման ոչ կապիտալիստական ուղին սոցիալիզմին անցնելու յուրահատուկ ձև է և իր էությամբ համապատասխանում է ժողովրդական մասսաների կենսական պահանջներին: Այստեղ շատ տեղին են հնչում Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, որ ճնշված ազգերն իրենց ավանդը կմուծեն «... դեմոկրատիայի ձևերի և սոցիալիզմին անցնելու ձևերի բազմազանության մեջ» (Երկեր, հ. 23, էջ 81):

Զարգացման ոչ կապիտալիստական ուղին ընտրած երկրների էկոնոմիկայում գոյություն ունեն հետևյալ սեկտորները. 1. պետական, 2. պետական-մասնավոր, որի մեջ մտնող ձեռնարկությունները համատեղ տնօրինում են տվյալ կառավարությունները և օտարերկրյա մասնավոր կապիտալը, 3. կոոպերատիվ տնտեսություններ գյուղում, 4. մասնավոր ձեռնարկություններ քաղաքում, 5. օտարերկրյա մասնավոր ձեռնարկություններ, 6. մասնավոր գյուղատնտեսություն: Այս սեկտորների գոյության պայմաններում տեղի է ունենում պետական սեկտորի ամրապնդում, գյուղատնտեսության կոոպերացում, ուժեղանում է պետական վերահսկողությունը օտարերկրյա կապիտալի նկատմամբ, կարգավորում մասնավոր կապիտալի գործունեությունը:

Սոցիալ-տնտեսական վերափոխումների հետևանքով զգալի վերելք է ապրում ազգային դեմոկրատիայի պետությունների և գաղութակալությունից ազատագրված մյուս երկրների էկոնոմիկան: 1960—1964 թվականներին զարգացող երկրների արդյունաբերական արտադրությունն ավելացավ 1,5 անգամ:

Ճիշտ է, գաղութային սիստեմը հիմնականում քայքայվել է, փլուզվել, սակայն դեռևս պահպանվում են պորտուգալական ու իսպանական մի շարք գաղութներ: Օվկիանիայի բազմաթիվ կղզիներ գտնվում են ԱՄՆ-ի և Անգլիայի գաղութային տիրապետության տակ: Ազգային-ազատագրության համար զինված ու համառ պայքար են մղում Անգոլայի, Մոզամբիկի, «պորտուգալական» Գվինեայի, Հարավային Արաբիայի ժողովուրդները: Գաղութակալության մնացուկների վերացման և ազատագրված երկրների տնտեսական ու քաղաքական անկախության ամրապնդման համար կենսական անհրաժեշտություն է արդիականության հեղափոխական երեք ուժերի՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, կապիտալիստական երկրների բանվորական շարժման և ազգային-ազատագրական պայքարի ինտերնացիոնալ համերաշխությունը:

Ազգային-ազատագրական շարժումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բնական դաշնակիցն է: Գաղութային և կիսագաղութային լուծը թոթափած ժողովուրդների հետ կնքած եղբայրական դաշինքը սոցիալիստական աշխարհի երկրները համարում են իրենց արտաքին քաղաքականության անկյու-

նաքարերից մեկը։ Այդ դաշինքը հիմնված է համաշխարհային սոցիալիզմի և
ազգային-ազատագրական շարժման կենսական շահերի ընդհանրության վրա։
Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մեջ մտնող երկրներն ազա-
տագրված երկրներին անշահախնդիր օգնություն են ցույց տալիս տնտեսու-
թյան ու կուլտուրայի զարգացման շատ բնագավառներում։ Տնտեսական համա-
գործակցության կարևոր միջոցներից մեկը փոխադարձ շահավետ առևտուրն
է։ Հատկապես վերջին տարիներին մեծ չափերով ավելանում է ապրանքաշրր-
ջանառությունը թույլ զարգացած երկրների և սոցիալիստական երկրների միջև։
Եթե ընդհանուր առմամբ թույլ զարգացած երկրների ապրանքաշրջանառու-
թյունը 1959—1965 թվականներին ավելացավ 21,2 տոկոսով, ապա սոցիա-
լիստական երկրների հետ, նույն ժամանակամիջոցում, աճեց 115,7 տոկոսով։
Տարեցտարի ընդլայնվում է գիտա-տեխնիկական ու տնտեսական համա-
գործակցությունը սոցիալիստական պետությունների և զարգացող երկրնե-
րի միջև։
Մեծ մասշտաբների է հասնում Սովետական Միության տնտեսական
համագործակցությունն ու անշահախնդիր օգնությունը զարգացող երկրներին։
Սովետական նախագծային կազմակերպությունների և շինարար մասնագետ-
ների օգնությամբ Ասիայի և Աֆրիկայի զարգացող երկրներում կառուցվում
են մոտ 600 արդյունաբերական, գյուղատնտեսական և այլ օբյեկտներ։ ՍՍՀՄ
աջակցությամբ այդ երկրներում կառուցվել ու կառուցվում են հարյուրից
ավելի ուսումնական ու բժշկական հիմնարկներ, գիտական կենտրոններ։
ՍՍՀՄ զարգացող 15 երկրներին օգնություն է ցույց տալիս նրանց էներ-
գետիկայի վերելքի կազմակերպման գործում։
Զարգացող երկրների տնտեսական անկախության ամրապնդման համար
կարևոր է սեփական մետալուրգիայի և մեքենաշինության ստեղծումն ու զար-
գացումը։ Այստեղ էլ խոշոր չափով է դրսևորվում ՍՍՀՄ օգնությունը։
Սովետական Միության գիտա-տեխնիկական և տնտեսական համագոր-
ծակցությունը մեծ չափով նպաստում է նաև այդ երկրների գյուղատնտեսու-
թյան զարգացմանը։
Հաջողությամբ է զարգանում կուլտուրական համագործակցությունը
սոցիալիստական պետությունների և զարգացող երկրների միջև։ Սովետա-
կան Միության բուհերում ու տեխնիկումներում սովորող Ասիայի, Աֆրիկայի
և Լատինական Ամերիկայի երկրների ուսանողների թիվը վերջին հինգ տա-
րում ավելացել է երկու անգամ։ Այդ նույն ժամանակամիջոցում քառա-
պատկվել է Ասիայի և Աֆրիկայի 28 երկրներում աշխատող սովետական
մասնագետների թիվը։
ՍՄԿԿ XXIII համագումարը խնդիր դրեց «... այսուհետև ևս պաշտպանել
գաղութային ճնշման ու նեոգաղութատիրության դեմ պայքարող ժողովուրդ-
ներին. համակողմանի համագործակցություն զարգացնել ազգային անկա-
խություն ձեռք բերած երկրների հետ։ Ըստ ամենայնի նպաստել բոլոր մայր-
ցամաքների ժողովուրդների հակաիմպերիալիստական ճակատի ամրապնդ-
մանը»։
Գաղութային ռեժիմի լրիվ ու վերջնական վերացումը՝ նրա բոլոր ձևերով,
թելադրում է համաշխարհային պատմության ներկա ընթացքը։ Մեր ժամա-
նակի օրակարգում դրված է գաղութատիրությունը մեկընդմիշտ պատմու-
թյան աղբանոցը նետելու հարցը։ Ոչ մի բան չի կարող կանխել դատապարտ-
ված գաղութային սիստեմի վերջնական կործանումը։

# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԼՈՒՅՍՈՎ

Ն. ԻԲՐԱՀԻՄՈՎ, Լ. ՍԱՀԱԿՅԱՆ

Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակին Սովետական Հայաստանը
դիմավորում է տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր ասպարեզներում
ձեռք բերած արմատական փոփոխություններով ու խոշոր նվաճումներով, որոնց
մեջ կարևոր տեղ են գրավում ազգային փոքրամասնությունների ազատ զար-
գացումը, նրանց կուլտուրայի ծաղկումը։
Ալ. Մյասնիկյանը Հայաստանի սովետների առաջին համագումարում տր-
ված զեկուցման մեջ հաղորդեց, թե ինչպես Սովետական Հայաստանի կառա-
վարությունն իր գործունեության առաջին իսկ օրից վերջ է դրել Հայաստա-
նում ապրող ազգային փոքրամասնությունների, մասնավորապես ադրբեջան-
ցիների նկատմամբ եղած խտրականության քաղաքականությանը, նրանց
նկատմամբ վարել է իրավահավասարության և տնտեսական ու կուլտուրական
ապահով կյանք ստեղծելու քաղաքականություն։ «Այստեղ, մեր հանրապետու-
թյունում,— ասում է Մյասնիկյանը,— կան ադրբեջանցիներ, եզիդներ, քրդեր
և այլն, որոնք բոլորն էլ իրենց հարազատ են զգում ինչպես իրենց տան մեջ։
Այս է Հայաստանի սովետական կառավարության վերաբերմունքը ադրբեջան-
ցիների և մյուս ազգությունների նկատմամբ» (Ալ. Մյասնիկյան, «Ընտիր
երկեր», 1957 թ., էջ 394)։
Այդ ոգին հետագայում հետևողականորեն իշխել է Հայաստանի կառավա-
րության գործունեության մեջ ազգային փոքրամասնությունների, այդ թվում
և ադրբեջանցիների նկատմամբ։
1921 թ. սկզբներին, Հայաստանում սովետական իշխանության հաստատ-
ման առաջին օրերին, ազգային փոքրամասնությունների շրջանում կուլտուր-
կրթական աշխատանքներ տանելու համար կազմակերպվեց ազգային փոքրա-
մասնությունների խորհուրդ։ Այն զգալի դեր խաղաց ազգային փոքրամաս-
նությունների մեջ ժողովրդական լուսավորությունը լայնորեն ծավալելու գոր-
ծում։
Ազգային փոքրամասնությունների կուլտուրայի զարգացման գործում մեծ
նշանակություն ունեցավ նրանց երեխաներին իրեց մայրենի լեզվով կրթություն
տալու վերաբերյալ Սովետական Հայաստանի կառավարության 1920 թվականի
դեկտեմբերի 9-ի դեկրետը։ Այդ պատմական որոշումից հետո Հայաստանի
Լուսժողկոմատը ձեռնամուխ եղավ, մի կողմից, ադրբեջանական դպրոցներ բա-
ցելու, մյուս կողմից, նրանց համար՝ մանկավարժական կադրեր պատրաստե-
լու գործին։
Սկսեցին արագ աճել ադրբեջանական դպրոցները. եթե մինչև հեղափո-
խությունը Հայաստանում կային 2—3 ռուս-թաթարական (ադրբեջանական)

մասնավոր դպրոցներ՝ իրենց աղքատիկ կահավորումով, ապա 1922/23 ուսում-
նական տարում արդեն գործում էին 36 դպրոց, 1521 աշակերտով, իսկ
1926—27 ուսումնական տարում այդ թիվը հասավ 91-ի՝ 3342 աշակերտով[1]:
1924 թ. սեպտեմբերից գործածության մեջ մտավ ադրբեջանական նոր այբու-
բենը: Նույն թվականին կազմակերպվեց «Նոր ադրբեջանական այբուբենի բա-
րեկամության ընկերությունը», որը նոր այբուբենը տարածելու նպատակով
ագիտացիոն-մասսայական աշխատանք ծավալեց բնակչության մեջ:

Հոկտեմբերյան հեղափոխության 10-ամյակի կապակցությամբ հանրապե-
տության 33 գյուղերում նոր դպրոցներ կառուցելու համար 29810 ռուբ. դրամ է
տրամադրվում[2]:

1925 թ. բացվեց մանկավարժական ուսումնարան, որը և հանդիսացավ
հանրապետության ադրբեջանական դպրոցները մանկավարժական կադրերով
ապահովող կենտրոններից մեկը: Ուսումնարանում իր սկզբնական մանկա-
վարժական աշխատանքն սկսեց բիոլոգիայի և քիմիայի ուսուցիչ Յուսուֆ Մա-
մադալիևը, որը հետագայում համաշխարհային նշանակություն ունեցող գիտ-
նականի համբավ ձեռք բերեց և դարձավ Ադրբեջանական ՍՍՀ գիտություննե-
րի ակադեմիայի ակադեմիկոս և նրա պրեզիդենտը:

Մանկավարժական ուսումնարանից հետո Աբովյանի անվան հայկական
պետական մանկավարժական ինստիտուտին կից բացվեցին ադրբեջանական
բաժիններ (լեզվի, գրականության, աշխարհագրության, ֆիզիկայի, մաթեմա-
տիկայի և այլն), որին հաջորդում է հեռակա ադրբեջանական մանկավարժա-
կան ինստիտուտի բացումը:

Դեռևս 1924 թվականի մայիսի 9-ին Հայկական ՍՍՀ լուսժողկոմ ընկ.
Ա. Մռավյանը պաշտոնական գրությամբ դիմել է Ադրբեջանի լուսժողկոմին՝
խնդրելով օգնել Հայաստանին՝ ադրբեջանական մանկավարժներ պատրաստե-
լու գործում: Մեծ թվով ադրբեջանցի ուսուցիչներ մեկնեցին Բաքու՝ կատարե-
լագործման դասընթացները, իսկ 1926—27 թվականներին Հայաստանից
ադրբեջանցի 38 երիտասարդների գործուղում են Բաքու՝ տարբեր բուհերում
բարձրագույն կրթություն ստանալու[3]: Այդ միջոցառումները զգալի չափով
օգնեցին մանկավարժական որակյալ կադրերի պատրաստմանը:

1966/67 ուսումնական տարում մեր հանրապետությունում գործում է 160
ադրբեջանական դպրոց: Այդ դպրոցներում սովորում են 33.962 աշակերտ, իսկ
երեկոյան և հերթափոխային դպրոցներում՝ 2000 աշակերտ: Բացի այդ, գոր-
ծում է 61 ինտերնացիոնալ դպրոց (ադրբեջանական-հայկական կամ ադրբեջա-
նական-ռուսական), որտեղ ադրբեջանցի, հայ և ռուս երեխաները, ինչպես մի
ընտանիքի զավակներ, սովորում են իրենց մայրենի լեզուներով, որը և հանդի-
սանում է ինտերնացիոնալ դաստիարակության վառ օրինակներից մեկը:

Եթե մինչև հեղափոխությունը Հայաստանում գոյություն ուներ ռուս-թա-
թարական (ադրբեջանական—Ն. Ի., Լ. Ս.) 15 մասնավոր դպրոց, որոնք տեղա-
վորված էին խարխուլ շենքերում և չունեին ոչ մի կահավորում ու հարմարու-
թյուններ, ապա սովետական իշխանության սահղծման առաջին տարիներից
սկսած զարկ տրվեց դպրոցական շինարարությանը:

---

1 ՄԼԻ-ի Հայկ. ֆիլ. կուսարխիվ, ֆ. 1, ց. 17, գ. 184, թ. 321:
2 ՄԼԻ-ի Հայկ. ֆիլ. կուսարխիվ, ֆ. 1, ց. 12, գ. 135, թ. 11—12:
3 ՄԼԻ-ի Հայկ. ֆիլ. կուսարխիվ, ֆ. 1, ց. 1, գ. 144, թ. 56:



Մեր հանրապետությունում ընդարձակվել է պետական միջոցներով դըպ-րոցի շինարարությունը: Դպրոցական նոր, հարմարավետ և տիպային շեն-քեր են կառուցվում բազմաթիվ շրջաններում և Երևան քաղաքում:

Պարտադիր ուսուցման վիճակը բարելավելու նպատակով վերջին տարի-ներին մի շարք ադրբեջանական դպրոցներին կից կառուցվել են հանրակացա-րանի տիպային շենքեր, յուրաքանչյուրը 50—75 աշակերտական տեղով, իսկ կոլտնտեսությունների ուժերով՝ դպրոցական 21 լավագույն շենք:

Եթե մինչև հեղափոխությունը Հայաստանի ադրբեջանական դպրոցներում աշխատել են 39 ուսուցիչ միջնակարգ և թերի միջնակարգ կրթությամբ, ապա 1966/67 ուսումնական տարում աշխատող 2171 ուսուցիչներից 988-ը ունեն բարձրագույն, 437-ը՝ թերի բարձրագույն, 445-ը՝ միջնակարգ մասնագիտա-կան, իսկ 298-ը ընդհանուր միջնակարգ կրթություն: Այդ ուսուցիչներից 25-ը այժմ սովորում են ասպիրանտուրայի հեռակա բաժիններում: Մեղրու շրջանի Նյուվադի դպրոցի դիրեկտոր Ջալալ Ալիևը տնտեսական գիտությունների թեկնածու է:

Ուսուցիչներից շատ-շատերը՝ 342 հոգի պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով, 60 հոգի ստացել հանրապետության վաստակավոր ուսուցչի պատվավոր կոչում:

Սովետական իշխանության տարիներին Հայաստանի ադրբեջանական դպրոցների սաներից ակադեմիկոսներ են դարձել 3 (Մ. Թոփչիբաշևը, Հ. Ալի-ևը, Թ. Փաշաևը), գիտությունների դոկտորներ՝ 20, թեկնածուներ՝ 120 հոգի, մի հոգի Սովետական Միության հերոս է, վեց հոգի՝ Սոցիալիստական աշխա-տանքի հերոս:

Ադրբեջանական դպրոցների աշակերտները նամակագրական լայն կապեր ունեն ինչպես Սովետական Միության, այնպես էլ դեմոկրատական երկրների դպրոցների հետ: Միայն Իջևանի շրջանի Սալահի 8-ամյա դպրոցը կապ ունի 45 տարբեր քաղաքների դպրոցների հետ: Փոքր և Մեծ Մազրաների դպրոցական-ների համար տրադիցիա է դարձել նշելու մեր հայրենիքի անվանի մարդկանց հոբելյանները:

Ադրբեջանական դպրոցները Սովետական Հայաստանում գտնվում են իրենց զարգացման բարձր աստիճանի վրա: Հայ, ռուս, քուրդ և մյուս ազգու-թյունների հետ միասին ադրբեջանցի երեխաները լիակատար հնարավորություն են ստացել դրսևորելու իրենց ընդունակությունները՝ պատրաստվելով ակտիվ գործունեության՝ տնտեսության և կուլտուրայի տարբեր բնագավառներում:

# ՍԱՐԻՂԱՄԻՇԸ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՉՈՎ

Ռ. ՍԱՐՈՅԱՆ

Հայաստանում սովետական իշխանության համար կոմունիստական կուսակցության մղած հերոսական պայքարը հիմնականում լուսաբանվել է սովետահայ պատմագրության կողմից: Բազմաթիվ մենագրություններում և առանձին հոդվածներում բազմակողմանիորեն վերլուծված է Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների գործունեությունը: Առանձին աշխատություններում որոշ չափով շոշափված է նաև Սարիղամիշի բոլշևիկյան կազմակերպության գործունեությունը, բայց քանի որ նրանցում այն առանձին հետազոտության առարկա չի հանդիսացել, բնականաբար, այդ կազմակերպության գործունեության ամբողջական պատկերը նրանք տալ չէին կարող: Սակայն, մեր կարծիքով, այն արժանի է հատուկ ուսումնասիրության:

1919—1920 թթ. սահմանագծին իմպերիալիստական պետությունների և ներքին հակահեղափոխական ուժերի դեմ մղվող պայքարում Սովետական Ռուսաստանի տարած մեծ հաղթանակները նոր հեռանկարներ բացեցին Անդրկովկասի աշխատավորների հերոսական պայքարի համար: Դենիկինի պարտությունը և կարմիր բանակի մոտիկությունը Անդրկովկասին նոր հույս ներշնչեց երկրամասի աշխատավորներին: Անդրկովկասի, այդ թվում նաև Հայաստանի կոմունիստները և աշխատավորները քաջ գիտակցում էին, որ ազատարար կարմիր բանակն անտարբեր չի մնա իրենց պայքարին, որ ռուս պրոլետարիատն իր եղբայրական օգնության ձեռքը կմեկնի դաշնակների, մենշևիկների և մուսավաթականների տիրապետության դեմ Անդրկովկասի աշխատավորների մղած պայքարին: ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեն 1920 թվականի մարտի 15-ին՝ Սովետական Ռուսաստանին ուղղած իր դիմումում ողջունելով կարմիր բանակի տարած հաղթանակները և նկարագրելով երկրամասում տիրող ծանր վիճակը, նշում էր. «Մենք խիստ տենչում ենք ռուս պրոլետարիատի հետ ձեռք-ձեռքի տված մտնել ընդհանուր աշխատանքի և սոցիալիստական շինարարության նոր կյանքի մեջ» (ՄԼԻ վրացական ֆիլիալի արխիվ, 1917—1921 թթ. բոլշևիկյան պրոկլամացիաների ֆոնդ):

Իր հերթին Սովետական Ռուսաստանի կառավարությունը, կոմունիստական կուսակցությունը և անձամբ Վ. Ի. Լենինը շահագրգռված էին Անդրկովկասի աշխատավորների ազատագրությամբ: Դեռևս Դենիկինի դեմ մղվող համառ մարտերի ժամանակ Սովետական Ռուսաստանի կառավարությունը Անդրկովկասի կառավարություններին կոչ էր անում համատեղ պայքար մղել անդրկովկասյան ժողովուրդների և Սովետական Ռուսաստանի ընդհանուր թշնամու՝ Դենիկինի բանակի դեմ (Տե՛ս Борьба за победу Советской Власти в Грузии (1917—1921), Сборник, стр. 927, 1958):

Սակայն, անդրկովկասյան կառավարությունները՝ սարսափած աշխատավոր մասսաների հեղափոխական ելույթներից և Անտանտայի պետությունների թելադրանքով հրաժարվեցին սովետական կառավարության առաջարկությունից: Որպես փոխհատուցում, Անտանտայի Գերագույն խորհուրդը 1920 թվականի հունվարին «դե ֆակտո» ճանաչեց Անդրկովկասի անկախ հանրապետությունները և ուժեղացրեց ռազմական օգնությունը՝ բոլշևիզմի դեմ պայքարելու համար:

Անդրադառնալով անկախ Հայաստանի «դե ֆակտո» ճանաչմանը, ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտեն՝ Արմենկոմը, դիմելով Հայաստանի աշխատավորներին, ասում է. «Բանվորնե՛ր և գյուղացինե՛ր, դուք չունեք անկախություն, չունեք ազատություն, չունեք սեփականություն: Դուք կունենաք անկախություն միայն այն ժամանակ, երբ ձեր երկրի տերը կդառնաք դուք՝ բանվորներդ ու գյուղացիներդ, երբ կունենաք սոցիալիստական հայրենիք» (Մայիսյան ապստամբությունը Հայաստանում, հիշողությունների և փաստաթղթերի ժողովածու, Ե. 1930 թ., էջ 170):

1920 թ. ապրիլի 2-ին, Ալեքսանդրապոլի բոլշևիկյան կոմիտեի նիստում լսվում է Սարիղամիշի կուսկազմակերպության ներկայացուցիչ Ա. Առաքելյանի զեկուցումը՝ տեղի կոմունիստական կազմակերպությունների աշխատանքի վիճակի մասին: Մանրամասն քննարկումից հետո արվում են օգտակար ցուցումներ և կազմակերպությունն է՛լ ավելի ուժեղացնելու նպատակով որոշվում է Սարիղամիշ ուղարկել ականավոր բոլշևիկ Անդրանիկ Ծուղուրյանին (Աղոկ):

Ա. Ծուղուրյանը գալով Սարիղամիշ՝ նոր թափ է հաղորդում բոլշևիկյան կազմակերպությանը: Հատկապես ուժեղացվում է աշխատանքը 4-րդ գնդի զինվորների շրջանում: Սարիղամիշի բոլշևիկները կարողացել էին նվաճել զինվորական մասսաների համակրանքը և նրանցից շատերին ներգրավել կոմունիստական կուսակցության շարքերը: Հետևելով զինվորների հակակառավարական տրամադրություններին, բոլշևիկները նրանց ելույթներին տալիս էին կազմակերպված բնույթ:

Վախենալով 4-րդ գնդի զինվորների հեղափոխական տրամադրություններից, դաշնակցական հրամանատարությունը փորձում էր բռնությունների միջոցով ցրել գնդի բոլշևիկյան կազմակերպությունը: Ապրիլի 14-ին ձերբակալվում են գնդի ակտիվ կոմունիստներ Կ. Գարագաշը, Ա. Հովսեփյանը, Ստ. Խուդզարյանը, Սամվել և Խոսրով Դիլանյանները, Սեդրակ Պապոյանը: Գնդապետ Սիրիմյանը որոշում է նրանց ուղարկել Կարսի ռազմադաշտային դատարան, բայց, իմանալով այդ մասին՝ ողջ գունդը, կոմունիստների ղեկավարությամբ, սվիններով զինված, դուրս է գալիս հրամանատարության դեմ և ստիպում նրանց ազատել ձերբակալված կոմունիստներին: Սա բացահի՛կ ելույթ էր դաշնակցական բանակում, երբ ամբողջ մի զորագունդ դեմ է դուրս գալիս հրամանատարությանը, դրանով իսկ արտահայտելով իր ատելությունը գոյություն ունեցող կարգերի նկատմամբ:

Իմանալով 4-րդ գնդի զինվորների ըմբոստության մասին, ապրիլի 22-ին տասնհինգ մաուզերիստների ուղեկցությամբ Կարսից Սարիղամիշ է գալիս գեներալ Օսիպովը (Հովսեփյանը): Նա անմիջապես հրավիրում է գնդի սպայակույտի և տեղի դաշնակցական կոմիտեի ժողով, որը որոշում է ձերբակալել կազմակերպական բյուրոն: Սակայն, որպեսզի չկրկնվեն ապրիլի 14-ի իրադարձությունները, այս անգամ դաշնակցականները դիմում են խորամանկության. ապրիլի 23-ին զինավարժությունների պատրվակով գունդը դուրս է հանվում քաղաքից, այնուհետև ձերբակալվում են կոմունիստներ Կ. Գարագաշը, Լ. Քոչարյանը, Ա. Հովսեփյանը և ուրիշներ: Երբ ձերբակալվածներին տանում են կայարան, այնտեղ կոմունիստները ահազանգ են տալիս: Ալ. Առաքելյանը Ս. Մուրադյանի միջոցով անմիջապես զորավարժությունների վայրում գտնվող կոմունիստներին հայտնում է Օսիպովի նենգ արարքի մասին: Լ. Մխչյանը ձերբակալվածներին ազատելու համար անմիջապես ուղարկում է երկու գնդացրային խումբ: Զինվորները դիրքավորվում են կայարանից մեկ ու կես վերստ հեռու գտնվող բլրի վրա և կանգնեցնում ձերբակալվածներին Կարս տանող գնացքը: Գեներալը վերադառնում է Սարիղամիշ, բայց երկաթուղայինների և զինվորների պահանջով անմիջապես հեռանում է այնտեղից: Նա մեկնում է Կարս, չկարողանալով կատարել ռազմական մինիստրի հրամանը:

Նույն օրը երեկոյան Սարիղամիշի բոլշևիկյան կոմիտեն հրավիրում է բանվորների և զինվորների ընդհանուր ժողով, որտեղ քննարկում են վերջին իրադարձությունները: Արձանագրվում է այն փաստը, որ 4-րդ գունդը հիմնականում անցել է բոլշևիկների կողմը և պատրաստ է պաշտպանելու նրանց արդարացի պայքարը դաշնակցական նեխած ռեժիմի դեմ: Բոլշևիկյան կոմիտեն մշակում է հետագա գործողությունների ծրագիր և պատրաստվում գալիք դեպքերին:

Ապրիլի 28-ին (1920 թ.) կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ապստամբության դրոշ պարզեցին Ադրբեջանի բանվորներն ու գյուղացիները: Կարմիր բանակի օգնությամբ նրանք տապալեցին մուսավաթականների իշխանությունը և Ադրբեջանում հաստատեցին սովետական իշխանություն: Հայաստանի աշխատավորները խանդավառությամբ ընդունեցին Ադրբեջանում սովետական իշխանության հաստատման և կարմիր բանակի՝ Հայաստանի սահմաններին մոտենալու լուրը: Այդ իրադարձությունները բարձրացրին Հայաստանի աշխատավորության տրամադրությունը, որն առավել ցայտուն արտահայտվեց Հայաստանի աշխատավորների մայիսմեկյան ցույցերում և միտինգներում:

## ՄԱՅԻՍՄԵԿՅԱՆ ՏՈՆԱԿԱՏԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄԱՅԻՍՅԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆԸ ՍԱՐԻՂԱՄԻՇՈՒՄ

Սարիղամիշի բոլշևիկները խնամքով և մեծ ոգևորությամբ էին նախապատրաստվում աշխատավորության միջազգային տոնին: Կոմիտեն նախօրոք պատրաստել էր տրանսպարանտներ, կարմիր դրոշներ, ծաղիկներ: Ապրիլի 30-ի գիշերը բոլշևիկյան կոմիտեն հատուկ գնացք է ուղարկում սահմանամերձ Կարաուրգան կայարանը՝ այնտեղից հեղափոխական զինվորներին և գծի ուղեմասի բանվորներին ու ծառայողներին Սարիղամիշ բերելու համար: Մայիսի

յան ժամը 4-ին ապստամբ զինվորների մի ջոկատի գլուխն անցած Լ. Մխչյանը զինաթափում և հսկողություն է սահմանում նրանց վրա: Նույն ջոկատը ժամը 5-ին գրավում է Ամերկոմի շենքը և ձերբակալում մի խումբ դաշնակների: Լ. Մխչյանը ղեկավարում է նաև այն ջոկատը, որը գրավեց քաղաքային վարչության շենքը, ուր դաշնակցության կոմիտեն ապստամբների հարձակման մոմենտին գումարել էր նիստ և քննարկում էր ստեղծված իրավիճակը:

Իր հանձնարարությունները հաջողությամբ է կատարում նաև կայարանում գործող բանվորական կարմիր գվարդիայի ջոկատը՝ Ս. Հովհաննիսյանի ղեկավարությամբ: Առանց աղմուկի զինաթափելով կայարանի միլիցիան, այն գրավում է կայարանի շենքը, հեռագրատունը, դեպոները և ամբողջովին վերահսկում կայարանի շրջանը: Գրավվում են արդյունաբերական օբյեկտները: Դաշնակների դիմադրությունը ողջ քաղաքում ընկճված էր: Քաղաքում տեր ու տնօրենը ՌՀԿ-ն էր: Մայիսի 11-ին Սարիղամիշում հայտարարվում է սովետական իշխանություն: Վարչական շենքերի վրա ծածանվում են կարմիր դրոշները, փողոցներում պարեկային ծառայություններ են կատարում կարմիրգվարդիական բանվորներն ու զինվորները:

Իշխանությունը գրավելուց անմիջապես հետո Սարիղամիշի հեղկոմը Ալեքսանդրապոլ է ուղարկում իր ներկայացուցիչներին՝ Հայաստանի հեղկոմին զեկուցելու ապստամբության ընթացքի մասին և նրանից ցուցումներ ստանալու համար: Այստեղ նրանց կարգադրվում է խուսափել ձերբակալություններից և քաղաքացիական կռվի բորբոքումից: Այնինչ Սարիղամիշում արդեն սկսվել էին ձերբակալությունները:

Չսպասելով իր պատվիրակների վերադարձին, հեղկոմն իր մայիսի 12-ի նիստում քննարկում է 4-րդ գնդի սովետական իշխանությանը չհարած սպաների վարքագիծը: Հեղկոմի նախագահ Ս. Ճուղուրյանը առաջարկում է ձերբակալել նրանց: Այդ առաջարկությունը պաշտպանում են Կ. Գարագաշը, Ալ. Առաքելյանը և Վ. Գրիգորյանը. ձերբակալությունների դեմ հանդես են գալիս Լ. Մխչյանը, Լ. Նալբանդյանը, Ս. Հակոբյանը և Ս. Զմշկյանը: Նրանք համոզված էին, որ այդ սպաները շուտով կմիանան ապստամբներին և ավելորդ խստությունը միայն կվանի նրանց ապստամբությունից: Ցավոք, նրանք կարողանում են համոզել հեղկոմի մնացած անդամներին և, չնայած Ս. Ճուղուրյանի ու նրա համախոհների գործադրած ջանքերին, հեղկոմն ընդունում է իր համար ճակատագրական նշանակություն ունեցող սխալ որոշում՝ չձերբակալել վերոհիշյալ սպաներին: Օգտվելով հեղկոմի այդ բարեհոգությունից, ռեակցիոն սպայությունը սկսում է հակասովետական ագիտացիա մղել զինվորների մեջ և կողմնակիցներ հավաքագրել՝ հեղկոմի իշխանությունը տապալելու համար: Այդպես է վարվում նաև ձերբակալությունից ազատ մնացած գնդապետ Միրիմանյանը: Սակայն, ՌՀԿ-ն նպատակասլաց և համարձակ գործողություններով կարողանում է ի չիք դարձնել ռեակցիայի բոլոր դավերը:

Զինված ապստամբության հաղթանակից անմիջապես հետո Սարիղամիշի հեղկոմն իրականացնում էր սովետական իշխանությունը: Կոմիսարները վերահսկում էին հիմնարկ-ձեռնարկությունների աշխատանքները, իսկ նոր նշանակված պետերն իրենք էին կազմակերպում արտադրությունը:

Իմանալով Կարսի ապստամբների ծանր վիճակի մասին, Սարիղամիշի հեղկոմը որոշում է օգնել նրանց: Պ. Կուխմալայկինի ղեկավարությամբ անմիջապես պատրաստվում է մի զրահագնացք՝ բաղկացած շոգեքարշից, չորս վագոններից, որոնք ավազե միջնորմներով անվտանգ էին դարձված, ութը գնդացրից և քառասուն զինվորներից: Զրահագնացքը մայիսի 13-ին շարժվում է դեպի Կարս, բայց քաղաք մտնել չի հաջողվում, քանի որ դաշնակները Բեգլի Ահմեդ կայարանի մոտ գիծը քանդել էին, դրանով իսկ կտրելով Սարիղամիշը ապստամբական մյուս շրջաններից:

Մայիսի 15-ից Սարիղամիշի ապստամբների համար սկսվում է նոր ժամանակաշրջան: Իմանալով Ալեքսանդրապոլում և Կարսում ապստամբության ճնշման լուրը, գնդապետ Միրիմանյանը բանտից ազատում է հեղկոմի հրամանով ձերբակալված դաշնակցականներին, այդ թվում նաև Սարիղամիշի դաշնակցական կոմիտեի անդամներին: Նա նույնիսկ բանակցություններ է վարում ՌՀԿ-ի հետ ապստամբությունը խաղաղ կերպով լիկվիդացնելու ուղղությամբ, սակայն, չնայած արտաքին աշխարհից կտրված լինելուն, ՌՀԿ-ն մերժում է անձնատուր լինելու մասին ամեն մի առաջարկություն և շարունակում է պահել իր իշխանությունը:

Այդ ամենից հետո, սակայն, փոխանակ ծավալելու հարձակողական գործողություններ, ձերբակալելու ապստամբների դեմ ուժեր կենտրոնացնող դաշնակներին ու նրանց գործակալներին, հեղկոմը համաձայնվում է գնդապետ Միրիմանյանի առաջարկին և մայիսի 17-ին խառը հանձնաժողովի կազմում Կարս է ուղարկում իր ներկայացուցիչներին՝ պարզելու Կարսի և Ալեքսանդրապոլի վիճակը: Հանձնաժողովը վերադառնում է մայիսի 18-ին և հայտնում, որ այդ քաղաքներում, իրոք, ապստամբությունը ճնշված է և զինվորներին ներում է շնորհված: Այդ լուրը բարոյալքում է տատանվող տարրերին: Շատ զինվորներ, որոնք ենթարկվել էին դաշնակների ագիտացիային, լքում են դիրքերը և անցնում կառավարության կողմը: Իսկ Սեպուհի պատժիչ ջոկատները մոտենում էին Սարիղամիշին: Ճգնաժամային վիճակ է ստեղծվում ապստամբների համար:



Ստեղծված վիճակը քննարկելու համար հեղկոմը մայիսի 18-ին հրավիրում է իր վերջին նիստը, որտեղ որոշվում է դադարեցնել դիմադրությունը և ինքնալուծարքի ենթարկել ՌՀԿ-ն: Այդ նիստում Վ. Գրիգորյանը առաջարկում է չհավատալ դաշնակների կեղծ խոստումներին, կռվով անցնել կայարանի ետևում ընկած անտառը և հեռանալ լեռները: Այդ առաջարկությանը միանում են միայն Վ. Բայբուրտյանը և Բորիս Արելը: Այս երեք ընկերները գիշերը ճեղքելով թշնամու օղակը, փորձում են դուրս գալ Նովո-Սելիմ գյուղը, բայց մոլորվում և անցնում են թուրքական սահմանը: Թուրք սահմանապահները անմիջապես ձերբակալում են նրանց և հանձնում զինվորական իշխանություններին: Նրանց մի քանի ամիս պահում են էրզրումի զինվորական բանտում և ենթարկում դաժան խոշտանգումների: Նրանք ազատվում են միայն երջանիկ պատահականության շնորհիվ. իմանալով, որ էրզրումում է գտնվում Սովետական Ռուսաստանի պատվիրակ Ուպմալը, նրանք մի կերպ հայտնում են իրենց վիճակի մասին և խնդրում են միջոցներ ձեռք առնել՝ իրենց կյանքը փրկելու համար: Ուպմալի միջնորդությամբ նրանք ազատվում են գերությունից և անցնում Բաքու:

Իսկ Սարիղամիշում դեպքերը տխուր վախճան ունեցան. մայիսի 19-ին հեղկոմի հրամանով ապստամբները թողեցին իրենց դիրքերը և հանձնվեցին դաշնակներին, իսկ հեղկոմը ինքնալուծարքի ենթարկվեց: Չնայած գնդապետ Միրիմանյանը նախօրոք բոլորին ներում էր հայտարարել, Սեպուհի ջոկատների քաղաք մտնելուն պես սկսվում են ապստամբության մասնակիցների մասսայական ձերբակալությունները: Դաշնակները սպանեցին Սարիղամիշի բանվորների սիրված ղեկավարներ, անվանի բոլշևիկներ Ս. Ճուղուրյանին, Պ. Մատիշկոյին, Ռ. Ոսկանյանին և Պ. Կուխմալայկինին: Սովետական Ռուսաստանի կառավարությունը 1920 թվականի օգոստոսի 26-ի նոտայում բողոքելով կոմունիստների նկատմամբ իրականացվող դաժան հաշվեհարդարի դեմ, դաշնակցական կառավարությանը լրջորեն զգուշացնում էր, որ նման գործողությունների շարունակումը կստիպի ՌՍՖՍՀ կառավարությանը՝ նույնանման գործողությունների դիմելու նրա այն քաղաքական գործիչների նկատմամբ, որոնք կհայտնաբերվեն ՌՍՖՍՀ-ի տերիտորիայում (ՀՍՍՀ ՊԿՊԱ. ֆ. 200, գ. 769, թ. 464):

Դաշնակցական կառավարությունը ստիպված դադարեցնում է կոմունիստների նկատմամբ կիրառվող ֆիզիկական հաշվեհարդարը, բայց նրանց դատապարտում է տարբեր ժամկետների ազատազրկման: Նրանք ազատվում են միայն Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո:

Մայիսյան ապստամբությունն առաջին մասսայական բանվորա-գյուղացիական հեղափոխական շարժումն էր Հայաստանում, որը ղեկավարվում էր կոմկուսակցության կողմից:

Մայիսյան ապստամբության իրադարձությունները Հայաստանում հանդիսացան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության անմիջական արձագանքը, որը կոչված էր կործանումից փրկելու մեր տառապյալ ժողովրդին և Լենինի կոչի համաձայն վարելու նրա կյանքը:

Մայիսյան ապստամբությունը քաղաքական մեծ դաս հանդիսացավ ոչ միայն բոլշևիկյան կուսակցության, այլև Հայաստանի աշխատավորական լայն խավերի համար:

Քննադատորեն վերլուծելով Մայիսյան ապստամբության դասերը, Հայաստանի կոմունիստական կուսակցությունը նոր ուժով ձեռնամուխ եղավ պայքարի կազմակերպմանը դաշնակցության ռեժիմի դեմ և Հայաստանի ապստամբ ժողովրդի գլուխն անցած՝ 1920 թ. նոյեմբերի 29-ին մեր երկրում հաստատեց սովետական իշխանություն:

# ԱՆՄՈՌԱՑ ՕՐԵՐ

## Լ. ՂԱԶԱՐՅԱՆ

*ՍՄԿԿ անդամ 1917 թ., բանվորների դեպուտատների Ղափանի սովետի նախկին նախագահ*

1917 թվականի պատմական իրադարձությունները իրենց հորձանուտի մեջ առան նաև Հայաստանի պրոլետարիատի պանծալի ջոկատներից մեկին՝ Ղափանի հանքագործներին ու պղնձաձուլական գործարանների բանվորներին: Փետրվարյան հեղափոխությունն անակնկալ չեղավ Ղափանի առաջավոր բանվորների համար: Գործակալներից ստացած հեռագրերից նրանք արդեն գիտեին երկրում հասունացող ճգնաժամի, ռազմաճակատներում ցարական զորքերի կրած պարտությունների, պարենային դժվարությունների, մայրաքաղաքի բանվորների հեղափոխական ընդվզումների մասին: Այնուամենայնիվ, ինքնակալության տապալումը մի իսկա-

կան տոնահանդես եղավ բոլորիս համար: Ցարի տապալման լուրը կայծակի պես տարածվեց բանվորության շրջանում: Նրանք թողեցին հանքերն ու գործարանները և շարժվեցին դեպի փոստ-հեռագրատուն՝ նոր տեղեկություններ ստանալու համար: Ահա այդտեղ էլ՝ փոստ-հեռագրատան առջև տեղի ունեցած հանպատրաստի միտինգում ես ընթերցեցի բոլոր այն նոր ստացված հեռագրերը, որոնցում նկարագրվում էին մայրաքաղաքի հեղափոխական իրադարձությունները:

Մենք այդ միտինգում բանվորներին կոչ արեցինք միշտ աչալուրջ լինել, ավելի սերտորեն համախմբվել բոլշևիկների կուսակցության՝ բանվոր դասակարգի գործին միակ հավատարիմ կուսակցության շուրջը և վճռական հակահարված տալ հեղափոխության թշնամիներին, որոնք այդ օրերին ձգտում էին վերականգնել ցարիզմը հանձին Միխայիլ Ռոմանովի:

Միտինգն ավարտվեց «Կեցցե՛ սոցիալիստական հեղափոխությունը», «Կորչի՛ պատերազմը» բացականչություններով: Որոշվեց հաջորդ օրը գումարել ավելի բազմամարդ միտինգ և աշխատավորությանը պարզաբանել տեղի ունեցող իրադարձությունների բուն իմաստը:

Եվ ահա հաջորդ օրը միտինգի էին եկել ավելի քան 3000 բանվորներ, գյուղացիներ և բնակչության այլ խավեր: Հետաքրքրական է, որ այդտեղ շտապեցին գալ նաև գործարանատերերի ու հանքատերերի ներկայացուցիչները՝ Խոջամիրովը, Մելիք-Փարսադանյանը, ֆրանսիական մետաղագործական ընկերության գլխավոր հաշվապահ Կլեբերը, Կունդուրով եղբայրների մետաղագործարանի կառավարիչ Ցետֆաչյանը և ուրիշներ:

Աշխատավորության այդ թշնամիներն ամեն կերպ պնդում էին, թե հեղափոխության հիմնական խնդիրը՝ ցարական ինքնակալության տապալումը, արդեն լուծված է, թե այժմ հարկավոր է համախմբվել «հեղափոխական» ժամանակավոր կառավարության շուրջը, բարձրացնել կարգապահությունը, աշխատանքի արտադրողականությունը և դրանով իսկ օգնել նոր կառավարությանը հաղթանակ տանելու արտաքին թշնամու դեմ: Նրանք ասում էին, թե ներքին կյանքի բոլոր հարցերի լուծումը պետք է թողնել մինչև պատերազմի հաղթական ավարտը:

Համանման ելույթներ ունեցան նաև ձեռնարկատերերի հլու սպասավորները՝ դաշնակները, էսեռներն ու մենշևիկները, որոնք հանդես էին գալիս բանվորների ջերմեռանդ պաշտպանների ու բարեկամների դիմակի տակ, զանազան պատմություններ էին հորինում իրենց որպես թե հեղափոխական վաստակի ու ցարիզմից կրած հալածանքների մասին, աշխատում էին բանվորներին համոզել, թե հեղափոխության շահերը պահանջում են պաշտպանել ժամանակավոր կառավարությունը և նրա քաղաքականությունը բոլոր հարցերում: Առանձնապես կուրյոզ էր խոշոր հանքատեր Խոջամիրովի ելույթը: Նա ամեն կերպ հավատացնում էր, թե ինքը հայ բանվորների ավագ եղբայրն է, անչափ սիրում ու հոգ է տանում նրանց մասին: Նրա այդ ելույթը, իհարկե, լոկ քրքիջ ու վրդովմունք հարուցեց լսողների մեջ: Բանվորների սուլոցների ու ծաղրական բացականչությունների տակ նա ստիպված էր հեռանալ միտինգից: Ժամանակավոր կառավարության պաշտպանությամբ հանդես եկան նաև մետաղագործական ընկերության հաշվապահ էսեռ Արտաշես Պարոնյանը, ուսուցիչ դաշնակ Հակոբ Տերունին: Սակայն բանվորները շատ լավ էին հասկանում նրանց խոսքերի բուն իմաստը և արհամարհանքով էին վերաբերվում:

Բանվորներն առանձնապես բուռն հավանությամբ դիմավորեցին բոլշևիկների հրակոտ ելույթները:

Բանվոր դասակարգը տապալել է ցարական ատելի իշխանությունը, ասում էինք մենք, որպեսզի ազատություն նվաճի ու բարելավի իր տնտեսական վիճակը, սակայն հեղափոխության թշնամիներն ամեն ինչ անում են հեղափոխության ընթացքը շեղելու և իրենց տիրապետությունը պահպանելու համար: Մեզ համար միանգամայն անընդունելի են ձեռնարկատերերի ու կամակատարների կեղծավոր կոչերը, քանի որ նրանք չեն նկատում անգամ մեր շրջանի բանվորության ծանր ու թշվառ կյանքը, նրանց տանջանքները: Մեր ուղին հիմնավորապես տարբերվում է դաշնակների ու մենշևիկների ցույց տված ուղուց: Մենք նախընտրություն ենք տալիս Լենինի կուսակցությանը, որը միայն կարող է ապահովել սոցիալիստական հեղափոխության հաղթանակը և ազատագրել աշխատավորներին կապիտալիստների ու կալվածատերերի լծից:

Մենք առաջարկություն մտցրեցինք ստեղծել բանվորների դեպուտատների սովետ, որը կպաշտպանի շրջանի բանվորության շահերը:

Հաջորդ օրը իմ աշխատանքի վայրը՝ հեռագրատուն եկավ Կունդուրովների գործարանի կառավարիչ Ցետֆաչյանն ու ասաց. «Մրսյո Ղազարյա՛ն: Մեզ վրա շատ ծանր տպավորություն է թողել ձեր երեկվա ելույթը: Դուք դրանով բանվորներին պայքարի եք կոչում մեր դեմ: Դա խախտում է աշխատանքային կարգապահությունը, անարխիա և սպառնալիք է ստեղծում արտադրության նորմալ կյանքի համար: Մենք խնդրում ենք լավ խորհել ու փոխել ձեր վարքագիծը»:

Ես նրան պատասխանեցի. «Ձեզ պահեք ձեր



խորհուրդները: Բոլշևիկները ոչ մի պայմանով չեն շեղվի իրենց ուղուց»:

Մենք մեծ հույսեր էինք դրել բանվորների դեպուտատների ապագա սովետի վրա: Մեր կուսբջջի հանձնարարությամբ տեղի բոլշևիկներն ու առաջավոր բանվորները գործարաններում ու հանքերում մեր կազմակերպության առաջադրած թեկնածուների օգտին ագիտացիոն լայն աշխատանք էին տանում բնակչության մեջ, որը դրական արդյունք տվեց ու ապահովեց մեր հաղթանակը ընտրությունների ժամանակ: Այսպես, սովետում ընտրված 36 դեպուտատներից 25-ը բոլշևիկյան ֆրակցիայի կայուն ու հուսալի հենարանն էին:

Սովետի առաջին նիստը կայացավ մարտի 19-ին: Այդ նիստում ընտրվեց նախագահություն 9 հոգուց, որոնցից 5-ը բոլշևիկ. Լ. Ղազարյանը (նախագահ), Ս. Համբարձումյանը (քարտուղար), Գ. Սուլթանովը, Ա. Պիրալովը և Ջալաբը, 2 դաշնակ (Խ. Դանիելյանը և Հ. Տերունին), մեկ էսեռ (Արտ. Պարոնյանը) և մեկ մենշևիկ (Արմ. Պարոնյանը):

Մենք պահանջեցինք օրակարգի գլխավոր հարց դարձնել բանվորների տնտեսական դրության բարելավման խնդիրը: Սակայն ձեռնարկատերերի արբանյակները՝ Արտ. Պարոնյանը և Հ. Տերունին կատաղի դիմադրություն ցույց տվեցին: Պարզ էր, որ նրանց ներկայությունը սովետում կարող էր խափանել մեր աշխատանքը: Սովետի դեպուտատների ճնշող մեծամասնությունը պաշտպանեց մեր առաջարկությունը և կազմալուծիչները խայտառակ կերպով վռնդվեցին նախագահությունից:

Շուտով սովետը 5 հոգուց մի հանձնաժողով ընտրեց, առաջարկեց նրան հինգ օրվա ընթացքում ուսումնասիրել բանվորների նյութական դրության բարելավման հարցը և ներկայացնել համապատասխան որոշման նախագիծ:

Բանվորներին քաղաքական ու տնտեսական ճնշումից ազատագրելու ուղղությամբ սովետի վճռական միջոցառումները նշանակալի չափով բարձրացրին նրա հեղինակությունն աշխատավորության աչքում:

Բայց դրա հետ մեկտեղ շահագործող ու հարստահարիչ տարրերը, բանվոր դասակարգի թշնամիները կատաղի վայնասուն բարձրացրին սովետի ու բոլշևիկյան կազմակերպության դեմ: Վախենալով իրենց շահույթները կորցնելուց, նրանք մեզ կազմալուծիչներ ու պրովոկատորներ էին անվանում: Նրանց կատաղությունը գագաթնակետին հասավ, երբ սովետը որոշում ընդունեց բանվորների աշխատավարձը 50 տոկոսով բարձրացնելու, աշխատաժամանակը 8 ժամ դարձնելու և բանվորների բնակվելու համար մի քանի տներ առանձնացնելու մասին:

Երբ ձեռնարկատերերը հրաժարվեցին կատարել բանվորների դեպուտատների սովետի այդ որոշումը, սովետը բանվորներին կոչ արեց գործադուլային պայքարի միջոցով պաշտպանել իրենց իրավունքները: Եվ ահա հզոր ցույցի ելան ու գործադուլ հայտարարեցին Բարաբաթումի հանքագործները: Նրանց օրինակին հետևեցին նաև մնացած հանքերի ու մետաղագործարանների բանվորները: Ոտքի ելան նաև հակահեղափոխության ուժերը: Այսպես, ժամանակավոր կառավարության կոմիսար Սմբատբեկ Մելիք-Ստեփանովը շտապ կարգով մոբիլիզացրեց տեղի առևտրականներին, դաշնակներին, կուլակներին ու այլ քաքփքուկների, որպեսզի ձերբակալի բանվորների դեպուտատների սովետի բոլշևիկ անդամներին ու ցրի սովետը, սակայն բանվորները հաստատակամորեն պաշտպանեցին իրենց ընտրովի օրգանը:

Մեր դեմ պայքարելու համար թշնամիները դիմում էին ամեն տեսակ ստոր միջոցների: Այսպես, Արտ. Պարոնյանը Անդրկովկասյան կոմիսարիատի հասցեով ուղարկեց մի կեղծ հեռագիր, որի մեջ գոյություն չունեցող գյուղացիական սովետի անունից պահանջում էր արտաքսել Ղազարյանին որպես բոլշևիկի ու պրովոկատորի: Այդ պահանջը նա փորձում էր հիմնավորել բանվորների ու գյուղացիների ընդհարումները կանխելու անհրաժեշտությամբ: Նման մի հեռագիր Թիֆլիս ուղարկեց նաև մեր փոստ-հեռագրատան պետ Բենեշը: Նա գրում էր. «Հեռագրիչ Ղազարյանը չի ենթարկվում ինձ, բանվորներին գրգռում է իմ դեմ: Կյանքիս վտանգ է սպառնում: Խնդրում եմ նրան տեղափոխել մեր գրասենյակից: Բենեշ»:

Սակայն բանվորների գործադուլը դրական արդյունք տվեց: Նրանց հիմնական պահանջները բավարարվեցին. աշխատավարձն ավելացվեց, իսկ աշխատաժամանակը կրճատվեց:

Ղափանի բոլշևիկներն առանձնապես ակտիվ աշխատանքներ ծավալեցին Վ. Ի. Լենինի Ապրիլյան թեզիսները ստանալուց հետո: Այդ պատմական թեզիսները հիմք ընդունելով, Ղափանի բոլշևիկներն ու բանվորների դեպուտատների սովետը մշակեցին գործողությունների կոնկրետ պլան, որով նախատեսվում էր արտադրության նկատմամբ բանվորական վերահսկողություն սահմանել, հեռացնել կապալառու կուլակներին, 8-ժամյա աշխատանքային օր սահմանել և այլն: Բոլշևիկների առաջադրած մարտական ծրագիրը, իհարկե, չէր կարող դուր գալ ձեռնարկատերերին, որոնք առանց այդ էլ խիստ չարացած էին իրենց առաջին զիջումից հետո: Դաշնակները գավառի կենտրոնից կանչեցին իրենց «տղերքին» ու լայն կամպանիա ծավա-

լեցին մեր դեմ: Նրանք պնդում էին, թե իշխանությունը բանվորների կամ «համշարիների» (այսպես էին նրանք կոչում պարսիկ բանվորներին) ձեռքն անցնելուց հետո շրջանը կործանման եզրին կկանգնի:

Դասակարգային պայքարը սուր բնույթ էր ընդունել այդ օրերին: Տեղական իշխանությունները դաշնակների կոմիտեի հետ միասին պատրաստվում էին ձերբակալել սովետի և բոլշևիկյան կազմակերպության ղեկավարներին: Սովետի բոլշևիկյան ֆրակցիան էլ իր հերթին ամեն օր քննության էր առնում Ղափանի բանվորների թշնամիների դեմ մղվող պայքարի հարցերը: Կուսակցական բջիջը որոշեց ինձ ուղարկել Թիֆլիս մեր շրջանի իրավիճակի մասին կուսակցության երկրամասային կոմիտեին զեկուցելու և հրահանգներ ստանալու համար:

Թիֆլիսում ես ամենից առաջ եղա քաղաքի բոլշևիկյան կոմիտեի անդամ Ս. Սոլովյանի մոտ: Նա ինձ մանրամասն հարցուփորձ արեց մեր կուսկազմակերպության ու սովետի աշխատանքների մասին: Հաջորդ օրը ինձ տարավ «Պայքար»-ի խմբագրատուն և ծանոթացրեց բանվորների ու զինվորների դեպուտատների սովետի բոլշևիկյան ֆրակցիայի անդամներ Ասքանազ Մռավյանի և Սարգիս Խանոյանի հետ: Նրանք այդ ժամանակ պատրաստվում էին դուրս գալ թերթի խմբագրությունից, որն անցել էր մենշևիկների ձեռքը: Նրանք հանգամանորեն հրահանգավորեցին ինձ, այնուհետև մանդատ հանձնեցին բանվորների ու զինվորների դեպուտատների Թիֆլիսի սովետի անունից և առաջարկեցին վերադառնալ Ղափան ու շարունակել աշխատանքը: Ընկեր Խանոյանն ինձ տուն տարավ և այնտեղ մանրամասն պատմեց բոլշևիկների Թիֆլիսի կազմակերպության գործերի մասին: Զրույցի ժամանակ նա հաճախ մոտենում էր գրապահարանին, վերցնում Վ. Ի. Լենինի բրոշյուրները և իր մտքերը հաստատում հանճարեղ առաջնորդի աշխատություններից բերած քաղվածքներով: Ս. Խանոյանի հետ ունեցած այդ զրույցը խոր, անջնջելի տպավորություն թողեց ինձ վրա:

Հաջորդ օրը Ս. Սոլովյանն ինձ տարավ Թիֆլիսի բոլշևիկների համաքաղաքային ժողովը, որտեղ ես առաջին անգամ ծանոթացա երկրամասային կոմիտեի մի քանի ղեկավարների՝ Մ. Ցխակայայի, Մ. Օրախելաշվիլու, Ֆ. Մախարաձեի, Հ. Նազարեթյանի և այլոց հետ: Թիֆլիսում առիթ ունեցա հանդիպելու նաև իմ հին ընկերներից մեկին՝ Գ. Գոձեին, որի հետ միասին դեռևս 1910 թվականին մասնակցում էինք Կաղզվանի մարքսիստական գաղտնի խմբակին: Բայց, ավա՜ղ, իմացա, որ նա հարում է մենշևիկներին, և մենք ընդմիշտ բաժանվեցինք իրարից որպես գաղափարական հակառակորդներ:

Արդեն մի քանի օր էր, ինչ վերադարձել էի Ղափան: Մեր կուսկազմակերպությունը հրավիրեց բանվորական միտինգ: Դաշնակներն ամեն ինչ արեցին միտինգը խափանելու համար: Սակայն բանվորները այդ միտինգում ընդունած բանաձևում դատապարտեցին դաշնակների ու համաձայնողական կուսակցությունների վարքագիծը և իրենց հավատարմությունը հայտնեցին լենինյան կուսակցությանը:

Այս առթիվ Ստեփան Շահումյանի խմբագրությամբ Բաքվում լույս տեսնող «Սոցիալ դեմոկրատ» թերթը գրել է. «Զանգեզուրի բանվորների վճիռը խրախուսելի է, ողջունելի: Միայն սոցիալ դեմոկրատական կուսակցության դրոշի տակ կազմակերպվելով բանվորությունը կարող կլինի բուրժուազիային ու ազնվականներին տալ մահացու հարված» («Սոցիալ դեմոկրատ» № 5, 1917 թ. հունիսի 17):

Սակայն Ղափանի բանվորներին ու նրանց սովետին չհաջողվեց 1917 թվականի այդ օրերին իրենց ձեռքը վերցնել իշխանությունը: Ճիշտ է, նրանց մարտական ոգին բավական բարձր էր, սակայն շրջանը հեռու էր արդյունաբերական խոշոր կենտրոններից ու շրջապատված էր թշնամական ուժերով: Ահա այդ պայմաններում բանվորների թշնամիներին հաջողվեց ձերբակալությունների ու այլ ռեպրեսիաների միջոցով կազմալուծել սովետի աշխատանքը:

Բայց և այնպես Ղափանի բանվորների հերոսական պայքարը, նրանց դեպուտատների սովետի գործունեությունը զուր չանցան: Ամենագլխավոր արդյունքն այն էր, որ աշխատավորության մեջ տարածվեց սովետական իշխանության ու պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարը:

Դաշնակների տիրապետության մղձավանջային օրերը չընկճեցին Հայաստանի աշխատավորության կամքը և նրանք, հեղափոխական պայքար մղելով Լենինի պանծալի դրոշի ներքո, 11-րդ կարմիր բանակի օգնությամբ հաղթանակի հասան 1920 թվականի նոյեմբերի 29-ին: Սովետական իշխանությունը ո՛չ միայն փրկեց հայ ժողովրդին ֆիզիկական բնաջնջումից, այլև ապահովեց նրա էկոնոմիկայի, կուլտուրայի ու հոգևոր կյանքի աննախընթաց ծաղկումը:



# Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

«...Սիրտս ուռչում է հպարտությունից, որ բոլշևիկ եմ, **կոմունիստ**, լենինյան կազմակերպության անդամ»:

«Սովորել ամեն ինչին, նույնպես և արվեստին ու գրականությանը մոտենալ **ամենից** առաջ **պրոլետարիատի** դասակարգային պայքարի, նրա վերջնական հաղթանակի և **համամարդկային** հեգեմոնիայի տեսակետից — ահա՛ հիմնականը»:

ՉԱՐԵՆՑ

ՀՈՎՀ. ՂԱԶԱՐՅԱՆ

## ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՀԱՆՃԱՐԵՂ ԵՐԳԻՉԸ

### Ե. Չարենցի ծննդյան 70-ամյակի առթիվ

*Սոցիալիստական մեծ հեղափոխության օրերին հայ գրականության հորիզոնի վրա բարձրացավ Եղիշե Չարենցի պոետական խոշոր կերպարը:*

*Երբ Թումանյանը, Իսահակյանը, Տերյանը դեպի Հոկտեմբերը եկան իբրև քննադատական ռեալիզմի խոշորագույն ներկայացուցիչներ, երբ Հակոբյանը, Կուրղինյանը այդ քայլը կատարեցին որպես հայ պրոլետարական պոեզիայի ստեղծողներ, ապա Չարենցը բացառապես ծնունդ է Հոկտեմբերյան հեղափոխության, նրա գրական-քաղաքական հայացքները ձևավորվեցին միայն սոցիալիստական հեղափոխության գոտեմարտերում:*

*Խոսելով պատմության, առանձնապես հեղափոխությունների պատմության մասին, Լենինը ամբողջ խորությամբ ընդգծում է այն մեծ ճշմարտությունը, որ այն միշտ ավելի հարուստ է բովանդակությամբ, ավելի բազմազան և բազմակողմանի, քան այդ երևակայում են լավագույն կուսակցությունները, առաջավոր դասակարգերի ամենագիտակից ավանգարդները: «Եվ դա հասկանալի է,—ասում է նա,—որովհետև լավագույն ավանգարդներն արտահայտում են տասնյակ հազարների գիտակցությունը, կամքը, ավյունը, ֆանտազիան, իսկ ռևոլյուցիան իրագործում են մարդկային բոլոր ընդունակությունների հատուկ վերելքի և լարվածության մոմենտներին, դասակարգերի ամենասուր պայքարից խթանված տասնյակ միլիոնների գիտակցությունը, կամքը, ավյունը, ֆանտազիան» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 102):*

*Չարենցի ստեղծագործությունը 1917—21 թվականներին խորապես արտահայտում է, ահա, «մարդկային բոլոր ընդունակությունների հատուկ վերելքի և լարվածության» այդ ժամանակաշրջանը, «դասակարգերի ամենասուր պայքարից խթանված տասնյակ միլիոնների գիտակցությունը, կամքը, ավյունը, ֆանտազիան», ինչպես բանաստեղծն է իսկությամբ ինքնաբնորոշում.*

Իմ բազմամիլիոն, բյուր ընկերների
Խինդը այսօրվա ու թռիչքը մեծ...

Ահա ինչու կարելի է հաստատապես ասել՝ Չարենցի ստեղծագործությունը նոր որակ է հայ բազմադարյան գրականության մեջ, ամենաամբողջականը, ամենակատարյալը, ամենաբազմակողմանին և ամենաուժեղը սովետահայ պոեզիայում։

Ահա ինչու իր ժամանակին մեծ բերկրանքով էր այդ ճշմարտությունը գրական աշխարհին ազդարարում հասարակական ականավոր գործիչ, սովետահայ ականավոր գրականագետ Պողոս Մակինցյանը. «Չարենցը,— ասում էր նա բանաստեղծի երկերի ժողովածուի 1922 թվականին լույս տեսած երկհատորյակի մասին իր գրախոսականում,— հեղափոխության և հեղափոխական պայքարի երգիչն է։ Եվ այդ շրջանը, թերևս, Ռուսաստանի և ոչ մի պոետի արտադրությունների մեջ այդպիսի պայծառ ու վառ արտահայտություն չի գտել, որքան Չարենցի երկերում։ Նրա տողերի, նրա պատկերների մեջ կա պայքարի պահի էներգիան, հոգու թափ ու թռիչք։ Նախորդ շրջանի վհատ ու վարանոտ տրամադրությունները, փափուկ ու փխրուն զգացումները, անորոշ երազկոտությունը տեղի է տալիս նոր կենսազգացումի՝ առույգ ու առողջ ապրումների, հաստատ հավատով ջերմացած մարտական տրամադրության» («Նորք», 1922, № 1, էջ 298)։



Տասնհինգ տարեկան պատանի Չարենցը գրական կյանք է մտնում առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին՝ հարուստ, կենսավառ զգացմունքներով ու երազներով։ Նրա առաջին բանաստեղծությունը՝ «Ծաղիկները հեզ թեքվում են քամու օրորի տակին», տպագրվում է 1912 թվականին, Թիֆլիսում, «Պատանի» ալմանախում, Եղիշե Սողոմոնյան ստորագրությամբ, առաջին գրքույկը՝ «Երեք երգ տխրադալուկ աղջկան», 1914-ին, Կարսում։ Չարենցի ստեղծագործական առաջին իսկ փորձերը զուգադիպում են առաջին համաշխարհային պատերազմի արհավիրքներին, հայկական կոտորածների մեծ ողբերգությանը։ Բանաստեղծի հոգու ինքնաբուխ խնդությունը փոխվում է տառապալից վշտի, սերը դառնում «արցունք ու արյուն»։ Նա տենչում է արև, բայց նրա շուրջը փռվում է խավարը.

Գիշերը ամբողջ հիվանդ, խելագար,
Ես երազեցի արևի մասին...
Բայց շուրջս այնպես գունատ էր, տկար—
Խոսքեր չկային ու արև չկար...

«Որբ, արնաքամ ու ավերակ» երկրի մորմոքը հոգում բանաստեղծը երազում էր «կապուտաչյա հայրենիքի» լուսավոր ապագայի մասին, հավատացած, որ «կլինի հազար ծիծաղ ու խնդում» («Կապուտաչյա հայրենիք», 1915)։ Հայրենիքի ազատության տենչը հոգում, իբրև կամավոր, Չարենցը պատանեկան ամբողջ եռանդով 1915 թըվականին նետվում է ռազմաճակատ։ Իմպերիալիստական պատերազմը, սակայն, փշրում է նրա գեղեցիկ երազները ապագայի մասին, իրականությունը նրա առջև կանգնում է իր դաժան մերկությամբ։ Բանաստեղծը տեսնում է պատերազմի դաշտում ընկած հայ ժողովրդի փրկության խորհրդանիշ Վահագնի արնաշաղախ դին. «Մեր կյանքի հիմերն անդունդը ընկան»,— ծանր կսկիծով ասում է նա («Վահագն», 1916)։

«Դանթեական առասպել» (1915—1916) պոեմը՝ Չարենցի նախահոկտեմբերյան շրջանի ամենախոշոր երկը, գրված է համաշխարհային պատերազմի ծանր տպավորությունների տակ։ Բանաստեղծին թվում է, թե կյանքը գեղեցիկ է, մարդուն ժպտում է ամեն ինչ, տալիս «թռիչքներ ու թև», պատերազմն է միայն խանգարում նրա երջանկությունը, խախտում կյանքի զարգացման բնական ընթացքը։ Տակավին նա չէր հասնում պատերազմի սոցիալական էության ընկալմանը, չէր տեսնում դեմ առ դեմ կանգնած դասակարգերին, նրանց անհաշտ պայքարը։ Մասնակցելով պատերազմին, անձամբ կրելով նրա դառնությունները՝ ականատես դժոխային տեսարաններին, Չարենցը ամբողջ հոգով ատում է այն, ծառանում նրա դեմ.

Ինչո՞ւ է երազն այս աշխարհավեր
Կախվել մեր գլխին այսպես կուրորեն:
Ինչո՞ւ են փռում այսքան ցավ, ավեր,
Հողմերը այս չար ե՞րբ պիտի լռեն:
Եվ ո՞վ է լարում այսպիսի դավեր—
Կյանքը դարձնում նկովյա՛լ գեհեն:

Չտեսնելով ելք՝ բանաստեղծը կանգնում է փակուղու առաջ։ Նրան թվում է, թե հոների արքա Աթիլլայի կերպարը իբրև ավերածության ու մահի սիմվոլ եղե՛լ է, կա՛ և կլինի «անհերքելի ու հավերժական» («Աթիլլա», 1916)։

Հոկտեմբերյան հեղափոխությունը հարյուր-հազարների հետ Չարենցին դուրս բերեց այդ փակուղուց։ Ինչպես Բլոկը, Բրյուսովը, Տերյանը, նա ևս անվերապահ եկավ դեպի հեղափոխությունը, միայն նրա մեջ տեսավ իր ժողովրդի փրկությունը, ապագան։ Կամավոր Չարենցը դարձավ կարմիր զինվոր Ցարիցինում, Հյուսիսային Կովկասում՝ 1917 թվականից մարտնչելով սովետական երիտասարդ պետության թըշնամիների դեմ, խոր ըմբռնեց հեղափոխության համաշխարհային նշանակությունը։

Հոկտեմբերյան բախտորոշ իրադարձություններին ականատես ու մասնակից բանաստեղծը այդ տպավորությունների անմիջական ազդեցության տակ էլ 1917—1921 թվականներից ստեղծում է հեղափոխությունը խորապես արտացոլող իր մի քանի նշանավոր պոեմները՝ «Սոմա», «Ամբոխները խելագարված», «Դեպի ապագան», «Բրոնզե թևերը կարմիր գալիքի», «Երգ ժողովրդի մասին», «Ամենապոեմ», ինչպես նաև «Ողջակիզվող կրակ», «Տաղարան», «Էմալե պրոֆիլը Ձեր», «Փողոցային պչրուհուն» բանաստեղծությունների ու բալլադների շարքը և այլ երգեր («Վահան Տերյանի հիշատակին», «Կարմիր սոնետ», «Աստղիկ», «Մահվան տեսիլ», «Մորս համար գազել», «Ութնյակներ արևին»)։

Սոցիալիստական հեղաշրջումը պայծառ հորիզոններ էր բացում, Չարենցի հոգին լցնում մեծ կենսազգացողությամբ, հեղափոխական այրող խոհերով ու զգացմունքներով՝ «էլեկտրական բորբ հոսանքներով»։ «Կրա՜կ կա սրրտիս մեջ, կրա՜կ կա»,— ասում է նա իր բանաստեղծություններից մեկում։ Եվ այդ կրակված հոգով էլ որոնում էր նոր մոտիվներ, արտահայտչական նոր ձևեր ու պատկերներ, որոնում նոր օրերի նոր երգը.

Հնչում են օրերը, կանչում են
Օրերը կարմիր ու բոսոր...

«Ազգային երազ» (1917 դեկտեմբեր—1918 փետրվար) երգիծական-ողբերգական պոեմը, կարելի է ասել, Չարենցի գաղափարական-գրական հայացքների զարգացումն ու բեկումը հատկանշող գեղարվեստական առաջին երկն է։ Պոեմն արտահայտում է նրա այն խոր համոզմունքը, որ հայ ժողովրդի փրկիչները բախտախնդիր դաշնակները չեն, հենց նրանք են իրենց կույր քաղաքականությամբ ժողովրդին մղում դեպի կործանում։ Պոեմը հագեցած է արևմտահայերի «աշխարհասասան» ողբերգությունը ներկայացնող մռայլ պատկերներով։

Կրա՜կ է այնտեղ, ու հրդեհ, ու մահ...

«Ազգային երազ» պոեմում, սակայն, Չարենցը տակավին չի նշմարում հայ ժողովրդի ազատագրության ուղին։ Բանաստեղծին այդ հաջողվում է 1918 թվականի հունիս-հուլիսին, կարմիր բանակում ստեղծած «Սոմա», «Ամբոխները խելագարված», այնուհետև 1919—1921 թվականների մի շարք այլ պոեմներում ու երգերում։

Չարենցի քաղաքական-գրական հայացքների ձևավորումն ու ստեղծագոր-

ծական զարգացումը կատարվեցին սրընթաց ու թռիչքաձև։ Նոր կյանքի, համաշխարհային նշանակություն ունեցող սոցիալիստական հեղափոխության իրադարձությունների ընդգրկման նրա դիապազոնը դարձավ լայն, ստեղծագործական շունչը՝ մեծ։ «Աշխարհը մի նո՜ր երգով է հղի»,— ասում է նա։ Եվ նրան վիճակվեց արտահայտել այդ նորի զգացման պոետական ճշմարտացի համապարփակ պատկերը.

Ռադիո-կայան է իմ հոգին հիմա
Ամբո՛ղջ աշխարհի ու մարդկանց հանդեպ.
Ու բա՛րձր է, բա՜րձր է կայանն իմ հոգու՝
Մասիսի նման բա՛րձր է ու հաստատ—
Հզո՛ր, ահարկո՛ւ:

Օրերում այս վառ, հողմավար, շփոթ—
Հեռու ու մոտիկ միլիոն սրտերի
Ե՜րգն է վիճակվել ինձ երգել այսօր.
Իմ բազմամիլիոն, բյուր ընկերների
Խինդը այսօրվա ու թռիչքը մեծ...

Բանաստեղծի այս կենսաշունչ զգացմունքները որոշակի արտահայտություն են ստանում «Սոմա» պոեմում։ Ազատության աստվածուհու՝ Սոմայի կերպարում Չարենցը մարմնավորում է մարդկային ազատագրական դարավոր տենչերը։ Սոման բանաստեղծին ներկայանում է իբրև ազատության բովանդակ խորհրդանիշ՝ «սրբազան... սեր».

Օ, Սրբազան հա՜րս դու ապատության,
Դու—ապատո՜ւթյուն...

Չարենցը դիմում է հեռավոր ընկերներին ու եղբայրներին, նրանց կանչում ու կոչում է դեպի Հոկտեմբերը՝ «աշխարհային հրդեհների» սրբազան բոցը, ազդարարում է հեղափոխության համաշխարհային նշանակությունը.

Սոմա՜, աշխարհում թող կամքդ լինի
Տիեզերական:

Եթե «Սոմա» պոեմում մասսաների հեղափոխական տրամադրությունները մարմնավորվում են ազատության հերոսական-հաղթական աստվածուհու ռոմանտիկ կերպարում, ապա «Ամբոխները խելագարված» պոեմում տրվում է ազատության համար մարտնչող հեղափոխական զանգվածների հերոսական-ռեալիստական պատկերը։

Հեղափոխությունը կատարում են սոցիալական բազմատարր զանգվածները՝ տառապած ու ըմբոստացած բանվորները, գյուղացիները, արհեստավորները, մտավորականները՝ «ամբոխները խելագարված», բարիկադներում հեղափոխության բախտը որոշող համաժողովրդական ինքնաճանաչ ուժերը, դրանով իսկ դառնում հզոր և անպարտելի։

Եթե ուզեն՝ արևներին նոր տե՛մպ կըտան
ու նոր ուղի...
Եթե ուզեն՝ արեգակնե՜ր կշպրտեն
երկինքն ի վեր.
Եթե ուզեն՝ վա՛ր կըբերեն երկնքներից
արեգակներ...
Եթե ուզեն՝ կամքով արի ու աշխարհի
հրով վառված—
Ինչե՜ր միայն չեն կատարի
ամբոխները խելագարված...

Չարենցի ամբոխ-ժողովուրդը նոր որակ է, կարող է պետություններին թելադրել և թելադրում է իր կամքը։ Նա այլևս թշվառ, անդեմ ու պասսիվ ամբոխը չէ, այլ պատմության ընթացքը, սոցիալիստական հեղափոխության բախտը որոշող ուժ։

«Ամբոխները խելագարված» պոեմն ստեղծված է խոր ներշնչանքով, հեղափոխության տարերքը, ռոմանտիկան ցոլացնող անկրկնելի և շլացուցիչ պատկերներով։ Ամբոխները խելագարված փոխաբերական պատկերում բանաստեղծը խտացնում է հեղափոխության բազմամիլիոն-բազմազգ ժողովուրդների խելահեղ ուժը, ինչպես հայ ժողովուրդը իր անմահ էպոսում իր խիզախ զավակներին՝ Սասնա ծռեր թևավոր արտահայտության մեջ։

Լիակատար ուժով, գեղարվեստական մեծ ճշմարտացիությամբ բանաստեղծը արտահայտում էր հոկտեմբերյան տեղաշարժերը, սոցիալիստական մեծ հեղափոխության համաժողովրդական բը-





նույթը, իր երգերն ու պոեմները ողողում շիկացած հայրենասիրությամբ, օրգանապես միահյուսում ինտերնացիոնալ և ազգային իր այրող խոհերն ու զգացմունքները։ Նա մարտնչում էր ամենից առաջ հանուն իր ժողովրդի փրկության, որը բնաջինջ էր լինում բարբարոս Թուրքիայի կրնկի տակ։ Ահա ինչու Չարենցի պոետական խոսքը դառնում էր գերզգայուն, դառնակսկիծ, դառնում առավել նպատակասլաց, տոգորված հեղափոխության մեծ պաթոսով և ուժով, դառնում զորեղ իր ազդեցությամբ։ Ահա ինչու ազգային մեծ հպարտությամբ ի լուր աշխարհի՝ «բոլորի՛ն, բոլորի՛ն, բոլորի՛ն» հնչում էր բանաստեղծի հզոր ձայնը՝ ուղղված հին աշխարհի դեմ գրոհող կարմիր զորամասերին՝ արտահայտելով հեղափոխությանը մասնակցելու հայ ժողովրդի մեծ պատրաստակամությունը.

Եվ ո՞վ, ո՞վ կասի՝
Նետե՞լ է արդյոք մեկը աշխարհում
Այսօրվա կարմի՛ր, կարմիր ձեր՝ երթին
Ողջույն-ավելի՛ առնական, արի,
Քան ողջույնը քո, երկիր արնաքամ,
Կարմի՛ր Նաիրի...

Չարենցի հայրենասիրությունը հասնում է մի բոցավառ, մի ջերմեռանդ սիրո։ Իր «ավերակ ու արնաներկ», բայց «անուշ Հայաստանը» փրկելու համար նա պատրաստ էր, Խաչատուր Աբովյանի պես, իր գլուխը մահուն տալ. «Թող ոչ մի զոհ չպահանջվի ինձնից բացի»,— արհավիրքի ծանր օրերին հնչում էր նրա սրտակեղեք, բայց մարտաշունչ ու հեսանող ձայնը։ Եվ նրա հայացքն ուղղվում էր դեպի փրկարար Ռուսաստանը.

Նայի՛ր մի պահ քո հրե աչքերով պվարթ
Դեպի երկի՛րը իմ մութ, իմ երկիրը մառ...

Չարենցը խորապես հավատում էր իր ժողովրդի հաղթանակին, իր երկրի վերածնությանը։ «Կբարձրանա մշուշից մանկաժպիտ... Արան» («Շամիրամ»), —այլաբանորեն ասում է նա։

Այդ վսեմ ու անկասելի զգացմունքն է, որ պոետին մղում էր ստեղծագործական մեծ խիզախումների։ Հակադրվելով բուրժուական կյանքի հիվանդոտ երգիչներին, նրանց լուսնոտ, «սիրով անկիրք ու մեղկ, սրտով մեռած ու խեղճ» երգերին, իր «Աստղիկ» բանաստեղծությամբ Չարենցը դիմում էր Աստղիկին իբրև անաղարտ ու բոցեղեն սիրո աստվածուհու, իբրև մեծ հեղաբեկումների ու մարդկային ամենակարող ուժի խորհրդանիշի, ինքն էլ դառնում բոցեղեն սիրո, սոցիալական մեծ հեղաբեկումների ու նոր կյանքի շեփորահար.

Շեփո՛րն եմ ես կյանքի՝ համակ
կորով ու ուժ,
Շեփո՛ր եմ ես ահեղ՝ մի նո՛ր
կյանքի երգիչ։

«Ամենապոեմում» Չարենցը հասնում է հասարակական-քաղաքական կյանքի ընդգրկման մեծ դիապազոնի, ստեղծում համաշխարհային պատերազմի վիթխարի դինամիկան, մասսայական տեսարանները, հեղաբեկումների մեծ էպոխան ներկայացնող գեղարվեստական ճշմարտացի կտավ, ստեղծում պոեմի յուրահատուկ կառուցվածք, պատկեր ու կերպար, լեզու և հարուստ բանատող։

Բանաստեղծը պարզորոշ տեսնում է պատերազմի ընթացքն ու վախճանը, բացահայտելով նրա դասակարգային էությունը՝ ցույց է տալիս, թե ինչպես սոցիալիստական հեղափոխությունը փակում է իմպերիալիզմի արյունոտ ուղին, ժողովուրդների պատմության մեջ բացում նոր դարագլուխ՝ ազատագրության, խաղաղ-ստեղծագործական կյանքի դարագլուխը։

Հինավուրց Կրեմլի վրա խոյանում ու ծածանվում է հեղափոխության հաղթական դրոշը, Մոսկվան բովանդակ հողագնդով ազդարարում է.

— Ելի՛ր, սովալլուկ մարդկության
Անեծքով գերված աշխարհ...

Այդ ձայնին արձագանքում է նաև հայ ժողովուրդը, Նաիրյան դաշտով անցնում են «Կարմիր... մրրիկներ»։ Հոկտեմբերյան նվաճումների մեջ Չարենցը ներկայացնում է հայ ժողովրդի ազատագրումը, միջազգային իրադարձությունների մեջ՝ ազգայինը.

— Անցնո՛ւմ էր դարերի միջից
Մի հսկա բյուրանուն Պողոս...

Աշխատավոր պողոսները նորոգում, փոխում են դարավոր կյանքը. «Շինվում է աշխարհը հիմա...»։ Մարդկության համար բացվում են գալիքի արևվառ հեռաստանները։

Ես ասում եմ՝ աշխարհը կդառնա
Մի հանո՛ւր խնդության փողոց...,—

հնչում է հեղափոխության մեծ կյանքով ապրող, հեղափոխության համար մարտնչող մեծ քաղաքացի-բանաստեղծ Չարենցի հաստատուն ձայնը։

Չարենցի պոեզիայի խոր հեղափոխական բնույթը 1917—1921 թվականներից նրան, մյուս կողմից, հետզհետե հեռացնում էր ակնհայտ սիմվոլիստական պոետիկայից, մղում դեպի սոցիալիստական ռեալիզմի բարձունքները, ազգային գրականության, ինքնուրույն արվեստի խորունկ հունը։

Հաղթահարելով «Հավերժական կապույտին» միտող իր վաղ շրջանի դեգերումները՝ Չարենցը դարձավ նոր կյանքի և նոր գրականության պատգամախոս։

***

Ամայացած, բայց հարազատ հողի վրա, ազատագրված ու պետականություն նվաճած Սովետական Հայաստանում հայ ժողովուրդը պետք է կառուցեր իր նոր կյանքը, ստեղծեր իր նոր տնտեսությունը, հոգևոր մշակույթը, զարգացներ իր ազգային հանճարը և գեղարվեստական իր նոր խոսքն ասեր աշխարհին։

Սակայն, ինչպես պետք էր սպասել, 20-ական թվականներին, թշնամական դասակարգերի առկայության պայմաններում, ծավալվում էր սուր պայքար հնի ու նորի միջև՝ ազգային նոր գրականության ու արվեստի ձևավորման ճանապարհին։

Տարված սոցիալիստական նոր կյանքը հաստատելու, հինը մերժելու, նէպի շրջանում աշխուժացող բուրժուազիայի դեմ պայքարը ծավալելու ազնիվ խանդով, ստեղծագործական իրենց որոնումների ճանապարհին, սակայն, մեր գրողները երբեմն մոլորվում էին, շփոթում ազգայինը և ազգայնականությունը (նացիոնալիզմը), հնացած, վնասակար ավանդներից հրաժարվելու անհրաժեշտ պահանջը և դասական հարուստ ժառանգության կենսական հարցերը։

Իրոք մտահոգված պրոլետարական, նույնն է՝ սովետահայ գրականության ստեղծման խնդրով, «Երեքը»՝ Չարենցի, Վշտունու, Աբովի գրական խմբակցությունը, ձգտելով «քաղքենի նացիոնալիզմին» հակադրել «պրոլետարական ինտերնացիոնալիզմը», իրենց դեկլարացիայում (1922) մերժում էին դասական ժառանգությունը. «Կորչեն գրադարաններում ննջող գրքերը»,— կտրուկ ասում էին նրանք։

Սովետական մարդկանց կենսատրամադրությունները արտահայտելու, ժամանակակից գրական հարցերը լուծելու համար Չարենցը ձևով ու բովանդակությամբ հնացած և անզոր էր համարում Թումանյանի, Իսահակյանի, Տերյանի, ինչպես և Հակոբյանի գրական ժառանգությունը։ «Հովհ. Թումանյանի բանաստեղծությունն իր նահապետական հոգեբանությամբ,— ասում է նա, —ոտից-գլուխ մի կենդանի անախրոնիզմ է եղել վերջին տասնամյակի ընթացքում։ Նա վաղուց դադարել է գրական հրապարակ ելնող նոր սերունդների համար կենդանի խոսք լինելուց»։

Ելնելով արվեստի «զուտ դասակարգային օգուտից», արվեստը հեղափոխության շահերին «անմիջական սպասավոր» դարձնելու սկզբունքից, Չարենցը պահանջում էր՝ արվեստը զրկել իր բուն՝ արտացոլող հատկանիշից, գեղարվեստական երկը՝ հոգեբանությունից ու կենցաղից։ «Արվեստը ոչ թե պետք է արտացոլի, այլ պայքարի», իբրև առաջնորդող սկզբունք առաջադրում էր նա, արվեստն իր առանձնակի դիրքից իջեցնելով թերթային ագիտկայի մակարդակին, ուղղակի անտեսելով հասարակական կյանքը, մարդկային բարդ փոխհարաբերությունները, հոգեբանությունն արտացոլող և միաժամանակ ներգործող արվեստի հասարակական հզոր ուժը։

Նա ուղղակի ասում էր. «Մենք պետք է կազմակերպված պայքար մղենք հին արվեստի տրադիցիաների դեմ», հակվելով դեպի տեխնիցիզմը, վերացականությունն ու արտահայտչական ծոմրոված ձևերը։ Մարդու «գերագույն դաշնակիցը» նա համարում էր իրը, նախընտրում «սրտի փոխարեն շոգին»՝ մարդուն ստորադասելով մեքենային։ Մեքենան դառնում էր երևույթների մեկնաբանման ու գնահատման չափանիշ։

Որքան էլ բացահայտ ու խորն էին մոլորությունները, սակայն որոշողը, նոր կյանքն ավետող նրա գարնանաշունչ խոսքն էր, որը և հետզհետե թափանցում էր գրականության մեջ, դառնում տիրապետող ուժ. բնորոշը նիհիլիստական հոսանքին հակընթաց հզորացող այն կենսական շարժումն էր՝ ի դեմս հենց Չարենցի, Բակունցի, Մյասնիկյանի և շատ ուրիշների, որը դառնում էր ուղղություն տվող ուժ։

Ի հակադրություն «հայրենիք-տխեղերքի» անհող, «շինծու և անարյուն» գրականության, Մյասնիկյանն առաջադրում էր ազգային գրականության զարգացման սկզբունքը՝ «հայ գրականության պրոլետարականությունը կամ պրոլետարական գրականության հայկականությունը», ստեղծագործողի ուշադրությունը սրելով հայկական բնաշխարհի, հայ ժողովրդի ազգային կյանքի վրա, հեղափոխական անցյալի վրա։

Այս սկզբունքների գեղարվեստական կատարմամբ էր Չարենցը հասնում համաժողովրդական ճանաչման և, իբրև խորապես ազգային, խորապես ինտերնացիոնալ բանաստեղծ, համամարդկային խոհերով ու զգացմունքներով վեր բարձրանում, ճեղքում ազգային պատնեշները, դուրս գալիս համամիութենական, համաշխարհային արենա, Մյասնիկյանի արտահայտությամբ՝ «դուրս է ցցվում իր իրականությունից...»։

Ավելին, Չարենցը ենթակա էր կյանքի ավելի զորեղ ազդակների։ Մեծ Լենինի մահը, իբրև սովետական ժողովրդին հասած ծանր փորձություն, հին և նոր աշխարհի «հսկայական կոնտրաստի» խոր տպավորությունները, իբրև արտասահմանյան ուղևորության (1924—25) հետևանք, կոմունիստական կուսակցության գրականության մասին 1925 թվականի ուղենշային որոշումը, լենինգրադյան այցերը, հայ ժողովրդի իսկական վերածնությունը բախտորոշ ազդեցություն են ունենում Չարենցի զգացմունքների ու հայացքների վրա, նրան մղում ստեղծագործական նոր հայտնագործությունների և մեծ նվաճումների։

Համաշխարհային դասական արվեստի կախարդող ուժը նա տեսնում էր «դարաշրջանի տիրապետող դասակարգի հոգեբանությունը, տիրող մտայնությունը» արտահայտող պատկերների մեջ։ «Նրանց յուրաքանչյուրի ամեն մի գիծը, գույնը, երանգը,— ասում է բանաստեղծը «Վիշկայի» խմբագրությանն ուղղած իր 1925 թվականի նամակում, — բռնված, թաթախված է այդ մտայնությամբ... ընկի չես էլ իմանում, թե որտեղ է վերջանում նրանց այդ «դասակարգայինը» և որտեղ է սկսվում «համամարդկայինը»»։ Այս հայացքների ֆոնի վրա էլ լեֆիստական դատո-

ղությունները նրան թվում են իբրև ամենախիստ տեսակի բուրժուական մատերիալիզմ, վուլգարիզացիայի ենթարկված նիհիլիզմ: «Իսկ մենք ինչ էինք անում,— շարունակում է նա,— կարծում էինք աշխարհը կարող ենք նվաճել պլակատներով և ողորմելի ագիտկաներով... մեր ինտելիգենտական ողորմելի խելքով վերցնում էինք կենդանի բանվորներին և շինում էինք մի՝ իբր թե «դասակարգային օգուտի» անկենդան չուչելո, այդ «օգուտն» էլ վերցնում էինք ամբողջ մարդուց առանձին, օդում կախված,— չէ՞ որ մենք «հերքում էինք» կենցաղը և հոգեբանությունը»: Հակադրվելով իր երբեմնի «երկաթե երազներին», երբ ցանկանում էր մարդու կենդանի կերպարը փոխել «բետոնի հետ», Չարենցը իր սխալ հայացքները ենթարկում էր ամենաանկեղծ, ամենադաժան ինքնաքննադատության:

Երեխայական մի խանդաղանքով
Ես Ի՛րն ընտրեցի իբրև հարսնացու,—
Եվ երգս դարձավ անուժ ու անթով,
Եվ մոլորվեցի իրերի բանտում,
Եվ գլխիս իջավ մառախուղը ցուրտ:

Չարենցը պահանջում էր «հայրենի եզերքում» ստեղծել «երկրի շաֆրանով» հագեցած գործեր, ողջ մարդկության վրա օդի ու լույսի պես իր ազդեցությունը տարածող «ազգային արվեստ», «միաչքանի, միոտանի», բետոնե մարդու փոխարեն մեծ դարաշրջանի մեծ մարդու կենդանի հույզերն ու մտորումներն արտահայտող համամարդկային արվեստ: «Մենք,— ասում է նա ԽՀԳՄ կազմկոմիտեին ուղղած իր 1933 թվականի բաց նամակում,— անհողդողդ կողմնակից ենք պրոլետարական գրականության ազգային ձևի, որովհետև բովանդակությունը և ձևը մենք վերցնում ենք դիալեկտիկական միասնությամբ և խորապես համոզված ենք, որ իսկական ազգային կուլտուրա կարող է ստեղծել միմիայն պրոլետարիատը, իսկական ազգային ձև կարող է ունենալ միմիայն պրոլետարական բովանդակությունը»:

Դեպի մեծ բովանդակությունն ունեցած բարձր ձգտումը Չարենցին մղում էր ազգային ձևի, իբրև մեծ բովանդակությունը մարմնավորող արտահայտչական միակ կոնկրետ միջոցի, ընկալմանը: «...Ազգային ձևը,— ասում է նա,— գրականության մեջ հանգում է ոչ այլ ինչի, եթե ոչ բովանդակության ռեալիստական, կոնկրետ դրսևորման» (ընդգծումը հեղինակինն է): Այսպես հասնում էր նա ազգային գրականության ձևի և բովանդակության մարքսիստական ըմբռնման, ստեղծելով իր անմահ երգերի ու բալլադների լենինյան շարքը, «Լենինն ու Ալին», «Գանգրահեր տղան», «Խմբապետ Շավարշը» պոեմները, մեր զարգացող ազգային գրականության նոր շրջափուլը նշանավորող «էպիկական լուսաբաց», «Գիրք ճանապարհի» ժողովածուները, «Երկիր Նաիրի» մեծակտավ վեպը:

«Երեքը» դեկլարացիայից մինչև «էպիկական լուսաբացը», մինչև «Գիրք ճանապարհին» գրական հայացքների ու ստեղծագործության բեկման ճանապարհ էր Չարենցի համար՝ դժվարին ու բարդ, լուրջ սայթաքումներով, բայց միշտ վերընթաց, սոցիալիստական արվեստի բարձունքները ձգտող, որոնումների և հուսախաբությունների, ազնիվ, բուռն և փոթորկալի պայքարի մի ճանապարհ:

Սոցիալիստական վեհ հայրենասիրությունը դառնում է Չարենցի ողջ ստեղծագործության տիրական շունչը: Բանաստեղծը հանդես է գալիս իբրև պրոլետարական մեծ ինտերնացիոնալիստ: ի հակադրություն բուրժուական գրականության, ազգայնական կուսակցությունների, նա գովերգում էր սովետական ազգերի եղբայրությունը, իմպերիալիզմի դեմ մարտնչող աշխատավորության համախմբվածությունն ու միասնությունը:

Նա պատկերում էր հեղափոխության հերոս նահատակներին, ցույց տալիս նրանց սրբազան գործի համամարդկային ոգին, նրանց գաղափարների կենսական անմարելի ուժը, ցույց տալիս («Կոմունարների պատը Փարիզում») Պեր-լաշեզում և Կարմիր պանթեոնում հանգչող հեղափոխական նահատակների սերտ կապը, ազդարարում այն մեծ ճշմարտությունը, որ «Հոկտեմբերի հունդը» աճում է համայն աշխատավորության սրտերում:

Չարենցի համար Լենինը և լենինյանը դառնում են կյանքի գեղարվեստական արտացոլման չափանիշ, դառնում գեղագիտական հայացք:

Լենինի լեգենդար կերպարը, նրա գաղափարների կախարդող ուժը ոգեշնչում, սխրանքների է մղում աշխարհի միլիոնավոր մարդկանց, նրանց, ովքեր տակավին տառապում են կապիտալի լծի տակ, ովքեր տենչում են ազատություն: «Լենինն ու Ալին» պոեմը պատմական-իրական այս մեծ ճշմարտությունն է արտահայտում: Չարենցի յուրաքանչյուր տողից, յուրաքանչյուր պատկերից զգացվում է Լենինի մեծ շունչը, նրա անմեկնելի հմայքը: Չարքաշ Ալու գիտակցության մեջ Լենինը ներկայանում է իբրև գեղեցկի և բարու մարմնավորում, իբրև «Ֆուխարայի հալից» հասկացող «Բեյուկ խալիֆ», դառնում նրա բաղձանքների ապավենը: Բայց կատարվում է անսպասելին: Լենինի մահվան բոթը «ինչպես թուր աշխարհը կիսող» հասնում է յուրաքանչյուր մարդու, հասնում նաև Տրապիզոն, Ալուն: Չարենցն, այնուհետև, թանձր գույներով է պատկերում Ալու սրտակեղեք տագնապները, նրա այցը սովետական հյուպատոսարան:

Պոեմն ավարտվում է հաղթական ակորդներով: Լենինի մահվան ծանր զգացողությունը միահյուսվում է լենինյան գաղափարների անմահությանը և նրա գործի հաղթանակին:

— Ողջո՛ւյն արխադաշ Ալուն:
— Հաղթանա՞կ գործին Իլիչի:

Չկա Լենինը, կա լենինիզմը: Այս ճշմարտությամբ է տոգորված Չարենցի ողջ ստեղծագործությունը: «Իլյիչը— իմ մե՛ջ է, քո մե՛ջ է, նրա մե՛ջ է, Իլյիչը—կա»,— ասում է բանաստեղծը հաստատակամ:

Դեռ կգա Իլյիչը,
Որ մտնի համաշխարհային Սովնարկոմ:

Մի անհուն, մի խորունկ լավատեսությամբ է ողողված Չարենցի ստեղծագործությունը: Նա արտահայտում է այն համոզմունքը, որ հայրերի գերագույն ցանքերն ու տառապանքները զուր չեն անցնում, որ նրանց լավագույն իդեալները բողբոջում, ընձյուղներ են արձակում գալիք սերունդների կյանքում: Կապուտաչյա, պիոներական փողկապը վզին գանգրահեր տղան («Գանգրահեր տղան») խորհրդանիշն է գալիք երջանիկ սերնդի գեղեցիկ ու վսեմ հատկանիշների, սոցիալիստական հզորացող հայրենիքի: Մարդկային ի՜նչ խանդակաթ զգացմունք, ի՜նչ լուսեղեն հոգի է ճառագայթում «Գանգրահեր տղան» չափածո նովելի յուրաքանչյուր պատկերում:

Լսո՞ւմ ես՝ այդտեղ իմ սի՛րտն է թաղած,—
Կոխոտի՛ր նրան քայլերով քո լույս,
Օ, դո՛ւ, գալիքի գանգրահե՛ր տղա,
Մեր լա՛վ գալիքի ոսկեհե՛ր մանուկ...

Չարենցը մարդկային մեծ խոհերի ու զգացմունքների այս բարձունքից էր նայում կյանքին: Եվ որքան նա հասունանում էր իբրև մտածող-ստեղծագործող, այնքան կյանքը նոր հրաշքներ էր բացահայտում նրա համար, այնքան նա համակվում էր գեղագիտական վսեմ իդեալներով, մտահոգված իր ժողովրդի և համայն մարդկության բախտով: Կյանքի հավիտենական՝ աշխատանքի, սիրո, մահվան և անմահության հարցերը նոր մեկնաբանություն էին ստանում նրա ստեղծագործության մեջ՝ տոգոր-

ված սոցիալիստական կյանքի, նոր մարդու կենսահաստատ խոհերով ու զգացմունքներով:

Մարդկային այս ազնիվ հույզերով ու մտորումներով է բնորոշ «Գիրք ճանապարհին»՝ Չարենցի ստեղծագործության վերջին ակորդը՝ իբրև քաղաքացիական պայծառ պոեզիայի, փիլիսոփայական խոր ընդհանրացումների և պոետական արվեստի կոթող:

Ամեն ինչ, ու ամենից առաջ բնությունը, նվաճել հանուն մարդու. «Հանուն հացի, լույսի, աշխատանքի վսեմ» պայքարի ելնել բնության տարերային կույր ուժերի դեմ, պեղել բնության անհուն գանձերը, և ինչպես մարդուն՝ բնությունը նորոգել ու գեղեցկացնել:

Պայքարների դժնի ճանապարհով
Բազմություններ ահա բազմահազար,
Որ դարերով գրկիդ ու գգվանքիդ կարոտ
Հնձել են, բայց չեն ճաշակել բերքերդ
սրբազան,—
Դեպի քե՛զ են գալիս, դեպի անեզրական
Երկինքնե՛րդ բազմաշխարհ ու բազմաստեղ,
Իբրև տե՛ր են գալիս, իբրև տիրակա՛լ,
Գալիս են, որ աստղերիդ և ընթացքի՛դ
անգամ
Իրենց ստեղծարար հանճարը
պատվաստեն,—
Օ՜, Բնությո՛ւն, օ՜, Մա՛յր:—

Չարենցի ստեղծագործությունը սովետահայ գրականության մեջ տակավին մնում է չգերազանցված, կենսունակ իր մեծ ավանդներով՝ գաղափարական-հասարակական խոր բովանդակությամբ, պոետական ինքնատիպ արվեստի հրաշալիքներով, ժանրային զարմանալի հարստությամբ ու բազմակողմանիությամբ, ժողովրդի գեղագիտական մտածողության խորքով:

Չարենցի շարունակ թարմացող ու նորացող, շարունակ հարստացող ու խորացող արվեստի գաղտնիքը կյանքի և բնության երևույթների պոետական նրա գերզգայուն, անմիջական ու ինքնաբուխ ընկալման և ինտելեկտուալ գիտելիքների լայն դիապազոնի ներթափանցման մեջ է, ժողովրդի և իր փոխադարձ սնման մեջ:

Մերժելով պարզունակությունը, նա ձգտում էր պարզեցման ու բյուրեղացման, ձգտում ժողովրդական ստեղծագործության ջինջ ակունքներին՝ գողթան երգերից—Սայաթ-Նովա, Սայաթ-Նովայից — Թումանյան, մինչև Թումանյանական արվեստի բարձունքները.

Թումանյանն է անհաս Արարատը մեր
Նոր քերթության:

Դեռևս անբավական իրենից և սովետական մյուս վարպետներից, Չարենցը պահանջում էր «մարդկային կուլտուրայի բարձունքները» նվաճող, «ինտելիգենտական բարդություններից» զերծ, պարզ ու խորունկ, իր իսկ արտահայտությամբ՝ «սինթետիկ արվեստ»:

Ամբողջությամբ բացասելով մերկ իդեոլոգիայի դրոշի տակ սնվող գռեհկաբանությունը, «անհուն տգիտությունը», մերժելով ազգային ամեն մի ինքնասահմանափակում ու քարացածություն, Չարենցն իր հայացքն ուղղում էր դեպի համամարդկային գրականության հորիզոնները:

«Ես էլ, որպես հայ գրող, պատկանում եմ «փոքր» ազգության,—սովետական գրողների առաջին համագումարի բարձր ամբիոնից հնչում էր նրա զորեղ ձայնը,—և գիտեմ, որ եթե իմ ստեղծագործական գործունեությունը սահմանափակեմ ազգային նեղփակված շրջանակներում, որքան ողորմելի կլինի նրա դիապազոնը և ազդեցության ոլորտը: Ես երջանիկ եմ և զգում եմ ինձ մարդկության ամենաառաջավոր հոսանքի մասնիկը շնորհիվ այն բանի, որ Հոկտեմբերյան հեղափոխությունը վերացրել է իմ հոգևոր տեսադաշտից ազգային ինքնասահմանափակումների ողորմելի ցնորքը»:

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

Ս. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

ՀԿԿ Երևանի կազմակերպության Մյասնիկյանի
շրջկոմի առաջին քարտուղար

## ՍՄԿԿ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆԵՐԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ

ՍՄԿԿ Կանոնադրությունը նրա ներքին կյանքի հիմնական ու անխախտ օրենքն է: Այն սահմանում է ներկուսակցական կյանքի նորմերը, կուսակցության կառուցման կազմակերպական սկզբունքները, նրա պրակտիկ գործունեության մեթոդները: ՍՄԿԿ Կանոնադրությունը միշտ եղել ու մնում է որպես կազմակերպական հուսալի զենք՝ սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում:

Մեր կուսակցության կազմակերպական սկզբունքները մշակվել են Վ. Ի. Լենինի կողմից և ՍՄԿԿ ամբողջ պատմության ընթացքում հիմնականում մնացել են անսասան: Բայց օրինաչափորեն այդ սկզբունքները զարգացել են, արտացոլելով երկրի և կուսակցության կյանքի փոփոխությունները, մեր առաջընթացի պահանջմունքները:

Կոմունիզմի ծավալուն կառուցման ներկա ժամանակաշրջանում, երբ ավելի է աճում կուսակցության դերն ու նշանակությունը որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, առավել մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրվում կուսակցության անդամների առջև, ավելի է բարձրանում նրանց կոչումը: «Կոմունիստը,— ասված է ՍՄԿԿ ծրագրում— պարտավոր է արտադրության մեջ, հասարակական և անձնական կյանքում, իր ամբողջ վարքագծով ցույց տալ կոմունիստական հարաբերությունները զարգացնելու և ամրապնդելու պայքարի բարձր օրինակներ, պահպանել կոմունիստական բարոյականության սկզբունքներն ու նորմերը»:

Կուսակցական ծրագրի հենց այդ դրույթներից էլ բխում են կոմունիստի հիմնական պարտականությունները և իրավունքները, կուսակցության կազմակերպական աշխատանքի սկզբունքները, որ այնքան հստակորեն շարադրված են ՍՄԿԿ Կանոնադրությունում:

Կանոնադրությունը յուրաքանչյուր կոմունիստից պահանջում է գործնականում ցույց տալ կոմունիստական աշխատանքի օրինակ, հանդես գալ որպես նորի նախաձեռնող, հաստատ ու անշեղորեն կենսագործել կուսակցության որոշումները, ակտիվորեն մասնակցել երկրի քաղաքական կյանքին: Կոմունիստի կողմից այդ պարտականությունների կատարումն էլ հիմնականում որոշում է նրա քաղաքական հասունությունը:

Մեր կուսակցությունը ուժեղ է իր անդամների բարձր գիտակցականությամբ, ակտիվ աշխատանքով, կոմունիզմի գաղափարներին նրանց անսահ-

ման նվիրվածությամբ: Վերցնենք, օրինակ, Երևանի նորաստեղծ Մյասնիկյանի շրջանի կուսակցական կազմակերպությունը, ուր կոմունիստները հիմնականում, իրենց ճնշող մեծամասնությամբ, բարեխղճորեն են կատարում կուսակցական կանոնադրության պահանջները, ակտիվորեն մասնակցում հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվների կյանքին, հանդես գալիս նախաձեռնություններով, լավ օրինակ ծառայում աշխատանքում և կյանքում:

Ավելի քան 6000 կոմունիստներից շուրջ 2000-ը որպես դասախոսներ և ուսուցիչներ աշխատում են բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններում: Նրանք մեծ ու շնորհակալ գործ են կատարում երիտասարդ կադրերի պատրաստման, աճող սերնդի կոմունիստական դաստիարակության ուղղությամբ: Բավական է ասել, որ շրջանում 85 կոմունիստ գիտության դոկտորներ և 630-ը գիտության թեկնածուներ են:

Շրջանում 400 կուսանդամներ գիտահետազոտական հիմնարկներում մասնակցում են գիտության նոր պրոբլեմների մշակմանն ու զարգացմանը, հարյուրավոր կոմունիստ-ինժեներներ, տեխնիկներ, բուժական, կուլտուրական և այլ հիմնարկների աշխատողներ իրենց ամենօրյա գործունեությամբ արժանի ավանդ են մուծում կոլեկտիվների առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծելու գործում:

Շրջանային կոմիտեն արդեն որոշակի աշխատանք է կատարել կուսկազմակերպություններում, կուսակցական և պետական կարգապահությունը ամրապնդելու, կուսանդամ-թեկնածուների կողմից կանոնադրական պահանջների անշեղ կատարումն ապահովելու ուղղությամբ:

Հարկ է նշելու, որ մեր շրջանի շատ սկզբնական կազմակերպություններ լրջորեն են զբաղվում կուսակցական-կազմակերպական աշխատանքի բարելավման գործով: Կոմունիստների և կուսակցական կազմակերպությունների նախաձեռնությամբ բացահայտվում են աշխատանքում տեղ գտած թերությունները, կարևոր հարցերի քննարկումը օգնում է կոլեկտիվի առջև դրված խնդիրների հաջող կատարմանը: Սակայն կատարված աշխատանքները դեռ բավարար համարել չի կարելի: Մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպություններում կոմունիստների մի մասը պասսիվ է ու անտարբեր դեպի կոլեկտիվի կյանքը, հասարակական-քաղաքական միջոցառումները. շատ կոմունիստներ չեն անհանդուրժողական աշխատանքային գործունեության մեջ տեղ գտած թերությունների, գործերի վատ վիճակի համար: Դրա ապացույցն այն է, որ առանձին կոմունիստներ ժողովներում տարիներով ելույթ չեն ունենում, չեն ասում իրենց կարծիքը քննարկվող որևէ հարցի մասին, նախաձեռնությամբ հանդես չեն գալիս:

Հաշվի առնելով այդ խնդրի կարևորությունը, շրջկոմի վերջին պլենումը քննության առավ կոմունիստների կողմից կանոնադրական պարտականությունների կատարման հարցը: Քննարկումը ցույց տվեց, որ շրջանի մի շարք կուսկազմակերպություններում լուրջ թերություններ կան այդ ասպարեզում, որոնց կողքից չի կարելի լռությամբ անցնել:

Ինչպե՞ս հաղթահարել այդ լուրջ թերությունը: Ամենից առաջ կուսակցական դեմոկրատիայի զարգացման և կուսակցական կարգապահության ամրապնդման միջոցով:

Հարկ չկա ապացուցելու, թե ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման համար որքան կարևոր են կոմունիստների հետ խորհրդակցելը, նրանց արժեքավոր կարծիքները հաշվի առնելն ու կենսագործելը: «Անհրաժեշտ է—



ասված է ՍՄԿԿ XXIII համագումարի Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— ավելի մեծ հարգանք և ուշադրություն ցուցաբերել կոմունիստի կարծիքի և առաջարկների հանդեպ, պայմաններ ստեղծել լայն քննադատության և ինքնաքննադատության համար, որպեսզի կուսկազմակերպությունը կարողանա ժամանակին ուղղել կուսակցության կանոնադրության պահանջներից շեղում թույլ տվող ամեն մի կոմունիստի, թույլ չտա, որ ավելանան աշխատանքում եղած թերությունները»:

Եթե կոմունիստը տեսնում է, որ իր հետ հաշվի են նստում, կենսագործում իր դիտողություններն ու առաջարկությունները, ապա նա ավելի ակտիվորեն է մասնակցում կուսակցական աշխատանքին: Եվ ընդհակառակը, եթե նա զգում է, որ իր կարծիքները, դիտողություններն ու առաջարկությունները հաշվի չեն առնվում, կարող է հանգել այն սխալ եզրակացության, թե ինքն անկարող է որևէ բան անել, փոխել գործերի վիճակը, ճիշտ կարծիք կազմել, դիտողություն ու առաջարկություն անել:

Հաշվետու-ընտրական ժողովներից հետո շրջկոմի և սկզբնական կազմակերպությունների կողմից բավական աշխատանք է կատարված կոմունիստների քննադատական դիտողությունների և առաջարկությունների կենսագործման ուղղությամբ: Եվ դա, անշուշտ, իր բարերար ազդեցությունն է թողել կոմունիստների վարքի վրա, բարձրացել է նրանց ակտիվությունը: Այս ուղղությամբ շատ կազմակերպություններ աշխատանքի որոշ փորձ են կուտակել:

ՀՍՍՀ Մինիստրների սովետին կից էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի գլխավոր վարչության կուսկազմակերպություններում հաշվետու-ընտրական ժողովից անմիջապես հետո կազմվեց կոմունիստների կողմից արված քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կենսագործման պլան, որը հաստատվեց կուսակցական ժողովում: Այնուհետև բյուրոյի նիստերում ու ժողովներում քննարկվեցին այդ հարցերը և լուծվեցին օպերատիվ կերպով: Այս կազմակերպությունում արդեն ամբողջությամբ կենսագործվել են կոմունիստների առաջ քաշած հարցերը, քննադատական դիտողություններն ու առաջարկությունները:

Սակայն ամենուր չէ, որ այդ հարցին անհրաժեշտ ուշադրություն է նվիրվում: Մենք ունենք կուսկազմակերպություններ, որոնք հարկ չեն համարել նույնիսկ հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստների քննադատական դիտողությունները և կարծիքները հաշվի առնել ու կենսագործել (խճուղային ճանապարհների գլխավոր վարչություն, կույրերի կոմբինատ և այլն):

Հաճախ են ընդունված որոշումները թողնվում անհետևանք:

«Հայաստան» հրատարակչության կուսակցական կազմակերպության հաշվետու ժողովի ընդունած որոշման մեջ նշվել են հետևյալ օգտավետ կետերը.

ա) խնդիր դնել հրատարակչության ղեկավարների առջև՝ խմբագրական աշխատանքների վարձատրությունը կատարել ըստ որակի և քանակի.

բ) երեք ամիսը մեկ անգամ քննարկել լույս ընծայվող գրքերի գեղարվեստական որակը.

գ) գլխավոր նկարչի մոտ սիստեմատիկաբար հրավիրել գեղարվեստական խմբագիրների խորհրդակցություն:

Այս բոլոր կետերն էլ կարևոր ու հրատապ են, բայց դրանցից ոչ մեկը չի կատարվել:

Կոմունիստների ակտիվության բարձրացման խթանող հանգամանք կարող է լինել որոշումների կատարման ընթացքի և կոմունիստների բարձրաց-

րած հարցերի լուծման արդյունքների մասին ժամանակին ու սիստեմատիկ ինֆորմացիա տալու պրակտիկան։ Բժիշկների կատարելագործման ինստիտուտում (կուսբյուրոյի քարտուղար Ա. Ալավերդյան) յուրաքանչյուր ժողովում կոմունիստներին տեղյակ են դարձնում նախորդ ժողովի ընդունած որոշումների կենսագործման մասին։ Այստեղ ընդունվում են կոնկրետ որոշումներ, կոմունիստներին հանձնարարությունները տրվում են ելնելով յուրաքանչյուրի պատրաստականությունից և հակումներից։ Կուսբյուրոյի աշխատանքի պլանը կազմելիս խորհրդակցում են կոմունիստների հետ, հաշվի առնում նրանց ցանկությունները։ Կուսակցական ժողովներում և բյուրոյի նիստերում քննարկում են այնպիսի հարցեր, որոնք առավել հրատապ են կազմակերպության համար։ Կոմունիստները գիտեն, որ իրենց կարծիքները, դիտողությունները հաշվի են առնվում, անհետևանք չեն մնում։ Շնորհիվ այս ամենի բարձրացել է կոմունիստների ակտիվությունը։ Հաշվետու-ընտրական ժողովից հետո անցած 6 ամիսների ընթացքում այստեղ գրեթե բոլոր կոմունիստները ստացել են հանձնարարություններ և ելույթ ունեցել ժողովներում։

Ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման, կոմունիստների ճիշտ դաստիարակման կարևոր պայմաններից մեկը քննադատության և ինքնաքննադատության լայն ծավալումն է։ Կուսակցության անդամի կարևորագույն պարտականությունն է՝ զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, պայքարել պարադայնության, գոռոզամտության, ինքնահանգստացման, բյուրոկրատների և տեղայնության դեմ։

Կուսակցական կազմակերպությունները պետք է ստեղծեն բոլոր պայմանները, որպեսզի կուսակցության անդամը կարողանա օգտագործել ամեն մի կոմունիստի քննադատելու իրավունքը՝ անկախ նրա պաշտոնական դիրքից։

Անհրաժեշտ է նշել, որ մեր մի շարք սկզբնական կազմակերպություններում թույլ է ծավալվում առողջ, գործարար քննադատությունը. այն դեռևս քիչ է օգնում թերությունների բացահայտմանն ու վերացմանը։ Մեր կազմակերպություններում դրա համար անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծվում հենց կուսակցական ժողովներում։ Կուսակցական ժողովը ոչ միայն կոմունիստների դաստիարակության դպրոց է, այլև ներկուսակցական դեմոկրատիայի իրականացման միջոց։ Այն քննադատության և ինքնաքննադատության ծավալման կարևոր ամբիոն է, կուսակցական-հասարակական կարծիքի ձևավորման ոլորտ, կուսակցության որոշումների և դիրեկտիվների կենսագործման ուղղությամբ կոմունիստների միասնական գործունեության միջոց։

Բայց, դժբախտաբար, մի շարք կազմակերպություններում խախտվում են կուսակցական ժողովների պարբերաբար հրավիրման կանոնադրական պահանջը, հաճախ ժողովները վատ են նախապատրաստվում, անցնում են անհրապույր, կոմունիստների պասիվության պայմաններում։

Ժողովները, ինչպես նաև բյուրոյի նիստերը կանոնավոր չեն հրավիրվում «Սովետական Հայաստան» թերթի խմբագրության, Շինարարության մինիստրության, Հանրային գրադարանի, Ազի հանքերի, Կոնսերվատորիայի, բուհերի մի շարք ֆակուլտետների և այլ սկզբնական կազմակերպություններում։ Իսկ կույրերի կոմբինատի և ԳԱ միկրոբիոլոգիայի ինստիտուտի կազմակերպություններում ժողովները գումարվում են դեպքից դեպք։

Խոսքը, իհարկե, ժողովամոլության, կամ ժողովը ձևականորեն անցկացնելու մասին չէ։ Պետք է գործը այնպես կազմակերպել, որ դրանք լավ նախապատրաստվեն և լինեն գործարար, կոնկրետ և անցնեն կազմակերպված։



Օրինակ. ի՞նչ արդյունք կարող են ունենալ Երևանի տուրիստական կայանի կուսակցական կազմակերպության ժողովները, երբ 1966 թ. ընթացքում անցկացված 7 ժողովից 5-ում ոչ մի որոշում չի ընդունվել։ Պատահական չէ, որ այստեղ գործերի վիճակը վատ է։

Անհրաժեշտ է նաև լուրջ վերաբերմունք ցուցաբերել ժողովների օրակարգի հարցեր ընտրելիս։ Պետք է քննարկման դնել կոլեկտիվին հուզող հրատապ հարցեր։ Մինչդեռ որոշ տեղերում քիչ ուշադրություն է դարձվում օրակարգի ընտրությանն ու նախապատրաստմանը։ Կոմունիստների կանոնադրական պահանջների կատարումն ապահովելու, նրանց ակտիվությունը ծավալելու համար ներկուսակցական դեմոկրատիայի զարգացումը կարող է բավարար արդյունք չտալ, եթե այն չի զուգորդվում կուսակցական կարգապահության հետ։ Մեր կուսակցության մեջ դեմոկրատիան և կարգապահությունը միաձուլված են, անբաժանելի։ Առանց գիտակցական կարգապահության անհնար է գործնականում իրականացնել ներկուսակցական դեմոկրատիան, մեծամասնության կամքը։

Չնայած մի քանի անգամ մեր կուսակցության Կանոնադրությունը փոխվել է, սակայն կուսակցական կարգապահության մասին պահանջները մնացել են անփոփոխ։ Կուսակցական կազմակերպությունները պետք է հասնեն նրան, որ ամեն մի կոմունիստ անձնական պատասխանատվություն կրի իր կազմակերպության և ամբողջ կուսակցության գործի համար։ Նա պասիվ դիտող չէ և ոչ էլ կողմնակի քննադատող։ Հետևաբար կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ բարձրացնել յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվությունը։ Եթե ոմանք մոռանում են իրենց պարտքը և ներկայացվող պահանջները, ապա պետք է նրանց հիշեցնել այդ մասին։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ շրջանի առանձին կուսակցական կազմակերպություններում որոշակի թվով կոմունիստներ պատասխանատվություն չեն զգում իրենց առջև կանգնած խնդիրների կատարման համար, խախտում են կանոնադրական պահանջները, կուսակցական կարգապահությունը։ Մեծ թվով կոմունիստներ չեն ներկայանում կուսակցական ժողովներին։ Շինարարության մինիստրության կուսկազմակերպության (քարտուղար Լ. Ծատուրյան) 83 անդամներից ժողովներին որպես կանոն 20—25 հոգի չեն մասնակցում։ Կոմունիստների մեծամասնության բացակայության հետևանքով ձախողվել են պոլիտեխնիկական ինստիտուտի մեխանիկո-մեքենաշինական ֆակուլտետի (քարտուղար՝ Մ. Սիրականյան) և համալսարանի բանասիրական ֆակուլտետի (քարտուղար՝ Պ. Պողոսյան) կուսակցական ժողովները։

Ժողովներից մեծ թվով կոմունիստներ են բացակայում լեռնամետալուրգիական գիտահետազոտական ինստիտուտի, «Երևաննախագիծ» ինստիտուտի, բժշկական ինստիտուտի բուժական ֆակուլտետի և այլ կազմակերպություններում։ Շրջանում քիչ չէ նաև այն կոմունիստների թիվը, որոնք զլանում են ժամանակին մուծել կուսանդամավճարը։

Նման վիճակի պատճառն այն է, որ կուսակցական կազմակերպությունների բյուրոներն ու քարտուղարները սկզբունքային գնահատական չեն տալիս այդ փաստերին, ցուցաբերում են լիբերալ և հաշտվողական վերաբերմունք, պատասխանատվության չեն կանչում նրանց, ովքեր դրան արժանի են։

Սկզբնական կուսակցական կազմակերպությունները հանդիսանում են կուսակցության հիմքը։ Նրանք պետք է ապրեն ներկուսակցական և գաղափա-

բական աշխատանքի լիարյուն կյանքով, իրենց գործունեությամբ ստեղծեն թերությունների նկատմամբ անհաշտ վերաբերմունքի այնպիսի մթնոլորտ, որ հնարավոր լինի ժամանակին տեսնել կոմունիստի սխալը՝ ուղղել, կանխել, թույլ չտալ, որ նրանք իրենց սխալը հասցնեն հանցագործության աստիճանի։

Համալսարանի ֆիզիկայի ֆակուլտետի դասախոս Է. Զաքարյանը մեկ առարկայից 7 ուսանողի դիֆերենցված ստուգարք չէր նշանակել և խորհուրդ էր տվել նրանց պարապելու մեկ ուրիշ դասախոսի մոտ, որն իր ընկերն է։ Նա էլ 7 ուսանողի հետ 5 ժամ պարապելուց հետո յուրաքանչյուրից վերցրել էր 30-ական ռուբլի։

Այդ ուսանողները երկրորդ անգամ ներկայանալով Է. Զաքարյանին, ստացել են բարձր գնահատականներ։ Սա խայտառակ երևույթ է, մանկավարժին անվայել արարք, որի նկատմամբ, սակայն, ֆիզիկայի ֆակուլտետի սկզբնական կուսկազմակերպությունը ցուցաբերել է լիբերալ վերաբերմունք, Զաքարյանին հայտարարել նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտի մեջ։

Համալսարանի կուսակցական կոմիտեն իրավացիորեն չհաստատեց ֆիզիկայի ֆակուլտետի կուսակցական կազմակերպության որոշումը և ֆակուլտետի դասախոս Է. Զաքարյանին հեռացրեց կուսակցության շարքերից։ Շրջկոմը հաստատեց այդ որոշումը։

Կոմունիստներին պատժելու դեպքում անհրաժեշտ է ցուցաբերել ուշիմ վերաբերմունք և, որ գլխավորն է, ճիշտ գնահատական տալ նրա արարքին։ Կոմունիստը պետք է զգա և համոզվի իրեն ներկայացված մեղադրանքների և տուժի չափի ճշտության ու օբյեկտիվության մեջ։

Ավելորդ, ծայրահեղ խստությունը կամ մեղմ, լիբերալ վերաբերմունքը վնասում են մարդկանց ճիշտ դաստիարակությանը։ Պետք է առավել ուշադիր խորամուխ լինենք այն ամենին, ինչ վերաբերում է կոմունիստի բախտին, բայց դրա հետ մեկտեղ ոչ մի կերպ չթուլացնել պահանջկոտությունը նրա նկատմամբ։ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո, երբ ՍՄԿԿ-ն դարձավ կառավարող կուսակցություն, կուսակցական կարգապահությունը ընդգրկեց մեկ նոր հասկացողություն ևս՝ այն է՝ պետական կարգապահությունը, քանի որ սովետական պետության վարած քաղաքականությունը մեր կուսակցության քաղաքականությունն է, ուստի կուսակցական կարգապահությունը միաժամանակ պետական կարգապահություն է։

Ցավոք պետք է ասել, որ շրջանի մի շարք կազմակերպություններում կուսակցական-պետական կարգապահությունը չի գտնվում անհրաժեշտ բարձրության վրա։

Պետական և աշխատանքային կարգապահությունը ցածր էր «Հայպետնախագիծ» ինստիտուտում։ Աշխատանքային կարգապահության խախտումներն այստեղ սովորական երևույթ էին դարձել։ Ցածր էր աշխատողների պատասխանատվությունը։ Ղեկավարությունն ամեն կերպ օբյեկտիվ պատճառներ էր որոնում աշխատանքների թերություններն արդարացնելու համար։ Շրջկոմի բյուրոն իրավացիորեն նպատակահարմար չգտավ դիրեկտորի և գլխավոր ինժեների հետագա աշխատանքն այդ ինստիտուտում։ Ինստիտուտի նոր ղեկավարությունը վատ չի սկսել իր գործունեությունը։ Նա կուսակցական կազմակերպության օգնությամբ պետք է վճռականապես բարելավի գործերի վիճակը ինստիտուտում։

Պետական կարգապահության պահպանման գործում մեծ նշանակություն ունեն կադրերի ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումը։ Երբ շրջկոմը



ուսումնասիրում էր պոլիտեխնիկական ինստիտուտում ուսումնա-դաստիարակչական աշխատանքների վիճակը, պարզվեց, որ ինստիտուտի կուսկոմիտեի թողտվությամբ ինստիտուտում առանձին կադրերի նշանակումը կատարվել է ըստ ընտանեկան և բարեկամական կապերի, որը բացասաբար է անդրադառնում աշխատանքների վրա։ Միջնակարգ գյուղատնտեսական կրթություն ունեցող Գ. Աղատյանը աշխատում է ռադիոտեխնիկայի ամբիոնում, կոոպերատիվ տեխնիկումի շրջանավարտ Խ. Հունանյանը աշխատում է ճարտարապետության ամբիոնում՝ որպես լաբորանտ, ռուսաց լեզվի ուսուցչուհի Մ. Բարոյանը լաբորանտուհի էր մետաղների դիմադրության ամբիոնում, որոշ ժամանակ անց ինստիտուտի ղեկավարությունը նրան նշանակել է ավագ լաբորանտուհի, մինչդեռ դա ինժեներական պաշտոն է։ Ա. Խաչատրյանը ավարտել է բանասիրական ֆակուլտետը, բայց դա չի խանգարել, որ նա աշխատի ինստիտուտի ավտոմոբիլային ճանապարհների և կամուրջների ամբիոնում՝ որպես ավագ լաբորանտ։ Կադրերի տեղաբաշխման բնագավառում պետական կարգապահության խախտման փաստեր կան նաև այլ կազմակերպություններում։

Վերջերս շրջկոմի բյուրոյում քննարկվեց բժշկական ինստիտուտի ամբիոնի դասախոս, ՍՄԿԿ անդամ Ս. Թովմասյանի և 6-րդ կուրսի ուսանող, կուսթեկնածու Յու. Պետրոսյանի հարցը։ Թովմասյանը քննության ժամանակ անբավարար գնահատական է նշանակում Պետրոսյանին։ Վերջինս բոլոր միջոցներով ձգտում է հասնել գնահատականի փոփոխմանը։ Դասախոս Թովմասյանը առաջարկում է նրան անձնական նպատակներով օգտագործել Պետրոսյանի սեփական ավտոմեքենան, այնուհետև նրանք ընդհարվում են, կռվում, վիրավորում միմյանց, որի համար նրանք կուսակցական պատասխանատվության են կանչվել։

Ժողովրդական դատարանը մասնավոր որոշումներ կայացրեց գյուղատնտեսական ինստիտուտի կուսկազմակերպության անդամներ Գ. Ծատուրյանի (ուսանողական խորհրդի նախագահ), Ա. Հովնանյանի և Գ. Գասպարյանի (5-րդ կուրսի ուսանողներ) նկատմամբ։ 1967 թվականի հունվարի 25-ին ինստիտուտի հանրակացարանում ուսանողների կողմից կատարվում է խուլիգանություն, որին ներկա են եղել վերոհիշյալ կոմունիստները։ Եվ նրանք ոչ միայն չեն կանխել անախորժ դեպքը, այլև ժողդատարանին տվել են ոչ ճիշտ ցուցմունքներ՝ հովանավորության տակ վերցնելով խուլիգանություն կատարողներին։

Կուսակցության այն հիմնական օղակը, որտեղ կոմունիստը ձևավորվում է որպես գաղափարական, գիտակից, ակտիվ մարտիկ, սկզբնական կուսակցական կազմակերպությունն է։ Ոչինչ չի կարող փոխարինել դաստիարակության այն դպրոցին, որը կոմունիստն անցնում է կոլեկտիվում։

Կուսակցության հետագա ամրապնդման խնդիրը հրամայաբար պահանջում է բարձրացնել սկզբնական կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը, կատարելագործել կուսակցական-կազմակերպական աշխատանքի ձևերն ու մեթոդները, ակտիվորեն և բանիմաց կերպով միջամտել հիմնարկության գործերին, ժամանակին տեսնել և վերացնել թերությունները, պահանջկոտությունը զուգորդել մարդկանց նկատմամբ հոգատար վերաբերմունքի հետ։ Դրանով ավելի լայն հնարավորություն և պայմաններ են ստեղծվում, որպեսզի բոլոր կոմունիստները պատվով կատարեն Կանոնադրությամբ սահմանված պահանջները։

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ՊԱՅՔԱՐԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Ա. ՍԱՐԳՍՅԱՆ

Գիտական խոր ուսումնասիրության ենթարկելով կապիտալիզմի և սոցիալիզմի զարգացման օրինաչափությունները, Վ. Ի. Լենինը հանգեց այն մտքին, որ սոցիալիստական հասարակարգի պայմաններում լայն հնարավորություններ են ստեղծվում արտադրաուժերի զարգացման և հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Նա գիտականորեն հիմնավորեց, որ պրոլետարական հեղափոխության շնորհիվ ստեղծված արտադրամիջոցների հանրային սոցիալիստական սեփականությունը լայն պայմաններ է ստեղծում աշխատանքի արտադրողականության աճման համար։

Պրոլետարիատի առաջնորդը բացատրում է այն գաղտնիքը, թե սոցիալիզմի պայմաններում ինչու է բարձրանում աշխատանքի արտադրողականությունը։ «Ուրիշի համար հարյուրամյակներ աշխատելուց,— ասում է նա,— շահագործողների համար հարկադրական աշխատանք կատարելուց հետո, առաջին անգամն է հնարավորություն ստեղծվում իր համար աշխատելու, այն էլ այնպիսի աշխատանքի հնարավորություն, որը հենվում է նորագույն տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր նվաճումների վրա» (Երկեր, հ. 26, էջ 495)։

Աշխատավորները խորապես համոզվելով, որ սոցիալիստական հասարակարգում հասարակական աշխատանքը նպաստում է կյանքի պայմանների բարելավմանը, փոխեցին իրենց վաղեմի, անբարյացակամ վերաբերմունքն աշխատանքի նկատմամբ։ Այն դարձավ հաճույքի, փառքի և պատվի գործ։ Մարդիկ սկսեցին ցուցաբերել արիության ու հերոսության վառ օրինակներ։ Զուր չէ, որ աշխատանքի արտադրողականության աճման տեմպերով Սովետական Միության էկոնոմիկան գերազանցում է բոլոր կապիտալիստական երկրներին։ Այսպես, եթե մինչև 1957 թվականը ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի արտադրության տարեկան միջին տեմպը, չհաշված պատերազմական և վերականգնման տարիները, կազմել է 16,2 տոկոս, ապա նույն ժամանակաշրջանում ԱՄՆ-ում այն կազմել է 2,7 տոկոս, Անգլիայում՝ 3,2, Ֆրանսիայում՝ 3,1 տոկոս։ Ավելին, ՍՍՀՄ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյակում աճել է 41 տոկոսով, երկրորդ հնգամյակում՝ 82, երրորդ հնգամյակի երեք տարիներում՝ 33, պատերազմի և չորրորդ հնգամյակի տարիներում՝ 37, հինգերորդ հնգամյակում՝ 44 տոկոսով։

Աշխատանքի արտադրողականությունը 1955 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, արդյունաբերության բնագավառում աճեց 98 տոկոսով, շինարարության մեջ՝ 78, երկաթուղային տրանսպորտում՝ 53 տոկոսով։ ՍՍՀՄ արդյունաբերության մեջ բանվորների աշխատանքի տարեկան արտադրությունը 1955 թվականին (1913 թվականի համեմատությամբ), աճել է մոտավորապես 8 անգամ, թեև կրճատվել է աշխատանքային օրվա տևողությունը։

Ինչպես տեսնում ենք, ժողովրդական տնտեսության զարգացմանը համընթաց բարձրացել է նաև աշխատանքի արտադրողականությունը։ Եթե հաշվի առնենք նաև այն, որ ժողովրդական տնտեսության բուռն զարգացմամբ բարձրանում է աշխատանքի արտադրողականության մեկ տոկոսի ռեալ մեծությունը, ապա ավելի ակնառու կդառնան աշխատանքի արտադրողականության բարձրացման բնագավառում ձեռք բերված զգալի նվաճումները։

Հետպատերազմյան տասը տարիների ընթացքում աշխատանքի արտադրողականության բնագավառում ձեռք բերված այդ որոշակի նվաճումները, այնուամենայնիվ, անբավարար են։ Չնայած ՍՍՀՄ-ն արդյունաբերության բնագավառում աշխատանքի արտադրողականությամբ հասել էր Անգլիային, Ֆրանսիային և մոտենում էր Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետությանը, բայց ետ էր մնում ԱՄՆ-ից 2—2,5 անգամ, գյուղատնտեսության մեջ՝ մոտ 3 անգամ։ Կապիտալիզմի հետ տնտեսական մրցության անողոք պայքարում հաղթանակով դուրս գալու համար, կուսակցական կազմակերպությունները և սովետական ժողովուրդը մոբիլիզացնում են տնտեսական, տեխնիկական և հոգևոր բոլոր ուժերը։



Կոմունիստական շինարարության պրակտիկ փորձի ուսումնասիրության շնորհիվ, կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը եկան այն եզրակացության, որ գիտատեխնիկական առաջադիմությունն աշխատանքի արտադրողականության բարձրացման գլխավոր գործոններից մեկն է, որ նա է, վերջին հաշվով, որոշում կոմունիստական շինարարության հաղթանակի ելքը։

Հետպատերազմյան առաջին երկու հնգամյակների տարիներին աշխատանքի արտադրողականության բարձրացման բնագավառում որոշակի փորձ ձեռք բերեցին Հայաստանի կուսակցական կազմակերպությունները։ Նրանք իրենց ժողովներում, արտադրական խորհրդակցություններում, նորարարների ու ռացիոնալիզատորների հավաքներում հաճախ քննարկում էին արդյունաբերության տեխնիկական առաջադիմության, աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերը։ Հանրապետության քաղաքային, շրջանային կուսակցական կոմիտեներն ու բյուրոները պարբերաբար հրավիրում էին կուսակցական ակտիվի նիստեր, խորհրդակցություններ, ուր խոսվում էին արտադրության առաջավորների, ստախանովականների փորձի մասին, ապա պլենումներում լսվում սկզբնական կուսկազմակերպությունների հաշվետվություններն այդ ամենի շուրջը։

1946 թվականին կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեն անց է կացրել կուսակցական ակտիվի երեք հավաք, իսկ Երևանի շրջանային կոմիտեները՝ երեքից հինգ ժողով, որտեղ արտադրության մյուս հարցերի հետ միաժամանակ քննարկվել են աշխատանքի արտադրողականության բարձրացման խնդիրները։

ՀԿԿ Կենտկոմը, քաղկոմներն ու շրջկոմները սիստեմատիկաբար ստուգում և ուսումնասիրում էին ինչպես առաջավոր, այնպես էլ ետ մնացող ձեռնարկությունների, կառույցների աշխատանքները, միջոցներ ձեռնարկում լավագույն փորձի խրախուսման, տարածման ու արմատավորման, ետ մնացողներին օգնելու, նրանց առաջավորների մակարդակին բարձրացնելու համար։ Միայն 1946 թվականին ՀԿԿ Կենտկոմի պլենումներում և բյուրոյի նիստերում 55 հարց է լսվել ձեռնարկությունների ու կառույցների աշխատանքի վերաբերյալ, որտեղ քննության են առնվել սոցիալիստական մրցության ծավալման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատատար պրոցեսների մեքենայացման, նորարարության և ռացիոնալիզատորական աշխատանքի բարելավման խնդիրները։

Պայքարելով աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, կուսակցությունը և սովետական կառավարությունը մեծ ուշադրություն էին նվիրում ծանր արդյունաբերության և, ամենից առաջ, դրա հիմքերի՝ վառելանյութի, մեքենաշինության, քիմիական արդյունաբերության արտադրության զարգացմանը։

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է, որ Հոկտեմբերյան հեղափոխությունը, Ռուսաստանում տապալելով շահագործողներին, քաղաքական իշխանությունը հանձնեց աշխատավորությանը, ապահովեց միայն քաղաքական կողմը։ «...իսկ տնտեսական կողմը կարող է ապահովվել միայն այն ժամանակ, երբ իսկապես ռուսական պրոլետարական պետության մեջ կկենտրոնացվեն ժամանակակից տեխնիկայի հիմունքներով կառուցված խոշոր արդյունաբերական մեքենայի բոլոր թելերը, իսկ դա նշանակում է էլեկտրիֆիկացիա» (Երկեր, հ. 31, էջ 527)։

Հաշվի առնելով այդ, կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը երկրի էլեկտրիֆիկացման համար կենսագործել և կենսագործում են տնտեսական ու կազմակերպական հսկայական միջոցառումներ։ Բավական է նշել, որ եթե 1913 թվականին ցարական Ռուսաստանում արտադրվել է ընդամենը 2 մլն. կվտ-ժամ էլեկտրաէներգիա, ապա 1955 թվականին՝ 170,1 մլրդ կվտ-ժամ։ ՍՍՀՄ-ում հետպատերազմյան երկրորդ հնգամյակի վերջին տարում յուրաքանչյուր 4 օրում արտադրվում էր այնքան էլեկտրաէներգիա, որքան Ռուսաստանում 1913 թ.։

Ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացման բնագավառում արդեն բավական փորձ են ձեռք բերել Հայաստանի կուսակցական կազմակերպությունները։ Նրանք քաջ գիտակցում են, որ առանց էլեկտրիֆիկացիայի հնարավոր չէ խթանել տեխնիկական առաջադիմությունը, ապահովել աշխատանքի արտադրողականության բարձրացումը։

Հանրապետության էլեկտրիֆիկացումը համաժողովրդական գործ էր, որի համար պայքարում էին կուսակցական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, որոնց ջանքերը պսակվեցին մեծ հաղթանակով։ Հինգերորդ հնգամյակի վերջում՝ 1955 թվականին, հանրապետության բոլոր էլեկտրակայանները միասին արտադրեցին 2214,7 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա։ Դա հսկայական նվաճում էր, եթե նկատի ունենանք, որ 1913 թվականին Հայաստանում արտադրվել է ընդամենը 5,1 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա։

Վ. Ի. Լենինը աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր գործոնը հա-

մարում էր բնակչության կրթական և կուլտուրական վերելքը։ Առանց աշխատավորների կուլտուր-կրթական մակարդակի, արտադրական կադրերի պատրաստման ու որակավորման բարձրացման, հնարավոր չէ իրականացնել տնտեսական, կուլտուրական և քաղաքական կարգի որևէ լուրջ վերափոխում։ Այդ ուղղությամբ մեծ գործ են արել Հայաստանի կուսկազմակերպությունները։

Աշխատավորության կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման համար անհրաժեշտ էր, առաջին հերթին, զարգացնել ժողովրդական կրթությունը։ Եվ ՍՍՀՄ-ում սկսվեց արագ թափով իրականացվել ընդհանուր պարտադիր ուսուցումը. կազմակերպվեց երիտասարդության ֆաբրիկա-գործարանային կրթության գործը։ Բավական է նշել, որ 1940—1941 ուս. տարում ՍՍՀՄ տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում ընդգրկված էին 35,528 մլն աշակերտ, իսկ բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ շուրջ 812 հազար ուսանող։ Լենինյան ազգային քաղաքականության անշեղ իրականացման շնորհիվ լուսավորությունը, գիտությունը և կուլտուրան դարձան Սովետական Միության բոլոր ժողովուրդների սեփականությունը։

1914—1915 թվականներին Հայաստանը չուներ ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, իսկ 1954—1955 թթ. վերջիններիս թիվը արդեն 13-ի էր հասել, ուր սովորում էին 19,2 հազար ուսանող։ Ավելին, 1914—1915 թթ. հանրապետության դպրոցներում սովորում էին ընդամենը 34,7 հազար աշակերտ, իսկ 1954—1955 ուս. տարում՝ 295,2 հազար։

Եվ ահա, կուսակցությունը ձեռնամուխ եղավ տեխնիկական կադրերի պատրաստման կարևոր գործին։ Հետպատերազմյան առաջին երկու հնգամյակներին զգալիորեն մեծացավ տեխնիկումներում և միջնակարգ այլ մասնագիտական հաստատություններում սովորող երիտասարդների թիվը։ Այսպես, եթե մինչև հեղափոխությունը Հայաստանում կար 1 տեխնիկում, 100 ուսանողով, ապա 1955—1956 ուս. տարում կային 45 տեխնիկում և միջնակարգ հաստատություն, ուր սովորում էին 17 հազար ուսանող։

Հետպատերազմյան առաջին երկու հնգամյակներում Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմը և կառավարությունը ձգտում էին ապահովել տեխնիկական համապատասխան կրթությամբ զինված կադրերի պատրաստման գործը։ 1946—1955 թվականներին տեխնիկումները, միջնակարգ մասնագիտական հաստատությունները հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերին տվեցին շուրջ 40 հազար շրջանավարտ։

Հետպատերազմյան տարիներին ժողովրդական տնտեսության խնդիրների հաջող լուծման համար անհրաժեշտ էին նաև որակյալ բանվորական կադրեր։ Չէ՛ որ բուռն թափով զարգացող առաջավոր տեխնիկային կարող են տիրապետել միայն այն բանվորները, որոնք ունեն տեխնիկական համապատասխան պատրաստություն։ Այդ նպատակով դեռևս երկրորդ հնգամյակի տարիներին ստեղծվեց աշխատանքի պետական ռեզերվների պատրաստման սիստեմ, որն ընդգրկում էր արհեստագործական, երկաթուղային ուսումնարաններն ու ֆաբրիկա-գործարանային դպրոցները։ 1940 թվականին Հայաստանում հիմնվեց չորս ուսումնարան, ուր սովորում էին հազար հոգի, իսկ 1946 թվականին՝ 14 ուսումնարան և ֆաբգործուսի դպրոց, որոնք հիմնականում կենտրոնացվեցին քաղաքներում և արդյունաբերական կենտրոններում։

Հանրապետության կուսկազմակերպությունների ջանքերն զուր չանցան։ Մինչև 1946 թվականը պատրաստվեցին 9589, իսկ 1940—1948 թվականները՝ 16,500 տարբեր մասնագիտությունների որակյալ բանվոր։ Այսպիսով, հետպատերազմյան երկու հնգամյակներում (1946—1955 թվականներին) ֆաբգործուսներն ու մասնագիտական դպրոցները տվեցին 8,3 հազար որակյալ մասնագետ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման նպատակով ՀԿԿ Կենտկոմը, քաղկոմշրջկոմներն, արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները, մեծ ուշադրություն էին նվիրում նաև արտադրության մեջ զբաղված բանվորների որակավորումը բարձրացնելուն։ Դրա համար կազմակերպվում էին կարճատև դասընթացներ, նորարարական դպրոցներ, տեխմինիմումի խմբակներ, խրախուսվում էր բանվորների անհատական ուսուցումը։ Նման միջոցներով հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում մինչև 1946 թվականը վերապատրաստվել և նոր որակավորում են ստացել 13662 բանվոր։

Հետպատերազմյան երկու հնգամյակների տարիներին բանվորների որակավորման բարձրացման բնագավառում մեծ փորձ ձեռք բերին հանրապետության բազմաթիվ ձեռնարկությունների, մասնավորապես Երևանի կոմպրեսորների, էլեկտրամեքենաշինական գործարանների, կոշիկի № 1 ֆաբրիկայի, Գյումուշգէսի շինվարչության, Ջանգեզուրի հանքվարչության և մի շարք այլ ձեռնարկությունների կուսկազմակերպությունները։ Այսպես, Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի կուսկազմակերպության նախաձեռնությամբ արտադրամասերում ստեղծվեցին տեխմինիմումի դասընթացներ, որտեղ իրենց որակավորումը բարձրացնում էին



մոտ 270 երիտասարդ բանվոր, իսկ մի մասն էլ նոր մասնագիտություն էր ձեռք բերում։ Գործարանի կուսկոմիտեի ջանքերով միայն 1950 թվականին գործում էր ստախանովյան 7 դպրոց։ Այդ դպրոցներում ուսումնասիրվում էին Միության առաջավոր բանվորների լավագույն փորձը։

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ե. Բատուևայի խարիսխը արագ փաթաթելու փորձի ուսուցումն ու ներդրումը հիանալի արդյունք տվեց։ Մինչ այդ, բանվոր Սարգսյանը մեկ խարիսխը փաթաթում էր 3 ժամ 35 րոպեում, հետո սկսեց փաթաթել 1 ժամ 40 րոպեում։

Գյումուշգէսշինի 300 թունելագործներ մեկ տարվա ընթացքում արտադրական նոր որակավորում ձեռք բերեցին։ 1950 թվականին Երևանի Կաբելի գործարանում աշխատում էր ստախանովյան 9 դպրոց, ուր իրենց տեխնիկական որակավորումն էին բարձրացնում 45 բանվոր։ Լենինականի արդյունաբերական ձեռնարկություններում միայն 1949 թվականի առաջին 9 ամսվա ընթացքում անհատական և տեխնիկական ուսուցման միջոցով 1600 հոգի բարձրացրեց իր տեխնիկական մակարդակը, իսկ 1950-ին՝ տեխմինիմումի և արտադրական ուսուցման այլ ձևերի միջոցով առաջատար պրոֆեսիայի 3 հազար բանվոր նոր որակավորում ստացան։ Քաղաքի մանարան ֆաբրիկայի կուսկազմակերպության նախաձեռնությամբ 1950 թվականի ապրիլին ուսումնասիրվեց ֆաբրիկայի առաջավորներ Ա. Արսենյանի (Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ), Տ. Լևոնյանի, Ա. Էլոյանի, Ն. Մերոշնիկովայի աշխատանքի լավագույն փորձը և հրահանգիչների միջոցով հաղորդվեց 667 բանվորի։ Դրա շնորհիվ ֆաբրիկայի ետ մնացող բրիգադները սկսեցին գերակատարել առաջին տեսակի արտադրանքի պլանը, զգալիորեն բարձրացավ թողարկվող արտադրանքի որակը։

Կուսակցության Լենինականի քաղկոմի և սկզբնական կազմակերպությունների հետևողական աշխատանքի շնորհիվ, մոբիլիզացվեցին քաղաքի ձեռնարկությունների կոլեկտիվների ողջ ջանքերը և 1950 թվականի համախառն արտադրանքի պլանը կատարվեց 102, 8 տոկոսով, հայրենիքը ստացավ 10 միլիոն 128 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։

Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար կուսկազմակերպությունները մեծ ուշադրություն էին նվիրում ետ մնացող բանվորներին արտադրության առաջավորներին հասցնելուն։ Դրա համար գործադրվում էր նաև անհատական ուսուցման ձևը։ Այդպես արեց Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի կուսկազմակերպության բյուրոն. գեներատորների արտադրության արտադրամասում պետական մրցանակի լաուրեատ, կոմունիստ Մ. Գալֆայանը և Կ. Ջարկչյանը, որոնք իրենց պլանները կատարում էին 450—500 տոկոսով և աշխատում գալիք տարիների հաշվին, սիրով օգնում էին ետ մնացողներին։ Նրանց շնորհիվ ամեն տարի 15 բանվոր բարձր որակավորում էին ստանում և կատարում արտադրական պլանները։

Հայաստանի արդյունաբերության ձեռք բերած խոշոր նվաճումները, տեխնիկական առաջադիմության արագ տեմպերն ու աշխատանքի արտադրողականության բարձրացումն արդյունք են ոչ միայն հանրապետության կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների տնտեսական-կազմակերպական և քաղաքական-մասսայական աշխատանքի, այլև ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնության։ Սովետական իշխանության տարիներին հանրապետության հազարավոր բանվորներ, ուսանողներ, արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներ, գիտության և կուլտուրայի աշխատողներ իրենց կուլտուր-տեխնիկական գիտելիքները ձեռք են բերել Մոսկվայում, Լենինգրադում ու մյուս քաղաքներում։ Այսպես, Մոսկաբել գործարանի կոլեկտիվի ջանքերով 1946 թվականին Երևանի կաբելի գործարանի համար բազմաթիվ որակյալ կադրեր պատրաստվեց։ Առանց դրա Երևանի կաբելի առաջնեկը չէր կարող սկսել իր աշխատանքը։ Ավտոդողերի գործարանից ամեն տարի իրենց մասնագիտությունները կատարելագործելու համար շուրջ 50 ինժեներա-տեխնիկական աշխատող և արտադրության առաջավոր մեկնում են Մոսկվա և Յարոսլավլ։

Եղբայրական հանրապետությունների միջև ծավալված այդ օգնությունը նպաստեց ոչ միայն կադրերի որակավորմանն ու աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, այլև աշխատողների սերտ կապերին, ծնեց համագործակցության նոր ձևեր և է՛լ ավելի ամրապնդեց մեր հայրենիքի բազմազգ ժողովուրդների տնտեսական, քաղաքական և կուլտուրական կապերը։

Հետպատերազմյան առաջին երկու հնգամյակների տարիներին մեր հանրապետության կուսակցական, արհմիութենական, տնտեսական և կոմերիտական կազմակերպությունների ջանքերով պատրաստվեցին և որակավորվեցին հազարավոր բանվորներ, տեխնիկներ, ինժեներներ և այլ աշխատողներ։ 1947 թվականից Հայաստանի ձեռնարկություններում և հիմնարկություններում պատրաստվեցին և որակավորվեցին տարբեր պրոֆեսիաների 18,5 հազար բանվոր և այլ աշխատող (որից բանվորներ՝ 15,1 հազար), 1950-ին՝ 35,4 հազար (որից բանվորներ՝ 24,8 հազար), 1956-ին՝ նրանց թիվը հասավ 41,5 հազարի (իսկ բանվորներինը 33,3 հազարի)։

ՀԿԿ Կենտկոմի, քաղկոմների, շրջկոմների և սկզբնական կազմակերպությունների հսկա-

ցույց է տալիս, որ նրանց գիտելիքների յուրացումը չի համապատասխանում ժամանակակից պահանջներին։ Բավական է ասել, որ ուսանողների կեսից ավելին սովորում է բավարար։ Ուսման ցածր առաջադիմության պատճառներից մեկը մայրենի լեզվով դասագրքերի և ուսումնա-օժանդակ գրականության պակասն է։ Չնայած համալսարանի «Միտք» հրատարակչությունը վերջին տարիներին լույս է ընծայել մի շարք կարևոր աշխատություններ, այնուամենայնիվ, դրանք դեռևս քիչ են։ Օրինակ, խրախուսելի է 1966 թվականին գիտական կոմունիզմի ամբիոնի անդամների հրատարակած Գիտական կոմունիզմ ուսումնական ձեռնարկը՝ 23 մամուլ ծավալով։

Փիլիսոփայության ամբիոնի անդամները հրատարակել են Մարքսիստական փիլիսոփայության հիմունքներ ուսումնական ձեռնարկը (մոտ 22 մամուլ)։ Հրապարակի վրա է պրոֆ. Ռ. Աբրահամյանի Պահլավերեն-պարսկերեն-հայերեն-ռուսերեն-անգլերեն բառարանը (20 մամուլ), որը բառարանագիտության մեջ եզակի է և լայնորեն տարածվել է աշխարհով մեկ։

Ուսումնական ձեռնարկներից առանձնապես աչքի են ընկնում Գ. Ավագյանի Եվրոպա (կապիտալիստական երկրների տնտեսական ու քաղաքական աշխարհագրություն առարկայի վերաբերյալ) ուսումնական ձեռնարկը (մոտ 27 մամուլ)։ «Միտք» հրատարակչության լույս ընծայած բոլոր աշխատությունները մամուլում արժանացել են դրական գնահատականի։

Այժմ առանձնահատուկ աշխատանք է կատարվում Վ. Ի. Լենինի ծննդյան 100 և Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակը արժանավայել դիմավորելու համար։ Հրապարակի վրա է պրոֆ. Հ. Թումանյանի ղեկավարությամբ պատրաստված Հայաստանի էկոնոմիկան 50-տարում ծավալուն ժողովածուն։

Չնայած համալսարանում հրատարակվում են ուսումնական ձեռնարկներ, մենագրություններ, դասախոսության տեքստեր ու մեթոդական ցուցումներ, այնուամենայնիվ, դրանք չեն բավարարում ժամանակակից պահանջներին, դասագրքերի պատրաստման և հրատարակման հարցով ռեկտորատը և կուսակցական կոմիտեն բավարար չափով չեն զբաղվել։ Հրատարակվող դասագրքերի որակը, ինչպես նաև հեղինակների շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով ցանկալի է Մոսկվայի համալսարանի դրական փորձը կիրառել նաև մեզ մոտ։ Այսինքն՝ լավագույն աշխատանքների համար սահմանել մրցանակ։ Օրինակ՝ 1965 թվականին Մոսկվայի պետական համալսարանի պրոֆ. Դ. Չեսնոկովի Պատմական մատերիալիզմ գիրքը գիտական խորհրդի կողմից արժանացել է Լոմոնոսովյան մրցանակի։

Ուսման որակի վրա բացասաբար է անդրադառնում հեռակա և երեկոյան ուսուցման սիստեմի կազմակերպման գործում, հատկապես ընդունելության քննությունների ժամանակ, կիրառվող սխալ պրակտիկան։ Մեր կարծիքով, երեկոյան բաժնում պետք է սովորեն միայն մասնագիտությամբ աշխատողները, որոնք և բարձրագույն կրթության կարիք են զգում։ Օրինակ, տնտեսագիտական ֆակուլտետում պետք է ընդունել միայն նրանց, ովքեր հաշվային, պլանային, ֆինանսական, վիճակագրական, մի խոսքով՝ տնտեսագիտության ֆրոնտի աշխատողներ են, իրավաբանական ֆակուլտետում՝ դատախազությունում, դատարանում, հասարակական կարգի պահպանության մինիստրության սիստեմում աշխատողներին։ 1966 թվականին համալսարանի երեկոյան և հեռակա բաժիններն են ընդունվել 1061 մարդ, որից միայն 13,7 տոկոսն է աշխատում մասնագիտությամբ։ Լիարժեք մասնագետ չի կարող լինել երեկոյան կամ հեռակա բաժիններն ավարտած շրջանավարտների այն գերակշռող



մասը, որը չի աշխատել ըստ մասնագիտության։

Երեկոյան և հեռակա ուսուցման բարելավման ուղղությամբ կա մի հասունացած հարց ևս. մեր հանրապետության բոլոր քաղաքներից ու շրջաններից զգալի թվով մարդիկ են սովորում այդ բաժիններում։ Լավ կլինի, որ համալսարանը Կիրովականում, Լենինականում, Սևանում, Գորիսում ունենա ուսումնական կոնսուլտացիոն կետեր, որպեսզի հեռակա բաժնի սովորողները հնարավորություն ունենան տարեկան մի քանի անգամ մասնակցելու տեղերում կազմակերպվող կոնսուլտացիաներին։ Երբեմն կարելի է ուսումնա-կոնսուլտացիոն կետերում ընդունել քննություններն ու ստուգարքները։

Այժմ օբյեկտիվ պատճառներով ամեն տարի ավելանում է բուհերում ընդունելության պլանը, այնուամենայնիվ, պլանավորող օրգանները լուրջ սխալներ են թույլ տալիս երիտասարդ մասնագետների պատրաստման ու բաշխման պլանավորման ուղղությամբ։ Այսպես՝ համալսարանի բանասիրական, պատմության, աշխարհագրական ֆակուլտետներում շրջանավարտների գերակշռող մասը չի տեղավորվում աշխատանքի՝ հաստիքային տեղեր չլինելու պատճառով։ Բավական է ասել, որ 1965/66 ուսումնական տարում նշված երեք ֆակուլտետների 207 շրջանավարտներից աշխատանքի են նշանակվել 68-ը։ Բոլորովին նպատակ չունենալով շոշափել հիշյալ ֆակուլտետների հեղինակությունն ու դերը ժողովրդական տնտեսության համար որակյալ կադրեր պատրաստելու գործում, ճշմարտության դեմ չենք մեղանչի, եթե ասենք, որ ընդունելության պլանները պետք է բխեն ժողովրդական տնտեսության ռեալ պահանջներից։ Օրինակ՝ 1966 թվականին պատմության ֆակուլտետում ընդունվել են 95, բանասիրականում՝ 265, աշխարհագրականում՝ 25 մարդ, այն դեպքում, երբ շրջանավարտները չեն տեղավորվում համապատասխան աշխատանքի ըստ մասնագիտության և ավարտելուց հետո դժվար վիճակ է ստեղծվում և՛ նրանց, և՛ համալսարանի համար։ Վատ է վիճակը նաև կենսաբանական ֆակուլտետում, որի շրջանավարտների չնչին տոկոսն է տեղավորվում աշխատանքի։

Մեր կարծիքով, բոլոր մասնագիտությունների գծով կադրեր պետք է պատրաստել հատկապես այնքան, որքան հարկավոր է ժողովրդական տնտեսությանը։ Այժմ աշխատանքի լայն հեռանկարներ են բացված ճշգրիտ և որոշ հումանիտար գիտությունների համար (տնտեսագիտական, իրավաբանական), անհրաժեշտ է այս մասնագիտությունների գծով ավելացնել ընդունվողների թիվը, թեկուզև ի հաշիվ ոչ հեռանկարային մասնագիտությունների։

Չմոռանանք նաև մի ցավոտ հարց. շրջանավարտներից ոմանք հրաժարվում են աշխատանքի մեկնել, հատկապես, գյուղական շրջանները։ Օրինակ՝ բանասիրական ֆակուլտետի 1966 թվականի շրջանավարտներից 14-ը հրաժարվել են ներկայանալ աշխատանքի։

Համալսարանի աշխատանքների կազմակերպման գործում բացասական նշանակություն ունի նաև պրոֆեսորա-դասախոսական անձնակազմի մի մասի ծանրաբեռնվածությունը գիտական, մանկավարժական և վարչական աշխատանքներով, որոնք, բնականաբար, հնարավորություն չեն ունենում պատշաճ ձևով կատարելու իրենց պարտականությունները։ Օրինակ՝ համալսարանի 12 ֆակուլտետների դեկաններից 6-ը միաժամանակ և՛ դեկան են և՛ ամբիոնի վարիչ, և՛ դասախոս, էլ չենք խոսում նրանց տրվող մշտական ու ժամանակավոր այլ հանձնարարությունների մասին։

Բնականաբար, նման գերծանրաբեռնվածության պայմաններում ոչ բոլո-

*րը կարող են իրենց պարտականությունները կատարել ժամանակին ու պահանջված ձևով: Մեր կարծիքով, վատ չի լինի, եթե դեկան ընտրվող ամբիոնի վարիչը ազատվի ամբիոնի վարիչի պարտականություններից:*

*Ժամանակակից էտապում մանկավարժական ու մեթոդական հարցերը բարձրագույն դպրոցի կարևորագույն խնդիրներից են:*

*Ամեն տարի համալսարանի պրոֆեսորա-դասախոսական կազմը համալրվում է իրենց մասնագիտությանը լավ տիրապետող երիտասարդ դասախոսներով, որոնց մեծ մասը չի ստանում բարձրագույն դպրոցի համար պահանջվելիք մանկավարժական ու մեթոդական գիտելիքներ: Պետական ծրագրում ասպիրանտների ու դիսերտանտների համար նախատեսված չէ մանկավարժական ու մեթոդական հարցերի ուսումնասիրություն: Մեր կարծիքով, դա սխալ է. դասախոսը, առաջին հերթին, պետք է նաև մանկավարժ լինի, իմանա դասախոսական աշխատանքի մասնագիտական ու մանկավարժական հարցերը: Վատ չի լինի, եթե ասպիրանտների կամ թեկուզ սկսնակ դասախոսների համար կազմակերպվեն հատուկ դասընթացներ մանկավարժական ու մեթոդական տարբեր հարցերի (մանկավարժության, հոգեբանության, լոգիկայի և այլն) ուսումնասիրության նպատակով:*

*Եթե այս միջոցառումը դժվար լինի, կարելի է ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը կից (թեկուզ հասարակական կարգով) կազմակերպել մեկ կամ երկու տարվա դասընթացներ՝ սկսնակ դասախոսներին մանկավարժական ու մեթոդական օգնություն ցույց տալու համար: Մեր կարծիքով, դա ավելի ձեռնտու է, որովհետև այնտեղ որպես դասախոս կհրավիրվեն տարբեր բուհերի, ինչպես նաև միութենական խոշոր բուհերի առավել որակյալ դասախոսները:*

*Որակյալ մասնագետների պատրաստման գործին վնասում են նաև ուսումնական ծրագրերի հաճախակի, չհիմնավորված փոփոխությունները: Օրինակ՝ մի շարք մասնագիտությունների գծով 1964 թվականին ուսման տևողությունը 5-ի փոխարեն դարձավ 4 տարի: Սա ոչ միայն խառնաշփոթ վիճակ ստեղծեց ուսումնական աշխատանքների կազմակերպման ուղղությամբ, այլև կրճատվեցին մասնագիտական առարկաների դասավանդմանը հատկացված ժամերը: Նոր ստացված ծրագրերին համապատասխան 1967 թվականին ուսման տևողությունը նորից դարձել է 5 տարի:*

*Ջնայած ուսումնական ծրագրերը որոշակիորեն ճշտված են, սակայն կան որոշ բացեր: Օրինակ՝ ըստ ծրագրի Գիտական կոմունիզմի հիմունքներ առարկան դասավանդվում է բարձր կամ ավարտական կուրսերում, այն դեպքում, երբ ուսանողները ցածր կուրսերում արդեն անցել են դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմ, ՍՄԿԿ պատմություն ու քաղաքատնտեսություն: Ուրեմն, Գիտական կոմունիզմի հիմունքներ առարկան քանի որ ավելի դյուրըմբռնելի է, պետք է անցնել առաջին կուրսում, իսկ հետո էլ, ասենք, փիլիսոփայությունը:*

*Գիտության զարգացման արդի ժամանակաշրջանում անհրաժեշտ է առանձին մասնագիտությունների գծով սիստեմատիկաբար կազմակերպել գիտական բանավեճեր, որոնք, անկասկած, բարերար ազդեցություն կունենան ինչպես պրոֆեսորա-դասախոսական կազմի, այնպես էլ ուսանողության մտահորիզոնի ընդլայնման գործում:*

Լ. ՂԱԼՈՒՄՅԱՆ
Համալսարանի տնտեսագիտական
ֆակուլտետի ավագ դասախոս

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՄԵՐ ԻՆՏԵՐՎՅՈՒՆ

### ՎԵՐԵԼՔԻ ՈՒՂԻՈՎ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության տոնի նախօրեին, մեր խմբագրության աշխատակիցը զրույց ունեցավ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր Կենտրոնական վիճակագրական վարչության պետ ընկ. Գ. ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆԻ հետ, խնդրելով պատասխանել ընթերցողներին հետաքրքրող հետևյալ հարցերին:

*ՀԱՐՑ.— Ինչպիսի՞ թափով է զարգանում մեր հանրապետության ժողովրդական տնտեսությունը:*

ՊԱՏԱՍԽԱՆ.— Մեր հանրապետության ժողովրդական տնտեսությունը զարգանում է բուռն թափով: Դա մեր ժողովրդի հերոսական աշխատանքի արդյունքն է, որը ՍՍՀՄ ժողովուրդների հետ միասին պատրաստվում է մեծ խանդավառությամբ դիմավորելու Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության փառապանծ 50-ամյակը: Սովետական Միության զարգացման պատմությանն է նվիրված Կենտրոնական վիճակագրական վարչության հոբելյանական վիճակագրական ժողովածուն, որը լույս կտեսնի տոնի նախօրյակին և լրիվին արտացոլում է մեր երկրի ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման վիթխարի նվաճումները:

Այդ հաջողությունները ուշագրավ են նաև Սովետական Հայաստանում: Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ազգային քաղաքականության շնորհիվ վիթխարի գործ է կատարվել մեզ մոտ:

Դիմենք մի քանի համոզիչ թվերի: Հանրապետությունում արդյունաբերության համախառն արտադրանքը 1966 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճել է 119 անգամ, 1940 թվականի համեմատությամբ՝ 13,8, 1958-ի համեմատությամբ՝ մոտ 2 անգամ: Աճի այսպիսի բարձր տեմպ չունի աշխարհի ո՛չ մի կապիտալիստական երկիր, նույնիսկ ԱՄՆ-ը: Արդյունաբերության արտադրանքի միջին տարեկան աճը 1951—65 թթ. Հայաստանում կազմել է 11,3, ԱՄՆ-ում՝ 4,4, Անգլիայում՝ 3,1, Ֆրանսիայում՝ 5,8, ԳԴՀ-ում՝ 8,1, Իտալիայում՝ 8,2 տոկոս: Այդ նույն ժամանակաշրջանում արդյունաբերության արտադրանքը բնակչության մեկ շնչի հաշվով աճել է Հայաստանում 7,8, ԳՖՀ-ում՝ 6,8, Ֆրանսիայում՝ 4,8, ԱՄՆ-ում՝ 2,7, Անգլիայում՝ 2,6 տոկոս:

Անցած ժամանակաշրջանում հանրապետությունում առավել զարգացավ արտադրական միջոցների արտադրությունը, որը ներկայումս կազմում է ամբողջ արդյունաբերական արտադրանքի 68 տոկոսը: Սա նշանակում է, որ Հայաստանը վաղուց դարձել է բազմաճյուղ ինդուստրիալ երկիր և շարունակում է ընթանալ այդ ուղիով: Մեծապես ավելացել է հանրապետության բանվորների թիվը: Ներկայումս միայն արդյունաբերության մեջ աշխատում են 215 հա-

զար, իսկ ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ մոտ՝ 670 հազար մարդ:

Նշանակալի հաջողություններ են ձեռք բերվել նաև գյուղատնտեսության բնագավառում: Բավական է նշել, որ 1966 թվականին, 1913 թ. համեմատությամբ, գյուղատնտեսության համախառն արտադրանքն ընդհանուր առմամբ ավելացել է 4,2 անգամ, խաղողի արտադրանքը՝ 2,8, ծխախոտինը՝ 17,4, կարտոֆիլինը՝ 3,4, բանջարեղենինը՝ 6,0, մսինը՝ 2,1, կաթինը՝ 2,6, ձվինը՝ 3,6, բրդինը՝ 1,8 անգամ և այլն:

Հիմնովին փոխվել է Հայաստանի գյուղը: Այժմ հանրապետության բոլոր բնակավայրերն էլեկտրիֆիկացված են:

Մեքենայացված է գյուղատնտեսական աշխատանքների մեծ մասը: Այսպես. 1966 թվականի տվյալներով հանրապետության սովխոզների և կոլտնտեսությունների դաշտերում աշխատում էին 7641 տրակտոր (ֆիզիկական միավորներով), 1514 կոմբայն, 7500 բեռնատար ավտոմեքենա և այլ գյուղատնտեսական մեքենաներ:

Ներկայումս գյուղատնտեսական արտադրության մեջ ընդգրկված են ավելի քան 88 հազար մարդ, այսինքն՝ հանրապետությունում աշխատողների 13,1 տոկոսը...

Հայաստանում սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից պետությունը մեծ հատկացումներ է կատարել կապիտալ շինարարության համար: 1921—65 թթ. հանրապետությունում կառուցվել և շահագործման են հանձնվել 340 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն: Ժողովրդական տնտեսության ոլորտում կատարված կապիտալ ներդրումները հասնում են մոտ 3300 միլիոն ռուբլու (համեմատական գներով): Եթե մեզ մոտ սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին կապիտալ ներդրումների ծավալն ընդամենը 1 միլիոն ռուբլի էր, ապա անցած յոթնամյակի վերջին տարում այն հասավ 413 միլիոնի: Հայաստանի կապիտալ ներդրումների հատկացման միջին տեմպերը գերազանցում են ո՛չ միայն բոլոր կապիտալիստական, այլև սոցիալիստական երկրների և անգամ միութենական հանրապետությունների տեմպերին:

Ահա թե որոնք են մեր հանրապետությունում նյութական բարիքներ ստեղծող բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, սովետական ինտելիգենցիայի ձեռք բերած հաջողությունների հիմնական ցուցանիշները:

*ՀԱՐՑ.— Ժողովրդական տնտեսության վերելքն ինչպիսի՞ ներգործություն է ունեցել աշխատավորության նյութական բարեկեցության բարձրացման վրա:*

ՊԱՏԱՍԽԱՆ.—Տարեցտարի ավելանում են հանրապետության ազգային եկամուտը և հատկացումները հասարակական սպառման ֆոնդին:

Ազգային եկամուտը 1966 թվականին, 1958-ի համեմատությամբ, գրեթե կրկնապատկվել է: Միայն 1965 թվականին ազգային եկամտի 65,7 տոկոսը հատկացվել է հասարակական սպառման ֆոնդերին, ըստ որում՝ բնակչության անձնական սպառմանը՝ 58,7 տոկոս: Բնակչությունը 1966 թվականի հասարակական սպառման ֆոնդերից ստացել է մոտ 379 միլիոն ռուբլի, որից լուսավորության համար՝ 146 միլիոն ռուբլի, առողջապահության և ֆիզիկական կուլտուրայի՝ 62, սոցիալական ապահովագրության՝ 116, պետական բնակարանային ֆոնդի պահպանման՝ 15, միանվագ պարգևատրումներ՝ 5 միլիոն ռուբլի. 35 միլիոն ռուբլի վճարվել է բանվորներին և ծառայողներին հերթական արձակուրդի դիմաց: Բացի այդ, արդյունաբերական ձեռնարկությունները, շինարարական կազմակերպությունները և հանրապետության մյուս տնտեսական օրգանները մեծ մասհանումներ են կատարում բանվորներին և ծառայողներին նրանց լավագույն աշխատանքի համար պարգևատրելու նպատակով:



Սովետական կարգերի մեծագույն հաջողություններից մեկն էլ սոցիալական ապահովագրությունն է: Հանրապետությունում 1967 թվականի հունվարի 1-ի դրությամբ թոշակ են ստանում 172 հազար մարդ, որից 132 հազարը՝ ծերության: Այժմ յուրաքանչյուր 10.000 բնակչից մոտ 80-ը թոշակառուներ են: Եթե մեզ մոտ ծերության թոշակի են անցնում կանայք 55, իսկ տղամարդիկ 60 տարեկանից, ապա ԱՄՆ-ում (համեմատաբար) 62 և 65, Շվեդիայում երկու սեռի համար՝ 67, իսկ Կանադայում և Նորվեգիայում՝ 70 տարեկանից:

Ազգային եկամտից ժողովրդական սպառման համար այսպիսի մասհանումներ չունի աշխարհի ոչ մի կապիտալիստական երկիր և դա հասկանալի է, քանի որ սոցիալիստական պետությունն ամեն ինչ անում է մարդու նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման համար, որը նպաստում է բնակչության նորմալ աճին:

1967 թվականի հունվարի 1-ի տվյալներով հանրապետության բնակչության թիվը հասնում է 2253 հազարի (1920 թվականին այն կազմում էր 720 հազար). տարեկան միջին աճը անցած 46 տարում 2,4 տոկոս էր, ըստ որում վերջին տասնամյակի աճը զգալի չափով գերազանցում է առաջին տասնամյակից և կազմում է 3,2 տոկոս, որը գերազանցում է այնպիսի երկրների բնակչության տարեկան միջին աճը, ինչպիսիք են՝ ԱՄՆ-ը, Անգլիան, ԳՖՀ-ն, Ֆրանսիան, Իսպանիան, Կանադան, Թուրքիան:

Երևանի բնակչությունն այժմ մոտ 675 հազար է. վերջին տասը տարվա միջին թվաբանական աճը 5 տոկոս է: Այն հանրապետության բնակչության գրեթե մեկ երրորդն է:

*ՀԱՐՑ.— Ի՞նչ բարեփոխություններ են կատարվել բնակչության կոմունալ սպասարկման գործում:*

ՊԱՏԱՍԽԱՆ.—Սովետական իշխանության առաջին իսկ օրերից Հայաստանը ձեռնամուխ եղավ բնակարանային հարցի լուծմանը: Հարկ չկա նկարագրելու, թե ինչպիսի բնակարանային ժառանգություն ստացանք նախահեղափոխական ժամանակաշրջանից: Որպես լուռ վկա դեռևս պահպանվում են կավածեփ պատերով և հողե տանիքով տներ: Իսկ ներկա՞ն: 1921—1966 թվականներին քաղաքներում և քաղաքատիպ վայրերում կառուցվել են բնակարաններ՝ մոտ 11,6 միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով, որից 7 միլիոնը կամ 67 տոկոսը պետության կողմից, մնացածը՝ աշխատավորների խնայած միջոցներով և պետական վարկով: Միայն հետպատերազմյան տարիներին (1946—1966 թթ.) (դրանից առաջ լրիվ հաշվառում չի կատարվել) գյուղական վայրերում կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի միջոցներով կառուցվել են մոտ 123 հազար բնակելի տներ, 6500 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով: Յոթնամյակի տարիներին հանրապետության ազգաբնակչության մոտ կեսը ստացել է բնակարան կամ բարելավել է բնակարանային պայմանները: Բնակարանային վարձը կապիտալիստական երկրների համեմատությամբ մեզ մոտ զգալի ցածր է:

Ներկայումս Հայաստանը համատարած էլեկտրիֆիկացիայի երկիր է: Էլեկտրականությունը թափանցել է նաև աշխատավորության կենցաղը: Ազգաբնակչության մեկ շնչին ծախսվող էլեկտրաէներգիան 1966 թվականին

կազմել է 1631 կիլովատ-ժամ, մինչդեռ Թուրքիայում՝ 156, Իրանում՝ 58 կվտ-ժամ է և այլն:

Այժմ հանրապետության 23 քաղաքներ և 27 քաղաքատիպ վայրեր, ինչպես նաև գյուղերն ունեն ջրմուղներ, բնակավայրերի մի մասը՝ կոյուղի. բոլոր քաղաքներում ու շրջանային կենտրոններում կան լավ կահավորված հյուրանոցներ: 23 քաղաք արդեն ստանում է բնական և 11 բնակավայր՝ հեղուկ գազ. 1967 թվականի հունվարի 1-ի դրությամբ հանրապետությունում գազիֆիկացված է 184 հազար բնակարան:

Գազի վիթխարի տնտեսական նշանակությունը ցույց տալու համար բերենք մի քանի տվյալներ. 1966 թվականին հանրապետությունում ծախսվել է մոտ 1100 միլիոն խորանարդ մետր բնական և հեղուկ գազ, որը համազոր է 900 հազար տոննա մազութի կամ 1480 հազար տոննա քարածխի: Այս քանակությամբ վառելանյութ ներմուծելու համար տարեկան անհրաժեշտ կլիներ 15 հազար ցիստեռն կամ 60 տոննա տարողությամբ 25 հազար վագոն:

Այժմ հանրային բնակարանային ֆոնդի 88 տոկոսն ունի ջուր, 87-ը՝ կոյուղի, 82-ը՝ կենտրոնացած ջեռուցում, 68-ը՝ գազ: Սրանք թվեր են, որ մեր աշխատավորի օրինական հպարտությունն են հարուցում:

Թանգարանային նմուշ են դարձել «կոնկան», «ֆայտոնը» և «լինեյկան»: 1933 թվականից Երևանում գործում է տրամվայը, 1949-ից՝ տրոլեյբուսը, իսկ Լենինականում 1962 թվականից: Եթե 1934 թվականին տրամվայի միագիծ երկարությունը 15,5 կիլոմետր էր, վագոնների թիվը՝ 24 և փոխադրվել էր 12,6 հազար մարդ, ապա 1966-ին տրամվայի և տրոլեյբուսի միագիծ երկարությունը 181 կիլոմետր էր, վագոնների թիվը՝ 444, տեղափոխվել էր 108 միլիոն մարդ:

Աննախընթաց զարգացել է նաև ավտոմոբիլային տրանսպորտը: Այժմ հանրապետության բոլոր քաղաքները, շրջկենտրոնները, գյուղական բնակավայրերի մեծ մասը կապված են միմյանց ավտոբուսային և տաքսամոտորային տրանսպորտով: 1966 թվականին ավտոմոբիլային մարդատար տրանսպորտով փոխադրվել է ավելի քան 183 միլիոն մարդ:

Մեծ գործ են կատարել նաև հանրապետության կապի աշխատողները: Եթե 1913 թվականին Հայաստանն ուներ միայն 28 փոստ-հեռագրատուն, ապա այժմ՝ 491 փոստային ձեռնարկություն, որից 324-ը գյուղական վայրերում: Այժմ բոլոր բնակավայրերը՝ կոլտնտեսությունները, սովխոզները, գյուղսովետները կապված են հեռախոսային ցանցով: Հեռախոսային կայանների ընդհանուր տարողությունը հասել է 110 հազար համարի: Ամենուր մուտք են գործել ռադիոն և հեռացույցը: Ներկայումս ռադիոընդունիչների, ռադիոտրանսլյացիոն կետերի հեռացույցների թիվն անցնում է 586 հազարից: Հանրապետության բոլոր շրջանները (բացի Զանգեզուրից) և քաղաքների աշխատավորությունն օգտվում է հեռացույցային հաղորդումներից, ինչպես նաև Մոսկվայից և հարևան հանրապետություններից:

Կուսակցության և սովետական կառավարության հոգատարության շնորհիվ վերջին տարիներին բացառիկ ուշադրություն է նվիրվում աշխատավորության կենցաղ-սպասարկմանը: Կառուցվել են մեծ թվով կոմբինատներ և տաղավարներ, մեքենայացված լվացքատներ, բաղնիքներ, վարսավիրանոցներ, քիմիական մաքրման կետեր և այլն: Բավական է նշել, որ այժմ հանրապետությունում կենցաղ-սպասարկման նպատակով հիմնվել են 3000-ից ավելի ֆաբրիկաներ, գործարաններ, կոմբինատներ, ատելյեներ, արհեստանոցներ, ընդունման կետեր, ուր աշխատում են ավելի քան 11 հազար հոգի: Բարելավվել է նաև գյուղական աշխատավորության կենցաղ-սպասարկումը:



*ՀԱՐՑ.— Որքա՞ն է բարձրացել բնակչության գնողունակությունը:*

ՊԱՏԱՍԽԱՆ.—Սովետական իշխանության հաստատման հենց առաջին օրերից կառավարությունը հատուկ ուշադրություն նվիրեց պետական առևտրի զարգացմանը: 1920 թվականի դեկտեմբերին ստեղծված մանրածախ կոոպերատիվ կազմակերպությունները համախմբվեցին և կազմակերպվեց Հայկական սպառողական կոոպերացիա՝ «Հայկոոպ»՝ 121 առևտրական ձեռնարկություններով: Երկար ժամանակ գերիշխում էր մասնավոր առևտուրը: Եթե 1928 թվականին մասնավոր առևտուրը հանրապետության մանրածախ ապրանքաշրջանառության մեջ կազմում էր 37, իսկ հասարակական սննդի մեջ՝ 65 տոկոս, ապա 1932 թվականին այն կազմեց համապատասխանաբար 0,7, 0,6 տոկոս: 30-ական թվականներին զարգացավ նաև կոլտնտեսային առևտուրը: Քաղաքներում կառուցվեցին և բացվեցին կոլտնտեսային շուկաներ, որոնք նպաստեցին ընդհանուր ապրանքաշրջանառության զգալի աճին: Այժմ հանրապետությունն ունի 4259 կահավորված խանութ, 1655 վրան-խանութներ, 748 ճաշարան և ռեստորան, 1381 բուֆետ ու խորտկարան՝ մոտ 33 հազար աշխատողներով:

Մեր աշխատավորության գնողունակության աճն են ցույց տալիս հետևյալ թվերը: 1966 թվականից վաճառվել է 21,2 հազար լվացքի մեքենա, 33,3 հազար հեռացույց, 3000 դաշնամուր, 28 հազար սառնարան և այլն: Զգալի չափով ավելացել է նաև պարենային և արդյունաբերական ապրանքների վաճառքը:

Աշխատավորության բարեկեցության բարձրացման, նրա գնողունակության աճի վկայությունն են հանրապետության խնայողական դրամարկղներում կատարված ներդրումները: 1967 թվականի հունվարի մեկի դրությամբ դրանք կազմում էին 240 միլիոն ռուբլի, որոնք միայն 1966 թվականին ավելացան 65 միլիոնով: 6,5 միլիոնով ավելացավ 3-տոկոսանոց պետական փոխառության գնումը:

*ՀԱՐՑ.— Ինչպիսի՞ նվաճումներ կան գիտության, կուլտուրայի և առողջապահության բնագավառում:*

ՊԱՏԱՍԽԱՆ.—Մեծ են այդ նվաճումները: Սովետական իշխանության տարիներին իր ծաղկման շրջանն ապրեց գիտությունն ու կուլտուրան: 1914 թվականին Հայաստանում գործում էին 446 նախնական, 6 յոթնամյա և 7 միջնակարգ դպրոց՝ մոտ 40 հազար աշակերտներով: 1966/1967 ուսումնական տարում գործում են հանրակրթական 1291 դպրոց՝ 524 հազար աշակերտներով, 271 բանվորական և գյուղացիական երիտասարդական գիշերային դպրոց՝ 28,9 հազար սովորողներով, 43 պրոֆ-տեխնիկական ուսուցման դպրոց՝ 13,8 հազար սովորողներով, 53 միջնակարգ մասնագիտական տեխնիկումներ ու դպրոցներ՝ 36 հազար ունկնդիրներով և 12 բարձրագույն ուսումնական հաստատություն՝ 43,3 հազար ուսանողներով: Այժմ Հայաստանում յուրաքանչյուր 100 մարդուց 35-ը սովորում են:

1959 թվականի մարդահամարի տվյալներով 10 տարեկանից բարձր ազգաբնակչության միայն 2,8 տոկոսը ունեին բարձրագույն կրթություն, 28,8-ը՝

միջնակարգ մասնագիտական և միջնակարգ, 70-ը՝ թերի միջնակարգ և տարրական, անգրագետ էր միայն 0,6 տոկոսը:

Եթե մեզ մոտ 10.000 մարդուց 1963/64 ուսումնական տարում սովորում էին հանրակրթական ցերեկային դպրոցներում 2210 աշակերտ, ապա Անգլիայում՝ 1604, Շվեդիայում՝ 1362, Ֆրանսիայում՝ 1665, Իտալիայում՝ 1258: Եթե Հայաստանում 10.000 մարդուց 192-ը ուսանող են (բարձրագույն հաստատություններում), ապա Թուրքիայում կա միայն 29, Իրանում՝ 10, ԳՖՀ-ում՝ 45, Ֆրանսիայում՝ 71, իսկ ԱՄՆ-ում՝ 212 ուսանող:

1913 թվականին գործում էին ընդամենը 6 հիվանդանոց՝ 212 մահճակալով, 16 մասնավոր պոլիկլինիկա, որտեղ աշխատում էին 73 բժիշկ, այդ թվում նաև ատամնաբույժներ:

1966 թվականի սկզբին հանրապետությունն ուներ 264 հիվանդանոց՝ 18475 մահճակալով, ավելի քան 6000 բժիշկ, 15 հազար միջին բուժաշխատող: Այժմ ազգաբնակչության 10000 հոգուն սպասարկում են 28 բժիշկ և 69 միջին բուժաշխատող: Մանկական բժիշկների թիվը Միության մյուս հանրապետությունների համեմատությամբ ամենաբարձրն է: Եթե 1961 թվականին Հայաստանում 10.000 բնակչին սպասարկում էր 25 բժիշկ, ապա Իրանում՝ 3,4 Իրաքում՝ 2,4, Թուրքիայում՝ 4: Կապիտալիստական երկրներում թանկ է բուժսպասարկումը: ԱՄՆ-ում բուժսպասարկման ամբողջ ծախսերի 70 տոկոսը կատարվում է բնակչության հաշվին:

Նախկինում Հայաստանը չուներ ոչ մի առողջարան: Դիլիջանի բնակլիմայական պայմանները նպաստավոր էին, ուստի այստեղ էին գալիս թոքախտով տառապող հիվանդները՝ իրենց վերջին հույսը դնելով օդի բուժիչ հատկության վրա: Այժմ մեր հանրապետությունն ունի 25 առողջարան և 6 հանգստյան տուն: Ամառվա ամիսներին երեխաների համար բացվում են ճամբարներ: Այս առողջարաններում ու ճամբարներում տարեկան բուժվում և հանգստանում են մոտ 43 հազար մարդ: Հայաստանի աշխատավորների մի մասը բուժվում և հանգստանում է նաև Սովետական Միության մյուս առողջարաններում, հանգստյան տներում ու ճամբարներում:

Առավել մեծ չափով զարգացել է ֆիզիկական դաստիարակությունը: Հանրապետությունում հաշվվում են 380 հազարից ավելի ֆիզկուլտուրնիկներ: Գործում են մեծ թվով սպորտային կառույցներ՝ 15 ստադիոն, 539 ֆուտբոլի, 763 բասկետբոլի, 1640 վոլեյբոլի և 13 թենիսի հրապարակ, 31 արհեստական լողարան, 237 սպորտային մարմնամարզական դահլիճ, 152 սպորտհրապարակ և այլն:

Այս և նման միջոցառումների շնորհիվ բնակչության կյանքի միջին տևողությունը հասել է մինչև 72-ի:

Սովետական կարգերի հաստատումից հետո աննախընթաց ծավալվել են գիտական ու գիտահետազոտական աշխատանքները: Այժմ Հայաստանում գործում է գիտական հիմնարկների լայն ցանց՝ 9063 գիտաշխատողներով, որոնցից 2309-ը՝ գիտության թեկնածուներ, իսկ 298-ը՝ գիտության դոկտորներ են: Հայաստանի գիտությունների ակադեմիան միավորում է տասնյակ գիտահետազոտական ինստիտուտներ, որոնք մշակում են երկրի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման կարևորագույն հարցերը:

Վերջին տարիներս մեծ ուշադրություն է նվիրվում ասպիրանտուրայի միջոցով գիտական կադրերի պատրաստմանը: Հանրապետության ասպիրանտների թիվն այժմ հասնում է1063-ի 1940 թվականի 142-ի փոխարեն:



Սովետական իշխանության տարիներին Հայաստանում հիմնովին ծաղկեցին արվեստը, կինոն. հիմնվեցին կուլտուր-լուսավորական նորանոր հիմնարկներ: Այժմ հանրապետությունն ունի 1180 մասսայական գրադարան՝ 9 միլիոնից ավելի գրքային ֆոնդով, 1050-ից ավելի ակումբ, 658 կինոսարքավորում և 24 թանգարան: 1913 թվականին ազգաբնակչության 100 հոգուն ընկնում էր 0,9, իսկ այժմ՝ 400 գիրք:

Սովետական իշխանության տարիներին բարելավվել է նաև հրատարակչության գործը. ավելացել է գրքերի, ամսագրերի և այլ պարբերականների հրատարակությունը: Միայն 1965 թվականին հրատարակվել է 1033 անուն գիրք՝ 7178 հազար տպաքանակով, 81 անուն ամսագիր՝ 3292 հազար հատոր համարների տպաքանակով և 83 անուն թերթ՝ օրական 623 հազար տպաքանակով:

Աննախընթաց զարգացել է նաև Հայաստանի երաժշտական կուլտուրան: Կոնսերվատորիան, Չայկովսկու անվան երաժշտական դպրոցը պատրաստում են մեծ թվով տաղանդավոր երաժիշտներ: Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի թատրոնի բեմադրությունները, ֆիլհարմոնիայի համերգային, էստրադային ելույթները, Կոմիտասի անվան կվարտետի, պետական երգչախմբի, երգի-պարի և շատ այլ կոլեկտիվների համերգները մեծ հռչակ են վայելում ո՛չ միայն Սովետական Միությունում, այլև աշխարհի շատ երկրներում:

Ցանկանք հանրապետության աշխատավորությանը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-րդ տարելիցը դիմավորել ավելի մեծ սխրագործություններով, ժողովրդական տնտեսության, կուլտուրայի բնագավառների նորանոր հաջողություններով:

## ԵԿԵՔ ՔՆՆԱՐԿԵՆՔ*

*ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը վերջին ժամանակաշրջանում և, հատկապես, ՍՄԿԿ Կենտկոմի Հոկտեմբերյան (1964 թ.) պլենումից հետո բազմիցս անդրադարձել են գյուղատնտեսության վիճակին, մշակել մի շարք արմատական միջոցառումներ, հսկայական կապիտալ ներդրումներ կատարել գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման համար: Այս միջոցառումների շնորհիվ 1966 թվականին որոշակի հաջողությունների հասավ մեր երկրի գյուղատնտեսությունը: Անցյալ տարիների համեմատությամբ, զգալիորեն աճեց հացահատիկի, բամբակի և գյուղատնտեսական այլ մթերքների արտադրությունը:*

*Սակայն մեր հանրապետության գյուղատնտեսությունը դեռևս առաջ չի ընթանում կուսակցության, կառավարության ու ժողովրդի պահանջներին համապատասխան: Տարիներ շարունակ խոսվում և գրվում է տնտեսապես թույլ սովխոզներն ու կոլտնտեսություններն առաջավորներին հասցնելու և դրանք կազմակերպորեն ամրապնդելու մասին: Բայց արդյունքները գոհացուցիչ չեն: Հանրապետության 202 սովխոզներից 126-ը 1965 թվականի գյուղատնտեսական տարին փակեցին վնասով: Մնացած 78 սովխոզների զգալի մասը չկատարեց պետության սահմանած առաջադրանքը: Վիճակը գրեթե նույնն էր անցյալ տարի:*

*Այժմ սովխոզներն ու կոլտնտեսություններն ունեն թե՛ ժամանակակից տեխնիկա և թե՛ այն տիրապետող ու գործադրող բարձրորակ մասնագետներ: Տնտեսությունների մեծ մասը ղեկավարում են իրենց գործն իմացող, բազ-*

* *Տպագրվում է հարցադրման կարգով:—Խմբ.:*

գիտության, գյուղմեխանիզացիայի, էլեկտրիֆիկացիայի, այգեգինեգործության ու պտղաբուծության, գյուղմինիստրության էկոնոմիկայի և հանրապետության պետպլանին կից տնտեսագիտության ինստիտուտները, ինչպես նաև մի շարք խոշոր լաբորատորիաներ, սելեկցիոն և տոհմաբուծական հիմնարկներ, որոնք իրենց ցանցում ընդգրկում են հարյուրավոր գիտաշխատողներ։ Պետությունն ամեն տարի վիթխարի միջոցներ է տրամադրում հանրապետության գիտահետազոտական հիմնարկների պահպանության, փորձեր ու հետազոտություններ կատարելու համար։ Սակայն արդյունքները դեռևս շոշափելի չեն։ Այսպես, էջմիածնի շրջանը գտնվում է Արարատյան դաշտավայրում, ունի բնակլիմայական բարենպաստ պայմաններ։ Գյուղատնտեսական աշխատանքների մեծ մասը մեքենայացված է։ Շրջանում տեղավորված են հողագիտության, այգեգինեգործության և պտղաբուծության, ընդհանուր երկրագործության, բույսերի պաշտպանության ինստիտուտներ և գիտահետազոտական այլ հիմնարկներ, ուր աշխատում են գյուղատնտեսական գիտությունների 11 դոկտոր, 129 թեկնածու, 348 այլ աշխատող։ Գործը խելացի կազմակերպելու դեպքում այս վիթխարի բանակը կարող է մեծ ներդրում կատարել ո՛չ միայն շրջանի, այլև հանրապետության գյուղատնտեսության զարգացման գործում։ Սակայն գիտահետազոտական որոշ հիմնարկների աշխատանքները դեռևս շոշափելի չեն։

Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված երկարամյա փորձը, անձնական շփումները գիտահետազոտական հիմնարկների հետ մեզ բերում են այն հետևության, որ պետք է գյուղատնտեսական գիտահետազոտական հիմնարկները փոխադրել կոլտնտեսությունների և սովխոզների բազայի վրա։

Չափազանց լուրջ պրոբլեմ է կոլտնտեսություններում և սովխոզներում մեխանիզմների օգտագործումը։ Հայաստանի կոլտնտեսություններում և սովխոզներում կենտրոնացված մեխանիզմները ռացիոնալ և սիստեմատիկ չեն օգտագործվում աշխատանքի լայն ասպարեզ չունենալու պատճառով։ Այսպես, մեքենա-տրակտորային կայանների ժամանակ յուրաքանչյուր թրթուրավոր տրակտորին սպասարկում էին երկու տրակտորիստ՝ իրենց օգնականներով, որոնք տարին բոլոր ապահովված էին աշխատանքով և մեխանիզմներն էլ դուրս էին գրվում մեկուկես-երկու նորմա կատարելուց հետո միայն։ Իսկ այժմ մեխանիզատորին աշխատանքով ապահովելու համար նրան ամրացվում են 2—3, նույնիսկ 4 մեխանիզմ, որոնց տեխնիկական խնամքն ու պահպանումը ֆիզիկապես հնարավոր չէ, էլ չենք խոսում դրանց ռացիոնալ օգտագործման մասին։ Եթե այդ ամենին ավելացնենք նաև այն, որ նոր մեխանիզմները, նախկինի համեմատությամբ, ունեն ավելի մեծ հզորություն, ապա պատկերը պարզ կլինի։ Ստեղծվել է այնպիսի վիճակ, որ տնտեսություններում եղած մեխանիզմները յուրաքանչյուր սեզոնում աշխատում են միայն 10—15, իսկ տարվա ընթացքում՝ 15—30 օր։

Հայտնի է, որ տեխնիկան մեր օրերում բուռն թափով զարգանում ու կատարելագործվում է։ Ուստի անհրաժեշտ է, որ տնտեսությունները սիստեմատիկ նորացնեն իրենց տեխնիկական հզորությունը։ Սակայն հարց է ծագում. նրանք ի վիճակի՞ են այդ անելու։ Կարծում ենք, ոչ։ Մեր կարծիքով, ավելի նպատակահարմար է քիչ հողատարածություն ունեցող տնտեսությունների համար ստեղծել մեքենավարձակալական պետական կայաններ և այնտեղ կենտրոնացնել մեխանիզմներն ու մեքենաները։

Հողային օրգաններն երբեմն ճիշտ չեն վարվում, երբ տնտեսապես թույլ կոլտնտեսությունները վեր են ածվում սովխոզների։ Անցած տարիների փորձը ցույց տվեց, որ այդպիսիք ո՛չ միայն չեն ամրապնդվում տնտեսապես, այլ ընդհակառակը, տնտեսական տարին փակում են վնասով։ Այսպես, էջմիածնի շրջանի կոլտնտեսությունների և սովխոզների վերջին տարիների տնտեսական ցուցանիշներից երևում է, որ մեկ հեկտարի հաշվով հիմնական կուլտուրաներից կոլտնտեսությունները սովխոզներից 2—3 անգամ ավելի բերք են ստացել։

Այս վիճակի գլխավոր պատճառը, մեր կարծիքով, այն է, որ կոլտնտեսություններում աշխատողների նյութական շահագրգռվածությունն ավելի բարձր



է։ Կոլտնտեսականը քաջ գիտե, որ բարձր բերքի դեպքում բարձր կլինի նաև իր եկամուտը, մինչդեռ սովխոզի բանվորը վարձատրվում է մեկ միավորի վրա կատարած աշխատանքի համար (անկախ բերքատվությունից)։ Նույնիսկ միջին բերքատվությունը չապահովելու դեպքում նրա վարձատրությունը չի իջնում. բոլոր դեպքերում նա ստանում է իր աշխատավարձը, արձակուրդային, ծերության թոշակը և միաժամանակ օգտվում այն բոլոր արտոնություններից, ինչից՝ կոլտնտեսականները։ Մեր կարծիքով, անհրաժեշտ է ոչ թե թույլ կոլտնտեսությունները սովխոզների վերածել, այլ դրանք ամրապնդել ու առաջավորներին հասցնել։

Գործին քիչ է օգնում նաև այն, որ երբեմն կուսակցական և սովետական օրգանները հանդես են գալիս տնտեսությունների ղեկավարների խնամակալի դերում, նույնիսկ միջամտում իրենց քիչ վերաբերող հարցերի լուծմանը։

Անժխտելի է կուսակցության ղեկավար դերը։ Սակայն, կուսակցության գյուղական շրջկոմը պետք է, ամենից առաջ, ճիշտ ուղղություն տա տեղական կուսկազմակերպություններին, զբաղվի նոր մարդու դաստիարակության հարցերով, մոբիլիզացնի կոմունիստների և բոլոր աշխատավորների ուժերը մեր կուսակցության և կառավարության դիրեկտիվները հաջողությամբ կենսագործելու համար։

Մեր կարծիքով, ժամանակն է, որ գյուղատնտեսական արտադրության կազմակերպման և կառավարման սիստեմում մտցվի ռեալ և լուրջ փոփոխություն։ Անհրաժեշտ է ընդլայնել տնտեսությունների ու նրանց ղեկավարների իրավունքները, որը հնարավորություն կստեղծի կրճատելու գյուղատնտեսության ղեկավարմամբ զբաղված օրգաններն ու նրանց հաստիքները։ Այս հանգամանքը կնպաստի, մի կողմից՝ տնտեսելու նյութական միջոցներ, մյուս կողմից՝ պայմաններ կստեղծի այդ օրգաններում աշխատող հազարավոր որակյալ կադրերին ներգրավել արտադրության ոլորտը։

Զարգացման արդի էտապում անհրաժեշտություն է դարձել մեկ միասնական կազմակերպության մեջ միավորել գյուղատնտեսությամբ զբաղվող բազմաթիվ օրգաններ, որը պետք է զբաղվի ո՛չ միայն տնտեսությունների ղեկավարման, այլ նրանց մատակարարման, արտադրության մեջ առաջավոր փորձի ու տեխնիկայի արմատավորման, նոր սորտերի և անասունների ցեղերի բարելավման, տնտեսությունների աշխատանքի կոորդինացման, ջրամատակարարման և այլ հարցերով։

Կուսակցական շրջկոմները և շրջանային սովետի գործադիր կոմիտեները պետք է ձեռնպահ մնան տնտեսությունների ընթացիկ գործերին միջամտելուց, միջին ղեկավար կադրերի նշանակման և ազատման իրավունքը պետք է թողնեն տնտեսություններին, իսկ իրենք կատարեն վերահսկողության ֆունկցիա, իրենց խորհուրդներով օգնեն տեղական կազմակերպություններին արտադրության մեջ ճիշտ տեղաբաշխելու կոմունիստների և մասնագետ կադրերի ուժերը։

Այժմ, երբ կոլտնտեսություններն ու սովխոզները ղեկավարում են բարձրագույն կրթություն ունեցող մասնագետներ և արտադրության փորձված կազմակերպիչներ, վերադաս կուսակցական, սովետական ու գյուղատնտեսական օրգանները պետք է հրաժարվեն արտադրության մեջ աշխատող կադրերի նկատմամբ խնամակալական հին, իր դարն ապրած ձևերից, նրանց դաստիարակելու հին մեթոդներից։

Գյուղատնտեսական արտադրության վերելքի համար այժմ չափազանց կարևոր է աշխատուժի ռացիոնալ օգտագործումը։ Այս կապակցությամբ էական նշանակություն ունի կոլտնտեսականների և սովխոզների բանվոր-ծառայողների տրամադրության տակ գտնվող տնամերձ հողամասերի օգտագործումն ու անասունների պահպանումը։ Սովխոզներում և կոլտնտեսություններում կան մարդիկ, որոնք չեն աշխատում հանրային տնտեսության մեջ, բայց օգտվում են կոլտնտեսականի և սովխոզի բանվորի իրավունքներից։ Մեր կարծիքով, այդպիսիների իրավունքները պետք է սահմանափակել։

Մրգաշատի սովխոզն ունի 705 տնտեսություն, 990 աշխատողներով՝ 560 տղամարդ և 430 կին։ Սովխոզի աշխատանքներին անմիջապես մասնակցում են 524-ը, այսինքն՝ յուրաքանչյուր ընտանիքից միջին հաշվով մեկից էլ պա-

կաս։ Թվերը ցույց են տալիս, որ սովխոզի աշխատողների համար վարձատրության գոյություն ունեցող ձևը ձեռնտու չէ։

Տարեցտարի սովխոզների և կոլտնտեսությունների աշխատավոր ձեռքերի պակասը զգալիորեն մեծանում է, որը մեծ վնաս է հասցնում գյուղատնտեսական արտադրության վերելքին։ Տնամերձ հողամասերը կրճատելու կամ անասունների գլխաքանակը պակասեցնելու, աշխատանքից խուսափողներին պատժելու վերաբերյալ որոշումները և հրահանգները չեն կիրառվում։ Ստացվում է այնպես, որ յուրաքանչյուր մարդ առանց աշխատելու կարող է օգտվել կոլտնտեսականին կամ սովխոզի բանվորին տրված արտոնությունից։

Հարմարվե՞լ ստեղծված վիճակի հետ։ Կարծում եմ, ո՛չ։ Միակ ճիշտ ուղին՝ տնտեսությունների ղեկավարների իրավունքների ընդլայնումն է։ Նրանց պետք է իրավունք վերապահվի արտոնություններից զրկելու բոլոր նրանց, ովքեր ձևականորեն համարվելով սովխոզի բանվոր կամ կոլտնտեսության անդամ, փաստորեն չեն աշխատում այդ տնտեսությունում։

Արդի պայմաններում գյուղատնտեսական արտադրության վերելքը հիմնականում պայմանավորված է նաև աշխատողների անձնական, նյութական շահագրգռվածությամբ, որի մասին շատ է խոսվել, բայց քիչ բան է արված։

Չնայած մեր երկրում լուծված են գյուղատնտեսությունը մեքենայացնելու, հանքային պարարտանյութերի ու քիմիկատների արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու, մասնագետներով ու կազմակերպչական կադրերով ապահովելու հարցերը, սակայն անձնական շահագրգռվածության, տնտեսությունների ղեկավարների սեփական նախաձեռնության և իրավունքների սահմանափակումների հետևանքով գյուղատնտեսությունը մեզ մոտ դանդաղ է զարգանում։

Կոլտնտեսություններում ու սովխոզներում անձնական շահագրգռվածությունն ամենագլխավոր, ամենալուրջ, ամենաէական հրատապ լուծում պահանջող հարցն է։ Առանց այդ հարցի լուծման անհնար է բարձրացնել գյուղատնտեսության մակարդակը։

Հայտնի է, որ կոլտնտեսություններում ու սովխոզներում գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը դեռևս անբավարար է։ Իսկ գյուղատնտեսական ու վերադաս օրգանները, հարմարվելով ստեղծված վիճակի հետ, կատարում են համեմատաբար ցածր պլանավորում։ Անհրաժեշտ է անձնական շահագրգռվածություն առաջացնել ո՛չ միայն շարքային աշխատողի, այլ բոլոր նրանց մոտ, ովքեր զբաղվում են գյուղատնտեսական արտադրությամբ։ Կոլտնտեսականների և սովխոզների բանվոր-ծառայողների լայն շրջաններում, ժողովներում ու խորհրդակցություններում հաճախ է խոսվում անձնական շահագրգռվածության ձևերի ու մեթոդների մասին, որոնք անհրաժեշտ են կիրառել գյուղատնտեսության զարգացման արդի էտապում։

Կոլտնտեսությունների և սովխոզների կազմակերպման օրից անցել է շուրջ 40 տարի. զգալի տեղաշարժեր են կատարվել նրանց տնտեսական ու քաղաքական կյանքում. սակայն տնտեսական խթանման ու աշխատանքների կազմակերպման բնագավառում վճռական փոփոխություն չի եղել։

Արտադրության մեջ աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու համար առաջարկում ենք կենսագործել հետևյալ միջոցառումները։ Հաշվի առնելով Միության, հանրապետության և շրջանների ժողովրդատնտեսության պահանջները, պլանավորող օրգանները պետք է կապ կան տնտեսությունների պահանջները, պլանավորող օրգանները պետք է կապ ստեղծեն և ուղղություն տան կոլտնտեսություններին ու սովխոզներին՝ համապատասխան քանակությամբ գյուղատնտեսական մթերքներ արտադրելու գործում։ Իսկ կոլտնտեսություններն ու սովխոզները, ելնելով դրանից և հաշվի առնելով եղած հնարավորությունները (մեքենաները, քիմիկատները, ոռոգումը, պարարտանյութերը), մասնագետներին կենտրոնացնեն սովխոզի կամ կոլտնտեսության ղեկավարության (վարչության կամ խորհրդի) տրամադրության տակ, իսկ բրիգադներին և ֆերմաներին, բանվորներին ու գյուղացիներին, ելնելով պետական առաջադրանքներից ու տեղի պայմաններից, տալ մեկ միավոր հեկտարի կամ մեկ ֆուրաժային կովի հաշվով գյուղատնտեսական



մթերքների արտադրության բարձր պլան։ Այսպիսի պայմաններում աշխատողներին տրվում է համապատասխան վարձատրություն և միաժամանակ նրանց է թողնվում պլանից ավելի արտադրածի համապատասխան տոկոսը, որը կորոշի կոլեկտիվը։ Յուրաքանչյուր ոք, առանց միջամտության, կձգտի ավելին արտադրել, որովհետև անձնապես շահագրգռված է, գիտի, որ որքան շատ արտադրի, այնքան շատ կստանա։ Օրինակ, այժմ խաղողի մեկ հեկտարից պահանջվում է 100 ցենտներ բերք։ Բանվորն իր անձնվեր աշխատանքով ստանում է 200 ցենտներ, որոշման համաձայն ավելի արտադրած համապատասխան տոկոսը տրվում է արտադրողին։

Վարձատրության այս ձևի շնորհիվ կոլտնտեսությունը կամ սովխոզը վնաս չի կրի, երկրում կստեղծվի մթերքների առատություն։ Բանվորներն ու ծառայողները կապահովվեն նյութապես և կդառնան արտադրության իսկական տերերը։ Համաժողովրդական վերահսկողություն կստեղծվի պետական ու հանրային ունեցվածքի նկատմամբ, կկրճատվի հոսքը գյուղից դեպի քաղաք, կվերանան վատնումները, պորտաբուծությունը, կաճեն հողի իսկական մշակների շարքերը։

Բարձրացնելով անձնական շահագրգռվածությունը և պատասխանատվությունը, վերացնելով դիմազրկման ամեն երևույթ, լայն հնարավորություններ ստեղծելով անձնական ունակությունների դրսևորման համար, համաժողովրդական ունեցվածքը կպահպանեն ամենքը և զրպարտիչները, կարիերիստները, անբանները այլևս անելիք չեն ունենա. ավելին, նրանք կդաստիարակվեն, կզբաղվեն հանրօգուտ աշխատանքով, կդառնան հասարակության իսկական անդամներ։ Ուստի, կյանքը հրամայաբար պահանջում է վերացնել այդ խոչընդոտները։

Ժ. ՍԱՐԳՍՅԱՆ

## ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

Վերջին տասը տարիների ընթացքում հանրապետության արդյունաբերության հիմնական ֆոնդերը աճել են ավելի քան 3 անգամ։ Ըստ որում վիթխարի չափերով ավելացել է հիմնական ֆոնդերի աճի յուրաքանչյուր տոկոսի բացարձակ մեծությունը, որը ներկայումս չափվում է տասնյակ միլիոնավոր ռուբլիներով։ Բավական է նշել, որ այժմ յուրաքանչյուր տարում հանրապետության արդյունաբերության մեջ ներդրվում են ավելի մեծ քանակությամբ հիմնական ֆոնդեր, քան առաջին և երկրորդ հնգամյակում միասին վերցրած։ Հիմնական ֆոնդերի բարձր տեմպերով աճը նկատվել է հատկապես հանրապետության արդյունաբերության առաջատար ճյուղերում։

Քանի որ հիմնական ֆոնդերի ակտիվ տարրերին է վիճակված ընդլայնված վերարտադրության և հասարակական աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպերի ապահովում, ուստի ժողովրդական տնտեսության ընդհանուր շահերն իրավացիորեն պահանջում են հիմնական ֆոնդերի ընդհանուր կազմում դրանց տեսակարար կշռի բարձրացում։

Բացի այդ, սոցիալիստական արտադրության առաջնահերթ և կարևորագույն խնդիրներից մեկը հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործումն է։ Հիմնական ֆոնդերի լրիվ և ռացիոնալ օգտագործումը հնարավորություն է տալիս բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և առկա հիմնական ֆոնդերով մեծացնելու արտադրանքի թողարկման ծավալը։ Վերջինս կապիտալ ներդրումների տնտեսման հիմնական գործոններից մեկն է։ Մյուս կողմից, հիմնական ֆոնդերի ռացիոնալ օգտագործումը թույլ է տալիս կրճատելու արտադրանքի թողարկման վրա կատարված ծախսերը։

Հիմնական ֆոնդերի լրիվ օգտագործումը միաժամանակ մոտեցնում է դրանց ֆիզիկական և բարոյական մաշվածքի ժամկետները։ Իսկ այդ հանգամանքը չափազանց կարևոր է տեխնիկայի զարգացման ժամանակակից

բացարձակ մեծությունը ընդունենք հարյուր տոկոս, ապա 1965 թվականին (1955 թվականի նկատմամբ) 28,4 տոկոսով ֆոնդահատույցի նվազումը տեղի է ունեցել ճյուղային կառուցվածքի փոփոխության, իսկ 71,6 տոկոսը՝ հիմնական ֆոնդերի վատ օգտագործման հետևանքով։

Հիմնական ֆոնդերի օգտագործման բարելավումը և այդ հիման վրա ֆոնդատվության բարձրացումը հանրապետության արդյունաբերության աշխատավորների համար (տնտեսության կառավարման և պլանավորման նոր սիստեմի պայմաններում) դարձել է առաջնակարգ խնդիր։ Տնտեսական ներկա քաղաքականության դեպքում (երբ արմատավորվում է ֆոնդերի վճարելիության սկզբունքը) ձեռնարկությունները բյուջեին մուծումներ են կատարելու ո՛չ թե պլանային կամ փաստային շահույթի չափից, այլ կայուն համամասնությամբ իրենց տրամադրության տակ ունեցած հիմնական և շրջանառու ֆոնդերի գումարից։ Ուստի նրանք պետք է շահագրգռված լինեն հասնելու այն բանին, որպեսզի իրենց տրամադրության տակ եղած արտադրական ֆոնդերով ավելի շատ արտադրանք թողարկեն և, հետևաբար, շահույթ ստանան։

Հիմնական ֆոնդերի օգտագործման բարելավման հիմնական պայմանը աշխատանքի արտադրողականության առավելագույն աճն է, որը ձեռք է բերվում առաջին հերթին տեխնիկական զինվածության բարձրացման շնորհիվ։ Ընդ որում, որպես օրինաչափ երևույթ, աշխատանքի արտադրողականությունը (1 աշխատողին ընկնող համախառն արտադրանքի ցուցանիշով) պետք է ավելի արագ աճի, քան նրանց տեխնիկական զինվածությունը (որը հիմնականում չափվում է 1 աշխատողին ընկնող հիմնական ֆոնդի գումարով)։ Հանրապետությունում նկատվում է հակառակ պատկեր։ Եթե 7-ամյակում հիմնական ֆոնդերի ծավալը աճել է մոտ 130 տոկոսով, ապա աշխատանքի արտադրողականությունն աճել է ընդամենը 29 տոկոսով։

Ֆոնդահատույցի պլանավորման ամենից էական պահանջն աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպի ապահովումն է ֆոնդազինվածության աճի տեմպերի նկատմամբ, ընդ որում՝ ա) որքան բարձր է աշխատանքի արտադրողականության աճի տեմպը ֆոնդազինվածության աճի տեմպից, այնքան մեծ է ֆոնդահատույցը. բ) ֆոնդահատույցը մնում է անփոփոխ, երբ աշխատանքի արտադրողականության աճի և ֆոնդազինվածության աճի տեմպերը համընկնում են. գ) ֆոնդահատույցը նվազում է, երբ աշխատանքի արտադրողականությունն աճում է ավելի դանդաղ, քան ֆոնդազինվածությունը։

Նշենք, որ հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործման գնահատման համար ֆոնդահատույցի առկայությունը դեռևս բավարար չէ։ Հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձր մակարդակին հասնելու համար անհրաժեշտ է բարձրացնել ձեռնարկության ողջ կոլեկտիվի, առանձնապես սարքավորումների վրա աշխատող և դրանց վերանորոգմամբ զբաղվող բանվորների նյութական շահագրգռվածությունը։ Մյուս կողմից, անհրաժեշտ է ձեռնարկությանը հատկացվող հիմնական ֆոնդերի չափը և ընդհանուր կառուցվածքը սահմանել ֆոնդահատույցի մեծության հիման վրա՝ հաշվի առնելով ժողովրդատնտեսության ընդհանուր շահերը։

Հաճախ, որպես հիմնական ֆոնդերի օգտագործման ցուցանիշ, ֆոնդահատույցի մեծությունը նվազում է ո՛չ ավյալ ձեռնարկության թերացման պատճառով։ Որոշ դեպքերում արդյունաբերության մեջ նոր մեքենաների և սարքավորումների գները դրանց արտադրողականության նկատմամբ ավելի արագ են աճում, որի հետևանքով սարքավորումներն օգտագործող ձեռնարկություններում հիմնական ֆոնդերը ևս ավելի արագ են աճում, քան թողարկվող արտադրանքը։ Այստեղից բխում է, որ ձեռնարկության ֆոնդազինվածության աճի տեմպերը գերազանցում են աշխատանքի արտադրողականության տեմպերին։ Իսկ այդ երևույթը, բնականաբար, հանգեցնում է ֆոնդահատույցի անկման։ Շարադրված փաստի իրավացիության մեջ համոզվելու համար բերենք հետևյալ պարզ օրինակները. 1К62 հաստոցի աշխատանքի արտադրողականությունը 1Л62 հաստոցի նկատմամբ բարձր է ընդամենը 15 տոկոսով,



մինչդեռ նրա արժեքը նույն 1К62 հաստոցի արժեքը գերազանցում է 50 տոկոսով։ Երկկողմանի գայլիկոնող ագրեգատային հաստոցներն իրենց արտադրողականությամբ, սովորաբար գայլիկոնող հաստոցներին գերազանցում են մոտավորապես 9, իսկ ըստ արժեքի՝ 20—30 անգամ։ Ակներև է, որ ձեռնարկությունը ձեռք բերելով նման հաստոցներ, նվազեցնում է ֆոնդահատույցի մեծությունը։

Նման երևույթները բացասաբար են անդրադառնում արտադրության ընթացքի վրա, թուլացնում են ձեռնարկության նյութական շահագրգռվածությունն ինչպես նոր տեխնիկայի ներդրման, այնպես և հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձրացման գործում։

Բացի այդ, ձեռնարկություններին սարքավորում մատակարարելու, մոնտաժային և հաստոցների համար ծախսվող կապիտալ ներդրումների բնագավառում դեռևս կան լուրջ թերություններ, որոնց հետևանքով զգալի չափով ավելանում է չտեղակայված հաստոցների քանակը։ Ըստ ՍՍՀՄ Կենտրոնական վիճակագրական վարչության տվյալների վերջին տարիների ընթացքում պետական և կոոպերատիվ ձեռնարկություններում ու կազմակերպություններում կապիտալ ներդրումներն աճել են 17 տոկոսով, իսկ չտեղակայված հաստոցների մնացորդը (չհաշված ռեզերվային քանակը)՝ մոտավորապես 80%-ով։

Կարևոր նշանակություն ունի տարվա ընթացքում սարքավորումների օգտակար աշխատաժամանակի երկարացումը՝ նրանց հերթափոխության ժամանակի լրիվ օգտագործման միջոցով։ Հաստոցների հերթափոխության գործակցի վիճակի պարզաբանման կապակցությամբ վերջերս ՍՍՀՄ Կենտրոնական վիճակագրական վարչությունն ուսումնասիրեց Միության 215 տարբեր մեքենաշինական ձեռնարկություններ։ Պարզվեց, որ հիմնական արտադրամասերում տեղադրված հաստոցների հերթափոխության գործակիցը շատ ցածր է։ Ուսումնասիրված ձեռնարկությունների 48 տոկոսում հերթափոխության գործակիցը կազմում էր 0,5—1,5, իսկ 52 տոկոսում՝ 1,2—2,6, ընդ որում 2,6 հերթափոխության գործակից ուներ միայն մեկ ձեռնարկություն։

Հաստոցների հերթափոխության գործակցի մեծացման տնտեսական նշանակությունն ակներև է դառնում հետևյալ պարզ օրինակով. ՍՍՀՄ հաստոցաշինական արդյունաբերության մեջ հերթափոխության գործակցի բարձրացումը 1,3—2-ի, հնարավորություն կտեղծի նույն արտադրական տարածությունների վրա յուրաքանչյուր տարի լրացուցիչ արտադրել 10 հազար մետաղամշակման հաստոց (այսինքն՝ տարեկան արտադրանքի ընդհանուր ծավալն ավելացնել 33 տոկոսով), որն իր հերթին կապահովի համարյա մեկ միլիարդ ռուբլու լրացուցիչ արտադրանք։

ՀՍՍՀ Կենտրոնական վիճակագրական վարչության կողմից հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում կատարած ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հերթափոխության գործակիցը նշված ձեռնարկություններում չափազանց ցածր է։ Այդ ձեռնարկությունների զգալի մասը գործում է երկհերթ աշխատանքային ռեժիմով, սակայն հերթափոխության գործակիցը տատանվում է 0,87—1,5-ի սահմաններում։

Հիմնական ֆոնդերի ծավալուն օգտագործումը չի սահմանափակվում միայն հաստոցների հերթափոխության գործակցի բարձրացմամբ. այն սերտորեն կապված է և հերթափոխի ընթացքում հաստոցների աշխատաժամանակի օգտագործման հետ։ Ուսումնասիրությունները պարզում են, որ հերթափոխի ընթացքում սարքավորումների պարապուրդները հասնում են 15—22 տոկոսի։ Սարքավորումների առանձին խմբերի նման պարապուրդները պատճառ են դառնում տարբեր արտադրամասերի և արտադրական տեղամասերի միջև թողարկման հնարավորությունների անհամամասնության։ Սա էր հերթին հետևանք է ձեռնարկության ներսում սարքավորումների որոշ տեսակի պակասի և մյուս տեսակի ավելցուկի։ Իսկ նման դեպքերը խախտում են ձեռնարկության աշխատանքի ռիթմը։

Այստեղից երևում է, որ սարքավորումների օգտագործման արդյունավետության աստիճանը բնորոշելիս պետք է հերթափոխության գործակցի հետ

միաժամանակ հաշվել նաև այդ սարքավորումների օգտագործման գործակիցը ներհերթափոխային ժամանակամիջոցում։

Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի հերթափոխության գործակիցը, օրինակ (1966 թ.), հավասար էր 2,10, իսկ սարքավորումների պլանային աշխատաժամանակի ֆոնդը (այսինքն՝ աշխատաժամերի տարեկան ֆոնդը առանց նորոգումների համար նախատեսված ժամանակի) օգտագործվում էր 58,3 տոկոսով։ Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում, ուր հերթափոխության գործակիցը (1966 թ.) 1,7 էր, աշխատաժամանակի ֆոնդը օգտագործվում էր 53,1 տոկոսով։ Դա արդյունք է պլանների և հաստոցների տարբեր խմբերի առկա կարողությունների ու հնարավորությունների անհամապատասխանության։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում յոթ «նեղ տեղերը» վերացնելու համար պահանջվում է 15000 ռուբլու կապիտալ ներդրում։ Դրա շնորհիվ հնարավոր կլինի հաստոցների բեռնվածությունը 53,1 տոկոսից հասցնել 78,3 տոկոսի, իսկ արտադրանքի թողարկումն ավելացնել 43 տոկոսով, լրացուցիչ արտադրանքի թողարկման ժամանակ օգտագործելով 1966 թ. պլանով չօգտագործված 330.800 ռուբլու ընդհանուր արժեքով հաստոցներ։

Բերված օրինակները ցույց են տալիս, որ սարքավորումների ծավալուն օգտագործման հնարավորությունները բավականաչափ մեծ են։

Հաշվի առնելով հիմնական ֆոնդերի ռացիոնալ օգտագործման տնտեսական արդյունավետության մեծ նշանակությունը, անհրաժեշտ է ձեռնարկության աշխատանքային գործունեության գնահատականը որոշել ո՛չ միայն տարեկան պլանի կատարման չափով, այլև հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործման մակարդակով։

Սարքավորումների և, ընդհանրապես, հիմնական ֆոնդերի առավելագույն արդյունավետությամբ օգտագործելու խնդիրը մինչև հիմա արտադրության աշխատողների բավարար ուշադրությանը չի արժանացել։ Այդ խնդրի ճշգրիտ լուծումը, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում, կապահովի արտադրության տեմպերի արագ ու անընդհատ աճ, կապիտալ ներդրումների բավականաչափ խնայողություն և, դրանով իսկ, կկրճատվի մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման տևողությունը։

Վերջապես նշենք, որ հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործման համար կարևոր նշանակություն ունի նաև արտադրության մեջ ինչպես հիմնական ֆոնդերի օգտագործման, այնպես էլ տնտեսության ղեկավարման և արտադրության կազմակերպման հետ առնչված ընթացքի հաշվարկների ավտոմատացումը։ Այդ կապակցությամբ առանձին արտադրամասերը և տեղամասերը պետք է հագեցված լինեն հաշվիչ հարմարանքներով, իսկ ձեռնարկության կամ ճյուղի ղեկավարման հետ կապված հաշվարկները նպատակահարմար է կատարել ժամանակակից էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգնությամբ։ Օրինակ, Մոսկվայի «Ֆրեզեր» գործարանում կոնվեյերային գծի վրա ավտոմատ սարքերի օգտագործումը հնարավորություն տվեց բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը 16 տոկոսով, միաժամանակ կրճատելով բանվորների թվաքանակը 12, պարապուրդի ժամանակը՝ 30 տոկոսով, անավարտ արտադրության ծավալը՝ 2 անգամ և արտադրանքի ինքնարժեքը՝ 30—40 տոկոսով։ Այդպիսի միջոցառումը հնարավորություն կընձեռի ցանկացած մոմենտին իմանալ հիմնական ֆոնդերի օգտագործման աստիճանը և նրանց առկա ռեզերվների օգտագործման հնարավորությունները։

**Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

# ԱՏՈՄԱՅԻՆ ԷՆԵՐԳԵՏԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Ջերմային շարժիչի գյուտը (որը ջերմային էներգիան վերափոխում է մեխանիկական աշխատանքի) արագընթաց առաջադիմության դարագլուխը բացեց։ Մարդը հնարավորություն ունեցավ ավելի լայն մասշտաբներով օգտագործել էներգիան և իրագործել նախկինում անիրագործելին։ Սկսվեց ինդուստրիայի դարաշրջանը։ Դա վիթխարի առաջընթաց էր քաղաքակրթության համար։ Սակայն խիստ սահմանափակ էր մարդու տրամադրության տակ եղած միայն մեխանիկական շարժման հետ կապված էներգիան։ Այն հնարավոր էր օգտագործել միայն այնտեղ, որտեղ ստացվում էր կամ նրա մոտակայքում։ Էներգիան փոքր տարածությունների վրա (մինչև մի քանի տասնյակ մետր), հաղորդվում էր այնպիսի սարքերի օգնությամբ, ինչպիսիք շարժափոկերն ու գլաններն են։ Մոտ հարյուր տարի առաջ գիտության ու տեխնիկայի զարգացման ասպարեզում մարդկությունը կատարեց մեծ քայլ՝ հայտնագործելով էլեկտրաէներգիան։ Մեխանիկականի համեմատ վերջինիս առավելությունն այն է, որ կարելի է փոխանցել անսահմանափակ տարածությունների վրա, օգտագործել բազմապիսի ձևերով։ Այն հնարավոր է կրկին վերափոխել մեխանիկական էներգիայի և էլեկտրաշարժիչների օգնությամբ աշխատեցնել մեքենաները։ Բացի այդ, էլեկտրաէներգիան օգտագործվում է լուսավորության, ջեռուցման, օդի կոնդեսացման համար, էլեկտրաքիմիայի, էլեկտրամետալուրգիայի և արտադրության ու կենցաղի այլ բնագավառներում։ Ժամանակակից հասարակության կյանքն անհնարին է առանց էներգիայի։

Արդի քաղաքակրթությունը հաճախ անվանում են մեքենաների դար, սակայն ճիշտ կլիներ այն կոչել էներգետիկայի դար։ Վաղուց ի վեր մարդն իր պահանջների բավարարման համար ստեղծել է նորանոր մեքենաներ։ Բայց էներգիայի աճող սպառումը կարող է հանգեցնել այն բանին, որ մի օր կսպառվեն մարդկության այժմ հայտնի էներգիայի բոլոր պաշարները։

Ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու առնչությամբ 1964 թվականի սեպտեմբերին Ժնևում կայացած միջազգային III կոնֆերանսում բերված տվյալներով, օրգանական վառելիքի համաշխարհային պաշարները մարդկությանը կբավարարեն 150 տարի (հաշվի առնելով նրանց ծախսումների տարեկան 5 տոկոս աճը), իսկ ավելի հոռետեսների կարծիքով՝ 75 տարի։

Կենսական բացառիկ անհրաժեշտություն է խմելու ջուրը, որի պաշարները ևս սահմանափակ են։ Այժմ երկրագնդի շատ ժողովուրդներ խմելու ջրի խիստ պակաս են զգում, իսկ որոշ երկրների զարգացումը արգելակվում է նույն պատճառով։ Արդյունաբերությունը, կենցաղն ու գյուղատնտեսությունը ջրով ապահովելու հարցը հրատապ է։

Խմելու ջուր կարելի է ստանալ ծովային ջրից՝ բազմաստիճան գոլորշիացնող կայանքներում։ Այժմ ՍՍՀՄ-ում և այլ երկրներում գործում են սովորական վառելիքով և ատոմային էներգիայով բանող այդպիսի հուսալի կայանքներ։

Մեր երկրում զգալի աշխատանք է տարվում ծովաջրի գոլորշիացման համար ատոմային էներգիան օգտագործելու ուղղությամբ։ Շևչենկո քաղաքում արդեն գործում է աշխարհում առաջին ոչ ատոմային փորձարդյունաբերական ծովաջրի գոլորշիացման կայանքը։ Այժմ ՍՍՀՄ-ում կան շրջաններ, ուր խմելու ջրին փոխարինում է ծովաջուրը։

Աշխարհի էներգետիկայի ժամանակակից վիճակը ցույց է տալիս, որ մոտ ապագայում մեծ չափով աճելու է օրգանական վառելիքի սպառումը, իսկ ավելի արագ՝ հեղուկ և գազային վառելիքներինը։ Քիմիական արդյունաբերության մեջ զգալիորեն կավելանա նավթի, բնական գազի և ածխի օգտագործումը։ Քիմիացումն ապահովում է հումքի ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը և տնտեսական մեծ արդյունք է տալիս։ Քիմիական կարևորագույն արտադրանքի արտադրության համար ածխաջրածնային գազերի կոմբինացված վերամշակումը կապիտալ ծախսերը կկրճատի 20—30, արտադրանքի ինքնարժեքը կիջեցնի 35—40 տոկոսով։ Օրգանական վառելիքի օգտագործմամբ կսահմանափակվեն քիմիական արդյունաբերության հումքային ռեսուրսները։

Չնայած արված կանխագուշակումներին, մարդկությունը չպետք է սարսափի էներգետիկական սովից։ Աշխարհը կարող է դարերի ընթացքում տարեցտարի ավելի շատ էներգիա սպառել, քանի որ այժմ, առանց էական սահմանափակումների, կարելի է ատոմային վիթխարի էներգիա ստանալ։

Միակ բնական նյութը, որն օգտագործվում է որպես միջուկային վառելիք, ուրանն է։ Այն ունի հետևյալ բաղադրությունը (անկախ հանույթի վայրից). ուրան 234՝ 0,006, ուրան 235՝ 0,714, ուրան 238՝ 99,28 տոկոս։ Այս երեք բնական իզոտոպներից միայն ուրան 235-ն է տրոհվում շղթայական ռեակցիայով, իսկ 238-ի մի փոքր մասը նույնպես կարող է տրոհվել նեյտրոնների կլանման ժամանակ, սակայն այն չի պահպանում շղթայական ռեակցիան։

Եթե հնարավոր լինի ազատված նեյտրոններով կառավարել շղթայական ռեակցիան, ապա ամբողջ բնական ուրանը պոտենցիալ ձևով կա-

րող է դառնալ տրոհվող նյութ, այսինքն՝ միջուկային վառելիք։ Այս երևույթը կոչվում է միջուկային վառելիքի ընդլայնված վերարտադրություն, որն իրագործվում է բնական ուրանի տրոհման պահին՝ ջերմության անջատմամբ։ Ժամանակակից ռեակտորներում ուրան 238-ի որոշ մասը փոխարկվում է պլուտոնիում 239-ի, որն այնուհետև տրոհվում է ջերմության անջատմամբ։

Երկրի կեղևում թորիում 232-ի պաշարներն երեք անգամ շատ են, քան բնական ուրանինը։ Այն շղթայական ռեակցիան պահպանող ուրան 235-ի հետ տեղադրելիս փոխարկվում է ուրան 233-ի, որը կարող է շղթայական ռեակցիան պահպանել այնպես, ինչպես ուրան 235-ը և պլուտոնիում 239-ը։ Ուրան 238-ը և թորիում 232-ը երկրորդային միջուկային վառելիքներ են։

Ըստ որոշ տվյալների, ուրանի հանքերի համաշխարհային պաշարների մի մասը կարող է բավարարել (2000 թվականի տարեկան սպառման մակարդակի չափով) մարդկության էլեկտրաէներգիայի սպառման մոտ 1000 տարվա պահանջները։

1954 թվականի հունիսին ՍՍՀՄ-ում, Մոսկվայի մոտ գտնվող Օբնինսկ քաղաքում գործարկվեց աշխարհում առաջին ատոմային էլեկտրակայանը (ԱԷԿ)՝ 5000 կվտ. կարողությամբ։ Մարդկության պատմության ընթացքում առաջին անգամ հնարավոր դարձավ միջուկի տրոհման հաշվին էլեկտրաէներգիա ստանալ։ Առաջին ատոմային էլեկտրակայանի շահագործման փորձը օգնեց լուծելու տեխնիկական մի շարք պրոբլեմներ, արագացնելու խոշոր արդյունաբերական ԱԷԿ-ների շինարարությունը։ Աշխարհում այժմ աշխատում են 55 և կառուցվում են 34 ԱԷԿ-ներ, որոնք մինչև 1970 թվականը շահագործման կհանձնվեն։ Ատոմային էլեկտրակայանների կառուցման և շահագործման փորձը թույլ է տալիս ամենից առաջ խոսելու մարդկանց գիտակցության մեջ հոգեբանական արգելքի հաղթահարման անհրաժեշտության մասին, որը կապված է ատոմային էներգետիկայի նկատմամբ ունեցած որոշ նախապաշարման հետ։

ՍՍՀՄ-ում և արտասահմանում էլեկտրակայանների շահագործման բազմամյա փորձը հերքեց դրանց անվտանգության և հուսալիության մասին եղած բոլոր կասկածները։ Մինչև այժմ ո՛չ ՍՍՀՄ-ում և ոչ էլ արտասահմանում հայտնի չէ մարդկանց առողջությանը վնասող որևէ դեպք։ Ատոմային էլեկտրակայանները մթնոլորտ են արտածում մի քանի անգամ ավելի քիչ բնական ռադիոակտիվ նյութեր, քան նույն հզորության ածխի էլեկտրակայանները։

Ատոմային էլեկտրակայանների կենսաբանական պաշտպանությունը թույլ է տալիս նրանց շինարարությունը իրագործել անմիջականորեն էներգիայի սպառման կենտրոններում, այդ թվում խոշոր քաղաքների սահմաններում։ Այդ հնարավորություն է տալիս էլեկտրաէներգիայի արժեքը 10—40 տոկոսով իջեցնելու։

Ատոմային էլեկտրակայանները լավ են ընկալում բեռնվածության արագ տատանումները, բարձր է դրանց շահագործման կարողությունը և դրանք ավելի արագ են արձագանքում բեռնվածության անակնկալ փոփոխություններին, քան ժամանակակից ջերմաէլեկտրակայանները։ Ատոմային էլեկտրակայանների հիմնական առավելություններից մեկը նրանց բեռնվածության բարձր գործակիցն է (նույնիկ 90 տոկոսից ավելի)։

Ատոմային էլեկտրակայանների շահագործման ժամանակ վերանում է վառելիքի առաքման և պահպանման, խարամի հեռացման, մթնոլորտի աղտոտվածության դեմ պայքարելու անհրաժեշտությունը։

Ատոմային էլեկտրակայաններ են կառուցում Եվրոպայի, Ասիայի և Ամերիկայի 20 երկրներ։ Աշխարհի գործող ԱԷԿ-ների հզորությունը մոտ 7 մլն. կվտ է, իսկ 1970 թվականին կհասնի մոտ 16 մլն. կվտ-ի։ Ենթադրում են, որ 1980 թվականին աշխարհում կգործեն 150—160 մլն. կվտ կարողությամբ ատոմային էլեկտրակայաններ։

Սովետական Միությունն ունի ամեն տեսակի օրգանական վառելիքի վիթխարի պաշարներ, ինչպես և զգալի հիդրոէներգառեսուրսներ։ Առ 1-ը հունվարի 1960 թվականի դրությամբ մեր երկրում կային հետախուզված և հավանական հետևյալ պաշարները. քարածուխ՝ 4899,9 մլրդ. տոննա, գորշ ածուխ և լիգնիտ՝ 2865,4 մլրդ. տոննա, բնական գազ՝ 60000 մլրդ. խոր. մետր. Նույն ժամանակամիջոցում հիդրոէներգառեսուրսները գնահատվում էին տարեկան 2100 մլրդ. կվտ/ժամ։

Էներգառեսուրսների այդպիսի վիթխարի պաշարների առկայությունը վկայում է, որ ՍՍՀՄ-ում էներգիայի պահանջները (երկարատև ժամանակով) լիովին ապահովված են։ Սակայն ՍՍՀՄ եվրոպական մասի որոշ շրջաններում, ուր կենտրոնացված է արդյունաբերության և գյուղատնտեսության զգալի մասը, էներգառեսուրսների սահմանափակությունն արդեն մոտակա մի քանի տարիներին լրջորեն կարգելակի դրանց զարգացումը։ Էներգառեսուրսների սահմանափակությունը ներկայումս կասեցնում է ՍՍՀՄ հեռավոր և հյուսիսային, ինչպես նաև որոշ շրջանների արդյունաբերության զարգացումը։

Մեծ քանակությամբ օրգանական վառելիքի փոխադրումը այդ շրջանները ձեռնտու չէ թեկուզ այն պատճառով, որ անհրաժեշտ է կառուցել նոր երկաթուղագծեր. մյուս հնարավոր ելքը



վառելիքի հանքավայրերին մոտ և խոշոր գետերի վրա էլեկտրակայանների կառուցումն է, այնուհետև էլեկտրաէներգիայի հաղորդումը էլեկտրագծերով, որը միշտ ընդունելի չէ այդքան մեծ հեռավորությունների վրա՝ էլեկտրաէներգիայի հաղորդման մեծ արժեքի պատճառով։

ՍՍՀՄ եվրոպական, հեռավոր, հյուսիսային և այլ շրջանների, իսկ ավելի ուշ՝ ամբողջ Սովետական Միության էներգիայի մատակարարման գործում էական դեր կխաղան ատոմային էլեկտրակայանները։ Այժմ մեր երկրում աշխատում են մի քանի ատոմային էլեկտրակայաններ՝ տարբեր տիպի էներգետիկ ռեակտորներով։ Սովետական ԱԷԿ-ների ընդհանուր կարողությունը հասնում է մոտ 1 մլն. կվտի։ Կառուցվում են նոր էներգետիկ ռեակտորներ։

ՍՄԿԿ ծրագրում նշված է, որ ատոմային էներգիայի արտադրության էժանացմանը զուգընթաց կծավալվի ատոմային էլեկտրակայանների շինարարությունը, հատկապես այն շրջաններում, որտեղ էներգիայի այլ տեսակների պակասություն է զգացվում։

Սովետական Միությունն առաջինը ձեռնամուխ եղավ ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելուն, միաժամանակ անհրաժեշտ նյութատեխնիկական միջոցներ տրամադրեց աշխարհում ատոմային առաջին էլեկտրակայանի, առաջին ատոմային նավի՝ «Լենին» սառցահատի և այլ օբյեկտների կառուցմանը։

1958 թվականին գործարկվեց Սիբիրի ատոմային էլեկտրակայանի առաջին հերթը (100 կվտ), 1965 թ. սկզբին Սիբիրի ատոմային էլեկտրակայանի ընդհանուր կարողությունը հասավ 600 հազար կվտ-ի։ 1964 թվականի ապրիլին Ուրալում շահագործման հանձնվեց 100 հազար կվտ կարողությամբ Բելոյարսկի ԱԷԿ-ը՝ ուրանագրաֆիտային ռեակտորով։ Դրա միջոցով միջուկային գերտաքացման հաշվին ստացվում են շոգու բարձր պարամետրեր, որի շնորհիվ օգտագործվում է շոգու ժամանակակից պարամետրերի համար նախատեսված էներգետիկ սարքավորումը։

1964 թվականի հոկտեմբերին էլեկտրաէներգիա տվեց Նովո-Վորոնեժսկի 210 հազար կվտ կարողությամբ ատոմային էլեկտրակայանը, որի ռեակտորը ջրա-ջրային տիպի է։ Նովո-Վորոնեժսկի ԱԷԿ-ում կառուցվող երկրորդ բլոկը կունենա 365—400 հազար կվտ կարողություն։

1965 թվականի նոյեմբերին Ուլյանովսկի մարզի Մելեկես քաղաքում ավարտվեց «եռացող» տիպի ռեակտորով ատոմային էլեկտրակայանի շինարարությունը, որի կարողությունը 50 հազար կվտ է, 1966-ին սկսեցին ատոմային էլեկտրակայաններ կառուցել նաև անդրբևեռային շրջաններում։

Ներկայումս մշակված է 800 հազար կվտ կարողությամբ ատոմային էլեկտրակայանի նախագիծ, որտեղ հաշվի է առնված Նովո-Վորոնեժսկի երկու ռեակտորների փորձը, յուրաքանչյուրը 400 հազար կվտ կարողությամբ։

Նովո-Վորոնեժսկի տիպի էներգետիկ ռեակտորը փորձարկված է «Լենին» ատոմային սառցահատում։ Այդ տիպի ռեակտորների գերբարձր հուսալիության մասին լավ պատկերացում է տալիս հետևյալ փաստը։ 1961 թվականին «Լենին» սառցահատը մեծ արագությամբ շարժվելիս հարվածեց սառցադնդին։ Հարվածն այնքան ուժեղ էր, որ շատերն ընկան աթոռներից։ Սառցահատը ստացավ մեծ ճմլվածք՝ 5 մ. երկարությամբ և 25 սմ. խորությամբ։ Ատոմային կայանքը և՛ հարվածի ժամանակ, և՛ հարվածից հետո աշխատում էր նորմալ և ապահովում սառցահատը էներգիայով։

ՍՍՀՄ-ում զգալի աշխատանք է տարվում արագ նեյտրոններով գործող էներգետիկ ռեակտորների ստեղծման ուղղությամբ։ Ներկայումս Կասպից ծովի արևելյան ափին, Շևչենկո քաղաքի շրջանում, կառուցվում է ԲՆ—350 այդպիսի ռեակտորով հզոր ԱԷԿ։ Այդ ռեակտորը ապագա ատոմային էլեկտրակայանների ռեակտորի նախագիծն է, որը հնարավորություն կընձեռի լրիվ օգտագործելու ո՛չ միայն ուրան 235-ը, այլև ամբողջ ուրանն ու թորիումը։ Արագ նեյտրոններով աշխատող ռեակտորն ավելի շատ միջուկային վառելիք է վերարտադրում, քան այրում. այդ թույլ կտա մոտ 100 անգամ մեծացնելու ատոմային էներգետիկայի վառելիքային բազան։

ՍՍՀՄ-ում ատոմային էլեկտրաէներգիայի մեկ կիլովատ ժամի արժեքը ընդհանուր առմամբ կազմում է մոտ 1,9 կոպեկ. Բելոյարսկի ԱԷԿ-ի առաջին բլոկում՝ մոտ 1,03 կոպեկ Նովո-Վորոնեժսկի ԱԷԿ-ի առաջին բլոկում, Բելոյարսկի ԱԷԿ-ի երկրորդ բլոկի էլեկտրաէներգիայի արժեքը պետք է կազմի 0,8 կոպեկ, իսկ Նովո-Վորոնեժսկի ԱԷԿ-ի երկրորդ բլոկինը՝ 0,6 կ.։

Ատոմային էներգետիկայի արագ զարգացման դեպքում ջերմային նեյտրոններով աշխատող ռեակտորներով ԱԷԿ-ների էլեկտրաէներգիայի ինքնարժեքը կկազմի 0,35—0,5, իսկ արագ նեյտրոններով աշխատողներինը՝ 0,25—0,35 կոպ. (կվտ/ժամ)։

Ատոմային էներգետիկան, չնայած այն բանին, որ նրա ստեղծման օրից անցել է ընդամենը 13 տարի, զարգանում է արագ տեմպերով։ Կարելի է վստահորեն ասել, որ մոտ ապագայում ատոմային էներգետիկան կդառնա մարդկության էներգիայի օրեցօր աճող պահանջների բավարարման կարևորագույն աղբյուրը։

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

## Գիտությունը և կյանքը

ԱՐՄ. ՍԻՄՈՆՅԱՆ

*Կենսաբանական գիտությունների թեկնածու*

# ԲՋՋԱՅԻՆ ԷՆԵՐԳԻԱՅԻ ԱՌԱՋԱՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՊԱՏԿԵՐԱՑՈՒՄԸ

Կենսաքիմիայի կարգացման ժամանակակից էտապը բնորոշվում է նրանով, որ օրգանիզմներում տեղի ունեցող նյութափոխանակության և էներգիայի առաջացման վերաբերյալ առանձին փաստերի կուտակումից անցում է կատարվում ստացված տվյալների ընդհանրացմանը և հիմնական օրինաչափությունների հայտաբերմանը, որոնք միավորում, ուղղություն են տալիս ֆիզիոլոգիական և կենսաքիմիական բազում պրոցեսների: Այդ բնագավառի մեծագույն նվաճումներից մեկը կենդանի բջջում կենսաբանական օքսիդացման, շնչառության և, դրա հետ կապված, քիմիական էներգիայի առաջացման ու նրա ծախսման պրոբլեմն է:

Օրգանիզմներում տեղի ունեցող կենսագործունեության պրոցեսները սերտորեն կապված են կենդանականի բաղկացուցիչ մասերի մշտական քայքայման և նրանց անընդմեջ ինքնանորոգման հետ: Մի կողմից՝ յուրացման (ասիմիլյացիայի) և ստեղծման, մյուս կողմից՝ քայքայման (դիսիմիլյացիայի) և արտապատման պրոցեսների ամբողջականությունը կազմում է նյութափոխանակության հիմքը՝ ամեն մի կենդանականի անբաժանելի հատկությունը: Բարձրակարգ օրգանիզմների մետաբոլիկ (փոխանակային) պրոցեսները անխզելիորեն կապված են հյուսվածքային շնչառության, էներգիայի առաջացման ու դրա փոխանակության հետ: Այն ամենը, ինչ կատարում ենք մենք՝ քայլում ենք, կարդում, քնում, մտածում կամ աշխատում, կապված է էներգիայի ծախսման հետ: Առանց էներգիայի կարո՞ղ էին կծկվել մկանները, աշխատել մարսողական գեղձերը կամ տեղի ունենալ ներվային բարդ երևույթներ: Առանց էներգիայի անհնար կլիներ օրգանիզմի կյանքը: Իսկ էներգիա կուտակվում ու ծախսվում է յուրաքանչյուր բջջում: Էներգիայի ստեղծման տեսակետից գոյություն ունեն բջիջների երկու աշխարհ: Առաջինը բույսերի բջիջներն են, որոնք, օգտագործելով արեգակի էներգիան, քլորոֆիլի կանաչ հատիկների մասնակցությամբ ստեղծում են գլյուկոզայի մոլեկուլը՝ ամեն մի կենդանի բջջի էներգիայի աղբյուրը: Բույսի բջիջներում կուտակված այդ կենսական էներգիան այնուհետև օգտագործում է կենդանական աշխարհը:

Բջջում էներգիայի առաջացումը սերտորեն կապված է կենսաբանական օքսիդացման հետ, որի շնորհիվ ստեղծված էներգիան կուտակվում է օրգանիզմում և այնուհետև մաս-մաս օգտագործվում կենսագործունեության հետ կապված բազմաթիվ ֆունկցիաների կատարման համար: Այդ էներգիայի մի մասը ջերմության ձևով ցրվում է բջիջներում ու հյուսվածքներում, որով պահպանվում է տվյալ կենդանու մարմնին բնորոշ ջերմաստիճանը: Կենսաբանական օքսիդացման շնորհիվ առաջանում են մի շարք նյութեր (սուբստրատներ), որոնք օգտագործվում են բազմաթիվ կենսասինթեզների համար: Վերջապես, կենսաբանական օքսիդացման կարևոր ֆունկցիան է նաև օրգանիզմի համար անհրաժեշտություն չներկայացնող նյութերի հեռացումը, որոնց կուտակումը կարող է մահաբեր լինել բջիջների և ներվային հյուսվածքի համար:

Շատ վաղուց մարդկությանը հայտնի էր, որ մեր օրգանիզմը մթնոլորտից կլանում է թթվածին և արտաշնչում ածխաթթու գազ:

Հռոմի նշանավոր բժիշկ Հալենը գտնում էր, որ շնչառության հետ է կապված «սրտում վառվող կրակի» այրվելն ու մարելը՝ ապրելն ու մեռնելը: XVII դարի սկզբներին, երբ հայտնագործվեց արյան շրջանառությունը, պարզվեց, որ արյան և մթնոլորտային օդի միջև անմիջական կապ չկա: «Սրտի բոցը և տոթը շնչառության միջոցով հովացնելու և մաքրելու» վերաբերյալ կարծիքը հերքվեց իտալացի գիտնական Բորելիի հասարակ փորձով: Ջերմաչափը մտցնելով կենդանի եղջերուի սրտի խոռոչը նա ցույց տվեց, որ այնտեղ ջերմաստիճանը 40-ից չի անցնում:

Շնչառության էությունը քիմիական ճանապարհով բացատրելու առաջին փորձն արել է Լեոնարդո դա Վինչին: Հենց նա ցույց տվեց օրգանիզմների շնչառության և անօրգանական աշխարհում կատարվող այրման նմանությունը— կենդանին չի կարող ապրել այն մթնոլորտում, որտեղ հանգչում է բոցը: Իսկ Լավուազեն XVIII դարում փորձնական ճանապարհով հաստատեց, որ շնչառության ժամանակ արտաքին աշխարհից կլանվում է թթվածին և արտազատվում ածխաթթու գազ: Այդ հայտնագործությունը նպաստեց ֆլոգիստոնային տեսության և ալքիմիայի դարի այլ սնոտիապաշտությունների հերքմանը:

Ներկայումս կենսաբանական գիտությունների և, մասնավորապես, քիմիայի ու կենսաքիմիայի նվաճումների շնորհիվ հնարավոր է դարձել բազմակողմանի ուսումնասիրել բջջային շնչառության պրոցեսը: Սակայն մինչև դրան հասնելը գիտությունն անցել է երկար ու դժվարին ուղի:

Ուսումնասիրությունները պարզեցին, որ չնայած կենսաբանական օքսիդացումը որոշ կողմերով նմանվում է այրմանը անօրգանական աշխարհում, սակայն արմատապես տարբերվում է նրանից: Նախ՝ բջիջներում այրումն ընթանում է ցածր ջերմաստիճանում, իսկ արտադրված էներգիան միանգամից չի ցրվում, այլ կուտակվում է: Մյուս կողմից՝ հյուսվածքներում այրման պրոցեսի համար անհրաժեշտ է ջուր, իսկ անօրգանական աշխարհում ջուրը ո՛չ միայն չի նպաստում, այլև հանգցնում է կրակը: Այնուհետև, եթե ածխաթթու գազը անօրգանական օքսիդացման ժամանակ այրման անմիջական արդյունքն է, ապա օրգանական օքսիդացման դեպքում այն ստացվում է կողմնակի ճանապարհով, այսպես կոչված՝ դեկարբօքսիլացման հետևանքով:

Շնչառության ողջ բարդ պրոցեսն ունի երկու կողմ՝ արտաքին (թոքային) և ներքին (հյուսվածքային): Այդ կողմերը միասնական են և պայմանավորում են միմյանց: Արտաքին շնչառությունը կատարվում է մեր թոքերի միջոցով: Սակայն բոլոր օրգաններում և հյուսվածքներում, ամեն մի բջջում անընդհատ տեղի է ունենում նյութերի ու էներգիայի փոխանակություն: Արյունը բջիջներին հասցնում է սննդանյութեր ու թթվածին, իսկ դրանցից հեռացնում նյութափոխանակության պրոդուկտներն ու ածխաթթուն: Շնչառությունն ապահովվում է ո՛չ միայն մեր թոքերի, այլև հյուսվածքների գազափոխանակությունը: Այստեղ տեղի է ունենում օքսիդացման քիմիական բարդ պրոցես:

Ըստ ժամանակակից քիմիայի, օքսիդացման և վերականգնման պրոցեսը միայն որևէ նյութի թթվածնի հետ միանալու կամ ջրածնի անջատման պրոցես չէ. օքսիդացման ժամանակ մեծանում է օքսիդացնող էլեմենտի ատոմի դրական լիցքը: Օքսիդացումը ատոմի արտաքին էլեկտրոնային թաղանթից էլեկտրոնների անջատման արգասիք է. վերականգնման ժամանակ տեղի է ունենում օքսիդացման հակառակ երևույթը: Ինչպես տեսնում ենք, նյութի օքսիդացման պրոցեսը կապված է ատոմի էլեկտրոններ կորցնելու, իսկ վերականգնումը՝ դրանք ստանալու հետ: Օքսիդացման և վերկանգնման պրոցեսներն իրենց բնույթով հակադիր են, սակայն միասնաբար են հանդես գալիս: Այս ամենը ցույց է տալիս, որ օրգանիզմում օքսիդավերականգնման պրոցեսի համար պետք է երկու նյութերի՝ էլեկտրոններ տվողի և դրանք ընդունողի առկայություն:

Բջջում օքսիդացման պրոցեսներն ավարտվում են վերջնական նյութերի՝ ջրի և ածխաթթու գազի առաջացմամբ: Ջրի ֆորմուլան՝ $H_2O$, հավանաբար, ամենքին է հայտնի: Սակայն կենդանի բջջի մեջ ջրածնի երկու և թթվածնի մեկ ատոմը այդպես հեշտ միանալ չեն կարող, որովհետև արյան միջոցով այստեղ հասած թթվածինը քիմիապես ակտիվ չէ: Որպեսզի թթվածնի և ջրածնի միջև ռեակցիան տեղի ունենա, պետք է գործի բջջի շնչառական ֆերմենտների բարդ սիստեմը: Այդ ֆերմենտները քիմիական ակտիվ կատալիզատորներ են (ռեակցիան արագացնողներ կամ դանդաղեցնողներ), որոնք սկզբում ճեղքում են գլյուկոզան, այնուհետև անջատում ջրածինը և էլեկտրոնները տեղափոխում թթվածնի վրա՝ դարձնելով այն քիմիապես ակտիվ, բացասականորեն լիցքավորված իոն: Եվ, վերջապես, այսքան բարդ փոխակերպումներից հետո առաջանում են ջուր և ածխաթթու գազ:

Սկզբում կարծում էին, որ կենսաբանական օքսիդացման ուղին օրգանիզմում պետք է լինի թթվածնի ակտիվացման ճանապարհը: Սակայն հետագայում պարզվեց, որ կենդանի օրգանիզմներում տեղի ունեցող որոշ պրոցեսներում, չնայած օքսիդացման ակնհայտ փաստին, թթվածինը չի մասնակցում, իսկ որոշ դեպքերում նույնիսկ խանգարում է: Այդ ժամանակ երևան եկան կենսաբանական օքսիդացման վերաբերյալ երկու տեսություն, որոնք այնուհետև հսկայական քայլերով առաջ մղեցին կենսաքիմիայի այդ կարևոր բնագավառի հետագա կարգացումը: Առաջին տեսությունը, որ կապված է կենսաքիմիկոս Ա. Բախի անվան հետ, օքսիդացման մեխանիզմը բացատրում է թթվածնի ակտիվացմամբ: Ավելի պարզ ասած՝ արյան հեմոգլոբինի միջոցով բջիջ բերված թթվածինը կանայան ճանապարհներով ակտիվանում է և օքսիդացնում նյութը:

Մեր դարասկզբին Վ. Պալլադինը առաջ քաշեց կենսաբանական օքսիդացման իր տեսությունը՝ կապված ջրածինների ակտիվացման պրոցեսի հետ:

Կենսաբանական օքսիդացման ուսմունքի զարգացման ճանապարհին կարևոր ուղենիշ հանդիսացավ գերմանացի գիտնական Բենդայի հայտնագործությունը: Անցյալ դարի վերջերին բջջի պրոտոպլազմայում նա հայտաբերեց փոքրիկ հատիկների, թելանման և կետանման գոյացությունների կուտակումներ, որոնք անվանեց միտոքոնդրիաներ (հունարեն «միտոս»—թել և «քոնդրիոս»—հատիկ բառերից): Սակայն այն ժամանակ ոչ ոք չգիտեր այդ մասնիկների դերը բջջի կենսագործունեության մեջ: Միտոքոնդրիաների գաղտնիքը բացահայտեցին ներկերը: Գիտնականներն օգտագործեցին ներկեր, որոնք իրենց միացնելով թթվածինը անգունանում էին, իսկ թթվածինը տալով, ձեռք էին բերում նախկին գունավորությունը: Պարզվեց, որ կենդանի բջջում ներկերի գունազրկումն ինչ-որ հանելուկային ձևով կատարվում է միտոքոնդրիաների միջոցով: Դա ցույց էր տալիս, որ միտոքոնդրիաները ներկերից վերցնում են թթվածինը, հետևաբար նրանք շնչում են: Հետագայում պարզվեց, որ միտոքոնդրիաները բջջի «ուժային կայաններն» են, ուր առաջանում և կուտակվում է էներգիան: Պարզվել է, որ միտոքոնդրիաների այդ հատկությունը պայմանավորված է նրանով, որ նրանց մեջ գտնվող մի շարք նյութերի մասնակցությամբ ամբողջությամբ ստեղծվում է անջուր միջավայր. դա հեշտացնում է օքսիդացող նյութից էլեկտրոնների տեղափոխումը թթվածնի վրա, որի շնորհիվ և առաջանում է էներգիան:

Ժամանակակից էլեկտրոնային միկրոսկոպիկ հետազոտությունները ցույց են տվել, որ միտոքոնդրիաները բարդ կառուցվածք ունեն և իրենցից ներկայացնում են երկու, իրար մեջ հագած կիսաթափանցիկ թաղանթներից կազմված գոյացություններ: Այդ թաղանթների անցքերից միտոքոնդրիայի ներսն են թափանցում տարբեր նյութերի մոլեկուլներ: Ներքին թաղանթի վրա գոյություն ունեն բազմաթիվ ծալքեր, որոնք իրագործում են օքսիդացման պրոցեսը. դրանք տեղադրված են խիստ սահմանված հերթականությամբ, որի շնորհիվ բջջի շնչառության պրոցեսն ընթանում է ոչ թե քաոսային, այլ որոշակի հետևողականությամբ:

Միտոքոնդրիաների չափերը հաշվվում են միլիմետրի մեկ հազարերորդական մասերի մեծությամբ: Յուրաքանչյուր բջջի մեջ գտնվող միտոքոնդրիաներն իրենց մակերեսով մի քանի անգամ գերազանցում են բջջի մակերեսին: Դա հեշտացնում է բնական կատալիզատորների՝ ֆերմենտների աշխատանքը: Տարբեր օրգանների բջիջներ միջին հաշվով պարունակում են 500—2500 միտոքոնդրիա: Սակայն առանձին բջիջներում միտոքոնդրիաների թիվը հասնում է մի քանի հազարի: Այսպես, օրինակ, հսկա ամեոբայի բջջում հաշվվում է 500 հազար միտոքոնդրիա, իսկ ծովախոզուկի ձվաբջջում՝ 14 հազար: Հետազոտությունների համար միտոքոնդրիաները բջջի մյուս մասերից անջատվում են բարձր արագությունների պայմաններում ցենտրիֆուգելու (կենտրոնաթափման) եղանակով:

Միտոքոնդրիաներում ընթացող օքսիդացման պրոցեսները հետաքրքրական են նաև նրանով, որ հենց այստեղ են գոյանում և կուտակվում ոչ կայուն կապերով այն միացությունները, որոնց ճեղքման հետևանքով արտապատվում է էներգիան: Կենսաբանական օքսիդացման հետևանքով էներգիայի կուտակման հայտնագործումը կատարվեց 1930 թվականին, ժամանակակից մոլեկուլյար կենսաբանության հիմնադիրներից մեկի՝ Վ. Էնգելգարդի կողմից: Իսկ ֆոսֆորիլացման պրոցեսներում, ասպես կոչված, շնչառական շղթայով, բարդ ֆերմենտային սիստեմով ջրածնի իոնների տեղափոխման դերն ընդգծեց Վ. Բելիցերը (1939 թ.): Այդ ժամանակ էլ կենսաքիմիայում առաջացավ օքսիդացիոն ֆոսֆորիլացում հասկացողությունը, որն արտացոլում է բջիջներում ընթացող շնչառության պրոցեսների և որոշ ֆոսֆատային միացությունների սերտ փոխհարաբերությունն ու կապը: Պարզվեց, որ էներգիայի կուտակումը կատարվում է բարդ ձևով կառուցված ֆոսֆատային միացության՝ ադենոզինտրիֆոսֆորական թթվի մոլեկուլի (ԱՏՖ) մեջ: Այդ կապակցությամբ Վ. Էնգելգարդը գրել է, որ ուղեղի և, առհասարակ, օրգանիզմի գործունեությունն անմիջապես պայմանավորող շարժիչ ուժը ֆոսֆորային թթվի միացությունների մեջ կուտակված էներգիան է: Ժամանակակից կենսաքիմիայի տվյալներով ԱՏՖ-ի ֆոսֆատային երրորդ խմբի միացման կապի մեջ կուտակված է մինչև 10—12 հազար կալորիա էներգիա:

Միտոքոնդրիաներում առաջացած ԱՏՖ-ն այնուհետև կարող է անցնել արտաքին միջավայր և օգտագործվել օրգանիզմի բազմազան կարիքների համար: Այստեղ ԱՏՖ-ն անջատում է էներգիայով հարուստ ֆոսֆորական թթվի մնացորդը և արտապատում էներգիան:

Մեր կողմից յուրացվող սննդանյութերի մեջ կուտակված էներգիան երբեք միանգամից, պայթյուններով չի անջատվում, ինչպես հատուկ սարքավորման՝ կալորիմետրի մեջ, որտեղ մեկ գրամ-մոլեկուլ գլյուկոզայի լրիվ այրումից անջատվում է 673 հազար կալորիա էներգիա: Բջիջը հնարավորություն չունի միանգամից օգտագործելու այդ հսկայական էներգիան. նա օգտակար ձևով կարող է օգտագործել այդ էներգիայի միայն մի փոքր մասը: Այդ պատճառով էներգիայի առաջացումը բջջում կրում է աստիճանական բնույթ, որի շնորհիվ անջատված էներգիայի մի մասը օգտագործվում է օրգանիզմի կարիքների համար, իսկ ավելցուկը կուտակվում, ամբարվում է և անհրաժեշտության դեպքում դարձյալ ծախսվում: Այս ձևով մեկ մոլեկուլ գլյուկոզայի լրիվ օքսիդացման ժամանակ բջիջներում առաջանում են էներգիայով հարուստ ԱՏՖ-ային 38 կապեր:

Բարձրակարգ կենդանիների օրգանիզմում էներգիայի հոսքն ապահովվում է օրգանիզմ մըտնող սննդանյութերի և, ամենից առաջ՝ սպիտակուցների, ածխաջրերի և ճարպերի հաշվին: Սակայն, ինչպես սննդանյութերի կազմության մեջ, այնպես էլ օրգանիզմի օրգանների և հյուսվածքների բաղկացուցիչ մասերում դրանք այդ ձևով չեն կարող մասնակցել կենսաբանական օքսիդացման պրոցեսին և նախապես քայքայվում են: Սպիտակուցները մարսողական տրակտի կամ հյուսվածքների համապատասխան ֆերմենտների ազդեցությամբ ճեղքվում և դառնում են ամինոթթուներ, ճարպերը՝ գլիցերին, իսկ շաքարները՝ գլյուկոզա: Ճեղքման հետևանքով առաջացած նշված նյութերը ներծծվում են, անցնում արյան մեջ և կազմում, այսպես կոչված, նյութափոխանակության ֆոնդը, որն այնուհետև ծախսվում է ինչպես կենսական պրոցեսների էներգիայի ապահովման, այնպես էլ այլ կարիքների համար:

Ինչպես արդեն նշել ենք, բջջի մեջ էլեկտրոնների տեղափոխման հետևանքով շնչառական շղթայում տեղի է ունենում էներգիայի կուտակում: Սակայն որոշ դեպքերում էլեկտրոնների տեղափոխությունը չի ուղեկցվում էներգիայի կուտակմամբ՝ էներգիան առաջանում է և միաժամանակ անմիջապես ցրվում: Բջիջներում ընթացող այդպիսի օքսիդացումը հակառակ օքսիդացիոն ֆոսֆորիլացման կոչվեց ազատ օքսիդացում: Այս դեպքում օքսիդացումը կատարվում է, սակայն էներգիան չի կուտակվում, այլ ցրվում է և նպաստում մարմնի ջերմաստիճանի բարձրացմանը: Նույնիսկ տարածական տեսակետից ֆոսֆորիլացող և ազատ օքսիդացման մեխանիզմները տեղադրված են միտոքոնդրիաների տարբեր մասերում: Առաջինը գտնվում է ներքին մասում, իսկ վերջինը՝ նրա մակերեսին: Ազատ օքսիդացումը օրգանիզմում կատարում է ջերմակարգավորիչ ֆունկցիա: Մի շարք հիվանդությունների, օրինակ, սրտամկանի ինֆարկտի ժամանակ փոփոխվում է ազատ և օքսիդացիոն ֆոսֆորիլացման հարաբերությունը: Սովորաբար նորմալ սրտամկանում գերակշռում է օքսիդացիոն ֆոսֆորիլացումը, իսկ ինֆարկտի դեպքում ախտահարված հատվածում սկսում է ինտենսիվանալ ազատ օքսիդացումը:

Ցույց է տրված նաև, որ վահանաձև գեղձի հիվանդության ժամանակ՝ կապված թիրօքսին հորմոնի ինտենսիվ առաջացման հետ, բջիջներում խախտվում է էներգիայով հարուստ միացությունների առաջացման պրոցեսը: Այդ դեպքում անհամեմատ շատ ջերմություն է առաջանում օրգանիզմում, թուլանում են մկանների ֆունկցիան ու սրտի գործունեությունը: Այդ հիվանդության ժամանակ մարդը շատ է ուտում, բայց նիհարում է և անընդհատ թուլություն զգում, իսկ նրա մարմնի ջերմաստիճանը, որպես կանոն, միշտ բարձր է:

Ֆոսֆորիլացող և ազատ օքսիդացման փոխհարաբերության ուսումնասիրության ուղղությամբ հետաքրքրական փորձեր են կատարվում Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի բիոքիմիայի ինստիտուտում՝ թռչունների վրա: Ինչպես հայտնի է, ինկուբատորային տնտեսություններում ճտերի բարձր ելունք ստանալու համար կարևոր պայման է սաղմնային զարգացման ընթացքում ջերմային ճիշտ ռեժիմի կիրառումը: Զարգացման վաղ շրջանում ձվերի ինկուբացման ջերմային ռեժիմի խախտումների պատճառով սաղմնային սկավառակը նորմալ չի զարգանում, որի հետևանքով աճը դադարում է: Բարձր ջերմաստիճանի պայմաններում սաղմի բջիջներում դիտվում է պրոտոպլազմայի հատիկավորության անկում, իսկ կորիզներում երևան են գալիս կառուցվածքային մի շարք փոփոխություններ: Ցածր ջերմաստիճաններում ինկուբացնելիս նորմալ չի զարգանում սաղմի ներվային սիստեմը, որը, իր հերթին, անդրադառնում է ներքին օրգանների կազմավորման վրա: Կենսաքիմիական մի շարք պրոցեսների հետևանքով ամբողջ ինկուբացման ընթացքում ձվի մեջ առաջանում է մեծ քանակությամբ էներգիա (16—23 կիլոկալորիա): Թռչունների սաղմի հյուսվածքներում ջերմության անջատումը նկատելի է դառնում 8-րդ օրից: Այդ ժամանակ ձվի ներսում ջերմաստիճանն աստիճանաբար բարձրանալով անցնում է ինկուբատորի ջերմաստիճանից և հասնում 40—44-ի: Մինչև հիմա հայտնի չէր, թե որտեղի՛ց և ի՛նչ ճանապարհով է առաջանում այդ ազատ էներգիան, որը նպաստում է ճտի մարմնի ջերմաստիճանի այդպիսի բարձրացմանը: Հետազոտությունները ցույց տվին, որ սաղմնային զարգացման 13-րդ օրից սկսած հավի սաղմի տարբեր հյուսվածքների միտոքոնդրիաներում ԱՏՖ-երի առաջացման պրոցեսը խիստ արագանում է: Սակայն դրա հետ մեկտեղ ինտենսիվանում է նաև ԱՏՖ-երի ճեղքումը: Էներգիայով հարուստ այդ ֆոսֆատային կապերի տրոհման հետևանքով առաջացած ջերմությունը ցրվում է զարգացող ճտի հյուսվածքներում և նպաստում նրա մարմնի ջերմաստիճանի բարձրացմանը:

Գյուղատնտեսական թռչունների սաղմի բջիջներում այս տեղաշարժերը ինքնանպատակ չեն

և կենսաբանական-հարմարողական խոր իմաստ ունեն ինչպես ձվի ներսում, այնպես էլ հետսաղմնային շրջանում ձտի նորմալ աճման ու զարգացման համար:

Նշենք, որ ալպատ օքսիդացումը (առանց էներգիայով հարուստ կապերի գոյացման) կենդանու հյուսվածքներում ավելի հնագույն և հասարակ սիստեմ է և գերակշռել է առաջին ցամաքային կենդանիների օրգանիզմում: Շնչառությունը՝ կապված ֆոսֆորիլացման ակտի հետ, ավելի կատարելագործված, օրգանիզմի համար շահավետ խնայողական սիստեմ է և առաջացել է կենդանիների էվոլյուցիոն զարգացման ավելի ուշ էտապներում:

Ինչպես տեսանք, կենդանու հյուսվածքներում և բջիջներում ընթացող կենսաբանական օքսիդացումը և էներգիայի առաջացումը բարդ, բազմաստիճան պրոցես են: Ամեն մի օրգանիզմի կյանքը կդադարեր առանց արտաքին միջավայրի հետ մշտական նյութափոխանակության և էներգիայով հարուստ ֆոսֆատային միացությունների՝ ամենից առաջ ԱՏՖ-ի մեջ ամբարված էներգիայի օգտագործման:

Էներգետիկ փոխանակության և նրա միջանկյալ օղակների մանրամասն հետազոտությունը հնարավորություն կընձեռի ճիշտ ղեկավարելու օրգանիզմների կենսագործունեությունը, պարզելու մի շարք հիվանդությունների բնույթը և միջոցներ գտնելու դրանց դեմ պայքարելու համար: Ժամանակակից կենսաքիմիայի կարևորագույն խնդիրը, ինչպես նշում է ակադեմիկոս Վ. Էնգելգարդը, կենդանի բջջում էներգիայի հոսքի ուսումնասիրությունն է: Այդ պրոբլեմն այժմ կենսաքիմիայի ամենաինտենսիվ մշակվող հարցերից մեկն է և իր նշանակությամբ հասնում է այնպիսի կարևոր պրոբլեմների, ինչպիսիք են՝ սպիտակուցների և նուկլեինաթթուների ստրուկտուրայի ու ֆունկցիայի հետազոտությունը կամ, առհասարակ, նյութափոխանակության ընթացքում մատերիայի հոսքի ուսումնասիրությունը:



# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ՀԵՐՈՍԱԿԱՆ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆ*

*Քսան հազար տիրաժով լույս տեսած* Մարտական 89 *գիրքը սպառվեց մի քանի օրում: Այդ վկայում է, թե որքան մեծ է պահանջը Հայրենական մեծ պատերազմի իրադարձությունները նկարագրող աշխատությունների հանդեպ, մանավանդ, երբ դրանք գրում են պատերազմի անմիջական մասնակիցները: Գ. Դալլաքյանի աշխատությունն արտացոլում է Հայրենական մեծ պատերազմի հերոսական ճակատամարտերում փառաբանված զորային միավորումներից մեկի՝ մարտական 89-րդ Կարմիր դրոշի, Կարմիր աստղի, Կուտուզովի երկրորդ աստիճանի շքանշանակիր, Թամանյան հրաձգային հայկական դիվիզիայի մարտական տարեգրության համայնապատկերը:*

*Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին կազմակերպվել ու պատերազմի ռազմաճակատներում մարտնչել են հայկական հինգ դիվիզիա: Բացի այդ, սովետական բանակի այլ զորագնդերի ու զորատեսակների շարքերում իրենց հայրենասիրական պարտքն են կատարել հազարավոր հայ ռազմիկներ: Սակայն հայկական հինգ զորամիավորումներից միայն մեկին՝ 89-ին է բախտ վիճակվել Երևանից հասնել Բեռլին ու մարտական փառքով պսակված վերադառնալ մայր Հայաստան:*

*Հյուսիսային Կովկաս, Կերչ, Սևաստոպոլ, Լեհաստան, Օդերի Ֆրանկֆուրտ, Բեռլին, էլբա— ահա փորձությունների ու անլուր զրկանքների՝ մոտ 7000 կիլոմետր ձգվող այն ուղին, որն անցել է Թամանյան 89-րդ դիվիզիան և իր արժանի լուման մուծել հիտլերյան հրոսակախմբերի ջախջախման գործում: Նրա մասին գրքեր, բազմաթիվ լրագրային հոդվածներ են գրել, բայց չի սպառվել Թամանյանի հերոսապատումը: Թամանցիների հերոսական տարեգրությունը կարոտ է գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, կինեմատոգրաֆիստների ստեղծագործական մշակմանը: Ուստի, քանի դեռ ապրում ու աշխատում են հարյուրավոր նախկին թամանցիներ, նրանց պատմածներն ու հիշողությունները կարող են ոգեշնչման աղբյուր ծառայել այն բոլորի համար, ովքեր կցանկանան հավերժացնել, ապագա սերունդներին հասցնել 89-րդ Թամանյանի սխրանքները:*

*Գ. Դալլաքյանի աշխատությունը, ուր ամփոփված է հայկական այդ դիվիզիայի պատմությունը, իր ուրույն մտահղացմամբ, հարուստ բովանդակությամբ, բազմաթիվ փաստական տվյալներով մեծ հետաքրքրություն է ներկայացնում: Դրա գրեթե յուրաքանչյուր էջը վկայությունն է այն բանի, թե որքան համառ ու անձնուրաց են մարտնչել 89-րդ դիվիզիայի անվեհեր մարտիկները, պաշտպանելով Մեծ Հոկտեմբերի պատմական նվաճումները, ամենադաժան, անհավասար ճակատամարտերում անգամ հայրենի լեռների պես կանգուն են մնացել, բնավ չեն սարսել բիրտ ոսոխի ամենակատաղի գրոհներից:*



*89-րդ հայկական դիվիզիան ստեղծվել է 1941 թվականի վերջերին. ճակատագրական այն օրերին, երբ սովետական բանակը երկարատև պաշտպանական մարտերից հետո հակահարձակման էր անցել Մոսկվայի մատույցներին հասած ֆաշիստական հորդաների դեմ և կործանիչ հարվածներ էր հասցնում թշնամուն:*

*Դիվիզիան իր մարտական մկրտությունն ստացել է 1942 թվականի սեպտեմբերին՝ Գրոզնու արտաքին շրջագծի աջ թևի պաշտպանության համար մղած ծանր մարտերում:*

*Դիվիզիան մարտերով անցնում է Մալգոբեկ, Գեորգիևսկ, Միներալնիե Վոդի և Ստավրոպոլ քաղաքներով, ազատագրում բազմաթիվ բնակավայրեր և մոտենում Ազովի ծովին: Ջիբելիևսկայա բնակավայրի շրջանում մղած անհավասար գոտեմարտում միավորումը մեծ կորուստներ է կրում: Այստեղ հերոսաբար զոհվում են*

* Գ. Դալլաքյան, Մարտական 89, «Հայաստան» հրատարակչություն, Երևան, 1966 թ., 324 էջ:

*դիվիզիայի հրամանատար, գնդապետ Ա. Վասիլյանը, 390-րդ հրաձգային գնդի հրամանատար, մայոր Գ. Իսախանյանը, 400-րդ գնդի հրամանատարի քաղգծով տեղակալ, մայոր Ս. Բաղդասարյանը:*

*1943 թվականի փետրվարի 12-ին դիվիզիայի մարտական տարեգրության մեջ մի նոր էջ է բացվում. միավորման հրամանատար է նշանակվում փորձառու զորապետ Նվեր Սաֆարյանը: Նա բարձր էր գնահատում բարոյական գործոնի՝ ռազմիկների քաղաքական կոփվածության նշանակությունը և խիստ հանդիմանում այն հրամանատարներին, որոնք երբեմն անտեսում էին կուսակցական-քաղաքական աշխատանքը: Սաֆարյանի ջանքերով դիվիզիան ավելի է ամրապնդում կապը մայր Հայաստանի, կուսակցական ու սովետական օրգանների հետ, վերջիններս էլ, իրենց հերթին, մշտապես հետևվում էին դիվիզիայի մարտական գործողություններին, նյութական ու բարոյական մեծ օգնություն ցույց տալիս նրան:*

*Իսկ մարտիկները, որտեղ էլ մարտնչել են նրանք՝ Հյուսիսային Կովկասում, Ղրիմում, թե լեհական հողում, Օդերի ձախ ափին գրաված մի փոքր պլացդարմում թե Բեռլինում, միշտ հետաքրքրվել ու հպարտացել են Հայաստանի աշխատավորության հաջողություններով և դրանցով ոգեշնչված ավելի հուժկու հարվածներ հասցրել թշնամուն:*

*Այդ բոլորի մասին հետաքրքրական տեղեկություններ և հարուստ փաստեր կան գրախոսվող աշխատությունում, որի հրապարակ գալը ողջունելի երևույթ է:*

*Ինչպես հայտնի է, 1943 թվականի փետրվարի վերջերին հայ ժողովուրդը նամակ ուղարկեց ռազմի դաշտում գտնվող իր զավակներին, որը նոր ուժ ու եռանդ հաղորդեց դիվիզիայի ռազմիկներին: Իրենց մարտական ընկերոջ, բանաստեղծ Արշալույս Սարոյանի շուրթերով նրանք երդվում են զոհված ընկերների*

Անուններով սուրբ ու նվիրական,
Երդվում վեհությամբ հայոց լեռների,
Ինձ արյուն դարձած կարով մայրական,
Առնել թշնամուց վրեժը նրանց:

*1943 թվականի սեպտեմբերի սկզբին դիվիզիան առաջադրանք է ստանում Սևծովյան նավատորմի հետ միասին ցամաքից ու ծովից հարվածել հակառակորդին, ճեղքել նրա պաշտպանության գիծը, ջախջախել Թաման թերակղզում բույն դրած հիտլերականներին, ազատագրել այն:*

*Այդ արյունահեղ գոտեմարտերից մեկում հերոսի մահով ընկավ 390-րդ գնդի առաջին հրաձգային վաշտի առաջին դասակի հրամանատարի օգնական, ավագ սերժանտ Հունան Ավետիսյանը՝ իր մարմնով ծածկելով հակառակորդի դզոտի հրակնատը: Հետմահու նրան շնորհվում է Սովետական Միության հերոսի կոչում և անունը հավերժ մտցվում նույն վաշտի անձնակազմի ցուցակում:*

*Թաման թերակղզու համար մղված մարտերում անմահության փառքով են պսակվում նաև Ջահան Կարախանյանի և Սուրեն Առաքելյանի անունները. նրանք ևս հետմահու արժանանում են Սովետական Միության հերոսի կոչման: Միավորման 4338 խիզախ հրամանատարներ, քաղաքական ու կուսակցական աշխատողներ և զինվորներ պարգևատրվում են շքանշաններով ու մեդալներով:*

*ՍՍՀՄ զինված ուժերի գերագույն գլխավոր հրամանատարության հրամանով դիվիզիային շնորհվում է «Թամանյան» կոչումը:*

*Ջերմ սիրով նկարագրելով հայ մարտիկների անցած հերոսական ուղին, հեղինակն այնուհետև ցույց է տալիս, թե ինչպես Թամանի ազատագրումից հետո դիվիզիան անցավ Կերչի թերակղզին և մյուս միավորումների հետ միասին համատեղ մարտնչեց Ղրիմի ազատագրման համար:*

*1944 թվականի ապրիլի 11-ին սկսվում են հարձակողական մարտերը: 89-րդ Թամանյանը հարևան միավորումների հետ ակտիվ մասնակցում է Կերչի ազատագրմանը: Հրամանատարության առաջադրանքը օրինակելի կատարելու, ցուցաբերած քաջության ու արիության համար դիվիզիան պարգևատրվում է Կարմիր աստղի շքանշանով:*

*Բազում գոտեմարտերում կոփված դիվիզիայի հարձակողական ոգին նոր ուժով է դրսևորվում Սևաստոպոլի ազատագրման օրերին: Հեղինակը պատմում է Սևաստոպոլյան դյուցազնամարտերում փառաբանված հետևակայինների, հրետանավորների, կապավորների, սակրավորների, հետախույզների, բժշկական ու սանիտարական աշխատողների, միավորման թիկունքային ստորաբաժանումների մասին: Սևաստոպոլյան կռիվներում դրսևորած խիզախության համար Սովետական Միության հերոսի կոչման են արժանանում Սիմոն Բաղդասարյանը, Այդին Հարությունյանը, Վարդգես Ռոստոմյանը, Հարություն Մկրտչյանը և Խորեն Խաչատրյանը: 5874 ռազմիկներ պարգևատրվում են շքանշաններով ու մեդալներով: Միավորման 390, 400-րդ գնդերին շնորհվում է «Սևաստոպոլյան» անունը, իսկ դիվիզիան պարգևատրվում է Կարմիր դրոշի շքանշանով:*

*«Սևաստոպոլի համար մղված մարտերը,— գրում է հեղինակը,— տևեցին հինգ օր... Դրանք օրեր էին, երբ ոմանք դառնում էին հերոսներ, մյուսները հերոսաբար զոհվում, վի-*



*րավորվում էին, սակայն դուրս չէին գալիս շարքից...» (էջ 149—150): Եվ նա վերհիշում է մարտական շատ դրվագներ: Կարդում ես այդ էջերը և աչքիդ առաջ հառնում են կապիտան Գրիշա Աբրահամյանի, հրետանավոր Գուրգեն Մինասյանի, գնդացրորդ Լուկաշ Պողոսյանի, կապավոր Խորեն Մուրադյանի, բուժքույր Նինա Առաքելյանի, սուրհանդակ Թութել Հարությունյանի և էլի տասնյակ քաջակորով ռազմիկների բոցաշունչ կերպարները:*

*Ղրիմը ազատագրվելուց հետո դիվիզիան համալրվում է նոր ուժերով, նորագույն մարտական տեխնիկայով և մասնակցում լեհական հողի ազատագրմանը:*

*1945 թվական հունվարի 14. սառնամանիք... Վիսլայի ձախ ափի, Պուլավիի պլացդարմ... «Երբ համազարկ տվեցին բազմաթիվ «Կատյուշաները», ողջ անտառը լցվեց դղրդյունով, գետինը երերաց մարդկանց ոտքերի տակ... Հրետանային հզոր հարձակմամբ հակառակորդի պաշտպանական գիծը քայքայվեց, ոչնչացվեց... Կրակային ալիքի հետևից հարձակման անցան տանկային զորամասերի և հետևակի հիմնական ուժերը» (էջ 177—178):*

*Առանձնապես կատաղի մարտեր են ծավալվում Ռուսկի Բրոդ գյուղի շրջակայքի անտառներում: Զոհված ու շարքից դուրս եկած ռազմիկներին փոխարինում էին նոր խիզախներ և, անխնա վրեժ լուծելով իրենց զորային ընկերների կյանքի ու արյան համար, շարունակում ավելի կործանիչ հարվածներ հասցնել թշնամուն:*

*Հետապնդելով ջլատված, բայց դեռ համառորեն դիմադրող հիտլերականներին՝ Առաջին բելոռուսական ռազմաճակատի բանակները, ինչպես և 89-րդ հայկական Թամանյան դիվիզիայի զորագնդերը, 1945 թվականի հունվարի 31-ին, երկարատև, համառ մարտերից հետո թափանցում են գերմանական հողը: 400-րդ գնդի 2-րդ հրաձգային վաշտի հաստոցավոր գնդացրի հրամանատար Գրիգորյանի խոսքերն արտահայտում են ողջ միավորման խոհերը.*

*«Ահա և դու, գերմանական հող, հող, որի վրա ապրել են տևտոնների զավակները, հող, որը լավագույն մարդկանց հետ նաև ծնել է ողջ աշխարհը պատերազմի հորձանուտ նետող մարդասպանների, չարագործների, արյունարբուների բանակը» (էջ 195):*

*Եվ 89-րդ Թամանյանը սովետական բանակի մյուս զորային միավորումների հետ շարունակում է դարչնագույն ֆաշիզմի կործանումը իր իսկ հողում:*

*Հակառակորդի ավիացիայի ռմբակոծության, անընդհատ տեղացող հրացանա-գնդացրային ու ականանետա-հրետանային կրակի տակ թամանցիները համառ մարտերով հաղթահարում են Օդերը: Օդերի ձախ ափին մերոնց գրաված պլացդարմը հանգիստ չէր տալիս հիտլերականներին: Նրանք ամեն կերպ ջանում էին ետ մղել սովետական խիզախներին: Մահու և կենաց գնով 89-րդ դիվիզիան 60 օր պաշտպանում էր այդ պլացդարմը կամ, ինչպես զինվորներն էին կատակով ասում՝ «Հայկական փոքր հողը»: Արիաբար ձախողելով հակառակորդի կատաղի գրոհները, թամանցիներն իրենք էին հակագրոհի անցնում: Նրանց շարքերում էին նաև ռուս զինվոր Ա. Լուկիանովը, ուկրաինացի Ն. Պելիխը, վրացի Վ. Շուլախաձեն, ադրբեջանցի Ի. Քերիմովը:*

*Մահացու վերք է ստացել 526-րդ գնդի հրամանատարի քաղաքական գծով տեղակալ, մայոր Պապիկ Ավալյանը: Նրա մոտ է դիվիզիայի հրամանատար, գեներալ-մայոր Ն. Սաֆարյանը: Դիմելով գեներալին՝ մահամերձը խնդրում է հայտնել, թե ինքը կատարել է արդյոք իր պարտքը հայրենիքի հանդեպ: Միայն այդ դեպքում նա կկարողանար հանգիստ փակել աչքերը:*

*Ճակատագրական գոտեմարտերի ամենաթեժ պահերին անգամ նման հայրենասիրական խոհերով էր համակված ողջ սովետական բանակը, ինչպես և Թամանյան դիվիզիան:*

*1945 թվականի ապրիլի 16-ին, երբ սովետական բանակը սկսեց իր վերջին և վճռական հարձակումը Բեռլինի ուղղությամբ, նրա զորագնդերի առաջավոր շարքերում էր նաև 89-րդ Թամանյանը:*

*Օդերի Ֆրանկֆուրտի օպերացիայից հետո 89-րդ Թամանյանը մտնում է երրորդ հարվածային բանակի կազմի մեջ և առյուծաբար մարտնչելով շարունակում հաղթարշավը դեպի Բեռլին. ձգտելով օր առաջ հաղթանակի դրոշ պարզել Ռայխստագի վրա: Ապրիլի 28-ին թամանցիներն արդեն փողոցային մարտեր էին մղում Բեռլինի արվարձաններում, ընկճելով հակառակորդի դիմադրությունը: Մայիսի 2-ին Բեռլինը պարտվում է:*

*Բեռլինյան գոտեմարտում իրենց զորային բարձր վարպետությամբ մի անգամ ևս աչքի են ընկնում 89-րդ Թամանյանի անվեհեր ռազմիկները: Դիվիզիան պարգևատրվում է Կուտուզովի երկրորդ աստիճանի շքանշանով:*

*Էլբայի ափին թամանցիները հանդիսավորությամբ տոնեցին պատմական հաղթանակի օրը՝ 1945 թվականի մայիսի 9-ը:*

*Այդ ամենը հաջող կերպով նկարագրելուց հետո, գրքի եզրափակիչ մասում հեղինակն անդրադառնում է միավորման հրամանատար, գեներալ-մայոր Նվեր Սաֆարյանի զորավարական հմտությանն ու բարձր վարպետությանը, խոսում գնդերի, գումարտակների, վաշտերի ու դասակների հրամանատարների, քաղաքական ու կուսակցական աշխատողների, դիվիզիայի*

«Կարմիր զինվոր» թերթի աշխատակիցների գործունեության մասին:

Աշխատության մեջ զգալի տեղ է հատկացված նաև դիվիզիայի հետպատերազմյան առօրյային ու նրա անձնակազմի մարտական ծառայությանը:

Ավարտելով իր հերոսապատումը, ընկ. Ղ. Դալլաքյանը գրում է.

«...89-րդ հայկական Թամանյան դիվիզիան փառքով պսակեց իր անունը Հայրենական մեծ պատերազմի ռազմադաշտերում, սրբորեն կատարելով իր ժողովրդի պատվերը: Սովետական Միության բոլոր ժողովուրդների նման հայ ժողովուրդը ևս նոր ոսկե էջեր գրեց իր հերոսական պատմության տարեգրության մեջ:

Սերունդները պետք է իմանան 89-րդ Թամանյան հայկական դիվիզիայի հերոսական գործերի մասին, նրա քաջարի մարտիկների, սերժանտների ու հրամանատարների սխրագործությունների, նրա անցած փառահեղ ուղու մասին, դաստիարակվեն նրա հայրենասիրական տրադիցիաների ոգով, 89-րդ հերոսական դիվիզիայի մարտիկների ու հրամանատարների սխրանքների օրինակով»:

Ազնիվ է հեղինակի մղումը՝ նպաստել երիտասարդ սերնդի հայրենասիրական դաստիարակությանը, վերհանելով հայկական այս դիվիզիայի սխրանքներն ու մարտական գործողությունները: Իր իսկ խոստովանությամբ՝ մեծ ու դժվարին խնդիր է դա— նկարագրել «տասնհինգ հազար մարդու բնավորություն, հոգեբանություն, մարտական գործողություններ, սխրանքներ, առանձին մարդկանց տատանումներ ու վախ...»: Դժվար էր այդ բարդ աշխատանքն անթերի կատարել. գրքում կան միօրինակ, անհույզ նկարագրություններ, ինչպես և լեզվական ու ոճական անհարթություններ:

Հեղինակի ձեռքի տակ կա հարուստ նյութ, հուսանք, որ մեր այս փառապանծ դիվիզիայի սխրագործությունները կարժանանան ավելի գունեղ, վառ ու կենդանի նկարագրության:

Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ
Գվարդիայի պահեստի փոխ-գնդապետ



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Խմբագրության հասցեն՝ Երևան—16

Հեռախոսներ. գլխավոր խմբագիր՝ 7—16—90, պատասխանատու քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանքի և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ:

ՎՖ 03049 Ստորագրված է տպագրության 26/IX 1967 թ.:

Պատվեր 1857 Տիրաժ 9853 Գինը 25 կոպ.:

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԱՏԱՄԻ ԲՈՒԺՄԱՆ ՆՈՐ ԵՂԱՆԱԿ

Ատամը հիվանդ է… Մենք չենք դիմում բժշկին, մինչև ցավը չի դառնում անտանելի: Բայց շատերը վախենում են, հատկապես, ատամի բուժման ժամանակ առաջացող սուր ցավերից: Ահա թե ինչու ատամի անցավ բուժումը մտահոգում է սովետական մասնագետներին: Վերջերս ստեղծվել և փորձարկվել է մի սարք, որը ատամի բուժումը ցավազերծում է ձայնի և էլեկտրական հոսանքի միջոցով: Այժմ այդ սարքը օգտագործվում է Լենինգրադի մի քանի պոլիկլինիկաներում:

### ՏԵԽՆԻԿԱ ԸՆԴԴԵՄ ԿՐԾՈՂՆԵՐԻ

Գյուղատնտեսական վնասատուների՝ կրծողների դեմ պայքարի օրիգինալ սարք է ստեղծել ամերիկական ֆիրմաներից մեկը: Սարքը, որը կցվում է տրակտորին, ունի հողի վերին շերտը հատող սկավառակաձև դանակ և հողում ակոսիկներ բացող հատուկ դանակ:

Ցանող սարքը ակոսիկների մեջ պարբերաբար շաղ է տալիս պիլյուլպրիմանոնի տիպի թունաքիմիկատներ: Այնուհետև ռետինե երկու սկավառակներ ծածկում են հողով, դրանցում ստեղծելով ոչ մեծ «թունել»՝ կրծողների համար: Վերջիններս ուտում են գրավչանյութը և սատկում: Այդ հարմարանքը կարելի է վերակառուցել կարելի անցկացման համար:

### ՔԻՄԻԿ-ԼԱԶԵՐ

ԱՄՆ-ի Լեռնային բյուրոյի մասնագետները փորձարկումներ են կատարել, որոնք վկայում են, որ լազերը կարող են դառնալ լավ հեռանկար ունեցող միջոց՝ քարածխից քիմիական նյութեր արտադրելու համար: Փորձերում կիրառվել են լազերային ճառագայթների հզոր աղբյուրներ, որոնք ստեղծում են բարձր ջերմություն՝ քարածուխը բաղադրիչ մասերի «տրոհելու» համար: Այդ պրոցեսի ընթացքում անջատվում են գազեր, ընդ որում՝ ացետիլեն, էթիլեն, էթան և այլն: Ի վերջո քիմիական նյութերի ստացման համար լազերային ճառագայթներով քարածխի մշակումը պահանջում է ընդամենը մի քանի հազարերորդական վայրկյան: Ենթադրվում է, որ լազերի կիրառումով զգալիորեն կնվազի քարածխից ացետիլենի և այլ նյութերի «հանույթի» ինքնարժեքը:

### ԽՈՀԱՆՈՑԱՅԻՆ ՌԱԴԻՈՊԼԻՏԱ ԻՆՔՆԱԹԻՌՈՒՄ

Ռադիոալիքներն ընդունակ են տարածելու ոչ միայն հաղորդավարի ձայնը կամ հեռուստացույցային դրամայի բեմադրումը, ոչ միայն ինքնաթիռը վայրէջքի տանելու և նավերի բախումը կանխելու, այլև օգտագործվել խոհանոցում: Հզոր ռադիոճառագայթումը գազից ու էլեկտրականությունից հինգ անգամ արագ է ճաշ պատրաստում: Օդային կարճ ուղիներում երբեմն անհրաժեշտ է լինում ուղևորներին ապահովել տաք սննդով, բայց դա հնարավոր չի լինում ժամանակի սղության պատճառով: Այժմ մեկ ռադիոպլիտան կես ժամում կարող է ուտելիք պատրաստել 120 ուղևորի համար:

### ԼՈՂԱՑՈՂ ԽՈՂՈՎԱԿՆԵՐ

Վիթխարի նավերի հայտնվելը նավահանգստում սրել է բեռնաթափման պրոբլեմը: Անգլիական ֆիրմաներից մեկը ստեղծել է լողացող հատուկ խողովակներ խոշոր նավերի բարձման և բեռնաթափման համար՝ հենց անմիջապես ռեյդի ընթացքում: Խողովակները ազատ լողում են ջրի երեսին և թեթև բարձրանում նավերի տախտակամածը: Նրանց լողունակությունը բարձրանում է՝ կոպիտ ռետինից պատրաստված լինելու շնորհիվ:

Օգտագործվում են նաև սովորական խողովակները, որոնք ջրի վրա մնում են պոլիմերներից պատրաստված լողացող սարքերի օգնությամբ: